ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

5

ՄԱՅԻՍ

ԵՐԵՎԱՆ 1964

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 5
ՄԱՅԻՍ
1964 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## Բովանդակություն

# *Содержание*






## ԾԱՎԱԼԵՆՔ ԳԻՏԱԿԱՆ ԱԹԵԻԶՄԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում առաջնակարգ նշանակություն է ստանում հասարակության բոլոր անդամների գիտական աշխարհայացքի ձևավորումը: Գիտական կոմունիզմի ոգով ամբողջ բնակչության դաստիարակումը, մարդկանց գիտակցությունից և վարքագծից անցյալի մնացուկների հաղթահարումը ՍՄԿՊ ծրագիրը համարում է պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը:

Բնակչության գիտական-մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման համար մղվող պայքարում այժմ, առավել քան երբեք, կարևոր նշանակություն ունի անցյալի այնպիսի վնասակար մնացուկների հաղթահարումը՝ ինչպիսիք են կրոնական նախապաշարմունքները, սնոտիապաշտությունը:

Չնայած մեզ մոտ վաղուց արդեն տիրապետող է դարձել մատերիալիստական գաղափարախոսությունը, լիկվիդացվել են կրոնական գաղափարախոսության սոցիալական հիմքերը, բայց մի շարք պատճառներով բնակչության որոշ խավ դեռ չի ազատագրված կրոնական նախապաշարմունքներից, որոնք թունավորում են նրա գիտակցությունը, խանգարում՝ ակտիվորեն մասնակցելու կոմունիստական հասարակարգի կառուցմանը:

Սովետական սոցիալիստական դեմոկրատիան, ինչպես հայտնի է, լիովին ապահովում է բոլոր քաղաքացիների համար խղճի ազատությունը: «Կրոնական պաշտամունքի կատարման ազատությունը և հակակրոնական պրոպագանդայի ազատությունը,— ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայում,— ճանաչվում է բոլոր քաղաքացիների համար»:

Սակայն, պետք է նշել, որ որոշ պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններ անհրաժեշտ թափով հակակրոնական պրոպագանդա չեն տանում, թուլացրել են գիտա-աթեիստական գործունեությունը, մինչդեռ եկեղեցականները և աղանդավորները, օգտվելով խղճի ազատությունից, ուժեղացնում են կրոնական պրոպագանդան: Աթեիստական պրոպագանդայում դեռ շատ է ձևամոլությունը, հաճախ այն կտրված է կյանքից, չի ներգործում հավատացյալների ո՛չ սրտի, ո՛չ գիտակցության վրա: Փաստերը ցույց են տալիս, որ շատ պարտիական կազմակերպություններ և կոմիտեներ սիստեմատիկ չեն պայքարում կրոնական գաղափարախոսության դեմ: Նրանք այդ պայքարը վարում են վերացականորեն, առանց հաշվի առնելու կրոնական պրոպագանդայի ներկայիս փաստարկումները, ժամանակակից եկեղեցու գործելակերպը, հավատացյալների կոնկրետ կազմը, նրանց հայացքները, տրամադրությունները, կրոնական ծեսերին հետևելու դրդապատճառները:

Աթեիստական պրոպագանդայի գլխավոր բովանդակությունը պետք է լինի կրոնական գաղափարախոսության հակագիտական բնույթի մերկացումը, նրա

վնասակարության բացահայտումը հատկապես ներկայումս, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում: Կրոնի դեմ պայքարը չպետք է վերածվի հավատացյալների դեմ պայքարի, այլ, ինչպես ասվեց, այն պետք է ուղղված լինի կրոնական, հակագիտական գաղափարախոսության դեմ: Հաճախ է պատահում նաև, երբ հակակրոնական պրոպագանդայում շեշտը դրվում է եկեղեցու սպասավորների կամ աղանդավորների պարագլուխների այս կամ այն հակահասարակական, հակաբարոյական արարքների մերկացման վրա: Այդ մերկացումը, իհարկե, անհրաժեշտ է, բայց դրան չպիտի հանգի ամբողջ հակակրոնական աշխատանքը, հիմնականը դարձյալ մնում է կրոնի, որպես ռեակցիոն գաղափարախոսության մերկացումը:

Հակակրոնական պրոպագանդան որպեսզի արդյունավետ լինի, այն պետք է տարվի խելացի, վարպետ կերպով, նրբորեն ու համոզիչ, բնավ չվիրավորելով հավատացյալների զգացմունքները:

«Պարտիան,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— գաղափարական ներգործության միջոցներն օգտագործում է մարդկանց գիտա-մատերիալիստական աշխարհըմբռնման ոգով դաստիարակելու համար, կրոնական նախապաշարմունքները հաղթահարելու համար, թույլ չտալով վիրավորել հավատացյալների զգացմունքները: Անհրաժեշտ է սիստեմատիկ լայն գիտաաթեիստական պրոպագանդա մղել, համբերատարությամբ պարզաբանել կրոնական հավատալիքների սնանկությունը, որոնք անցյալներում առաջացել են բնության տարերային ուժերի ու սոցիալական ճնշման հանդեպ մարդկանց անզորության հողի վրա, բնության ու հասարակական երևույթների իսկական պատճառները չիմանալու հետևանքով: Ընդ որում պետք է հենվել ժամանակակից գիտության նվաճումների վրա, որը գնալով ավելի լրիվ է բացահայտում աշխարհի պատկերը, մեծացնում է մարդու իշխանությունը բնության նկատմամբ և տեղ չի թողնում գերբնական ուժերի վերաբերյալ կրոնի ֆանտաստիկ հերյուրանքների համար»:

Ելնելով այս պահանջներից, ՍՄԿՊ XXII համագումարը խնդիր դրեց ստեղծել գիտա-աթեիստական դաստիարակության կուռ սիստեմ, որն ընդգրկեր բնակչության բոլոր խավերին և նպաստեր կրոնական հայացքների տարածման կասեցմանը, մանավանդ երիտասարդության ու պատանիների շրջանում:

Աթեիստական աշխատանքի կազմակերպումը, գաղափարական ազդեցության բոլոր միջոցները կրոնական պատկերացումների ու սնահավատության դեմ պայքարի նպատակին ծառայեցնելը՝ պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է:

Այս տեսակետից կարևոր նշանակություն ունեն բնակչության աթեիստական դաստիարակության ուժեղացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի գաղափարական հանձնաժողովի կողմից մշակված և Կենտկոմի կողմից հավանության արժանացած միջոցառումները: Նախատեսվում են վճռականորեն բարելավել աթեիզմի պրոբլեմների գիտական մշակումը և մասնագետ-աթեիստների պատրաստումը, մի շարք համալսարաններում և մանկավարժական ինստիտուտներում բացել գիտական աթեիզմի ամբիոններ, ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայում ստեղծել գիտական աթեիզմի ինստիտուտ, մտցնել գիտական աթեիզմի հիմունքներ այն բարձրագույն ուսումնական հաստատություններում, որտեղ այն դեռ չի դասավանդվում, ուժեղացնել գիտա-աթեիստական աշխատանքների նկատմամբ պարտիական ղեկավարությունը և այլն:



ՍՄԿՊ Կենտկոմի միջոցառումներին համապատասխան միջոցառումներ հաստատեց նաև ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը, պահանջելով պարտիական կազմակերպություններից և ռեսպուբլիկական գաղափարական հիմնարկություններից ու գերատեսչություններից արմատապես բարելավել աթեիստական պրոպագանդան: Նախատեսվում են ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում, ինչպես նաև բժշկական, մանկավարժական և կուլտուր-լուսավորական ուսումնարաններում 1964—1965 ուսումնական տարվանից մտցնել գիտական աթեիզմի հիմունքների դասընթաց: ԲՈՒՀ-երի այն ամբիոններում, որոնց հանձնարարված է բնակչության հակակրոնական դաստիարակության պրոբլեմների գիտական մշակումը, առանձնապես՝ Հայաստանում աթեիստական մտքի զարգացման հարցերի լուսաբանումը, ամբիոնների կաբինետներում ստեղծել գիտական աթեիզմի հատուկ բաժիններ, կազմակերպել ուսանողական գիտական ընկերությունների թեորիական կոնֆերանսներ՝ գիտական աթեիզմի հարցերի շուրջը, ուժեղացնել բնագիտական և հումանիտար առարկաների աթեիստական ուղղությունը, ՀԿՊ Կենտկոմի և Երևանի քաղկոմի Ստ. Շահումյանի անվան քաղաքական լուսավորության տանը ստեղծել գիտական աթեիզմի կաբինետ, աթեիզմի պրոպագանդիստների մշտական դասընթացներ և այլն:

Գիտա-աթեիստական աշխատանքում պետք է ներգրավել հասարակայնության ամենալայն շրջաններին: Այդ նպատակով պետք է մոտակա տարիներին պատրաստել մեծ թվով կադրեր: Անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կոմիտեները պարտիական, սովետական, կոմերիտական, արհմիութենական աշխատողների և ակտիվիստների, ուսուցիչների, բժիշկների, պիոներ ջոկատավարների և նախադպրոցական մանկական հիմնարկների աշխատողների, պրոֆտեխնիկական ուսումնարանների ու դպրոցների դաստիարակների, կուլտլուսաշխատողների, ժուռնալիստների, վարչական աշխատողների, թոշակառուների խորհուրդների, տնային կոմիտեների, կանանց խորհուրդների նախագահների և անդամների համար աթեիստական դաստիարակության հարցերի վերաբերյալ կազմակերպեն սեմինար պարապմունքներ:

Աթեիստական կադրերի պատրաստման համար պարտիական ու կոմերիտական կոմիտեները պետք է ավելի ակտիվ օգտագործեն քաղաքական լուսավորության սիստեմը: Այդ նպատակով պետք է ամենուրեք, մանավանդ այն շրջաններում, որտեղ համեմատաբար ավելի զգալի է բնակչության մեջ կրոնամոլությունը, ստեղծել աթեիզմի ուսումնասիրության խմբակներ, դպրոցներ, սեմինարներ, ունկնդիրների ուսուցումը զուգորդելով աթեիստական աշխատանքի հետ:

Աթեիստական դասախոսական պրոպագանդայի մեջ պարտիական կոմիտեները պետք է ավելի ակտիվ ներգրավեն գիտնականներին, դասախոսներին, ուսուցիչներին, բժիշկներին, գրողներին, ժուռնալիստներին, հումանիտար, բժշկական և գյուղատնտեսական բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողներին:

Հակակրոնական դաստիարակության գործում կարևոր դեր են կոչված խաղալու ժողովրդական համալսարանները, թանգարանները, մանավորապես պատմական և գավառագիտական թանգարանները, պլանետարիները, սանիտարական լուսավորության տները, մշտական ու շրջիկ ցուցահանդեսները: Անհրաժեշտ է օգտագործել այնպիսի հզոր միջոց, ինչպիսին կինոն է, կազմա-

կերպելով աթեիստական կինոնկարների ցուցադրում հեռուստատեսությամբ և կուլտ-լուսհիմնարկներում ու դպրոցներում:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեն պետք է ընդլայնի արդիական գրականության հրատարակությունը, ուշադրություն դարձնելով նրա թեմատիկայի ու ժանրի բազմազանության, գաղափարական և հրապարակախոսական մակարդակի վրա: Հատկապես օգտավետ է երեխաների ու պատանիների, ինչպես նաև հավատացյալների համար հանրամատչելի աթեիստական գրականության լույս ընծայումը: Հայ գեղարվեստական գրականությունը հարուստ է աթեիստական ստեղծագործություններով: Շնորհակալ գործ արած կլինի Հայպետհրատը, եթե ձեռնարկի այդ ստեղծագործությունների լավագույն նմուշների հրատարակությունը՝ ժողովածուով:

Գիտա-աթեիստական պրոպագանդայի գործում մեծ անելիքներ ունեն մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Աթեիստական թեմատիկան թերթերում, ժուռնալներում, հրատարակչություններում, ռադիոյով և հեռուստատեսությամբ լավագույն կերպով լուսաբանելու համար մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեն, ժուռնալիստների միությունը պետք է սիստեմատիկորեն ստեղծագործական սեմինարներ անցկացնեն աթեիստական հարցերում մասնագիտացած ժուռնալիստների հետ, մշակեն մեթոդական հանձնարարականներ, առավել ուշադրություն դարձնեն, որ հրապարակվեն ու հաղորդվեն կրոնական գաղափարախոսությունը մերկացնող և աթեիստական աշխատանքն ընդհանրացնող հոդվածներ և նյութեր:

Կրոնական գաղափարախոսության դեմ պայքարելու համար անհրաժեշտ է առավել ակտիվությամբ օգտագործել նաև ազդեցության այնպիսի միջոցներ, ինչպիսիք ոչ կրոնական ծեսերն են ու տոները: Եկեղեցական շատ արարողություններ իրենց ճոխ հանդիսավորությամբ մարդկանց դեպի եկեղեցին գրավելու միջոց են հանդիսանում: Այդ լավ են հասկանում եկեղեցականները:

Սակայն մեզ մոտ քաղաքացիական շատ արարողություններ դեռևս կատարվում են վերին աստիճանի անշուք, անգրավիչ, տաղտկալի, ձևականորեն անհարմար, վանող շենքերում: Անհրաժեշտ է սովետական մարդկանց կենցաղում ավելի ակտիվորեն արմատավորել ոչ կրոնական տոներն ու արարողությունները: Այս հարցում խոշոր դեր է պատկանում աշխատավորների դեպուտատների տեղական սովետներին, որոնք պետք է քաղաքների ու ավանների շինարարության նախագծերում նախատեսեն երջանկության պալատների կառուցում, ավելի լայն օգտագործեն կուլտուրայի տները: Պետք է նաև սահմանել պաշտոնական ծիսակատարությունների կարգը՝ նորածնի գրանցման, ամուսնության, անձնագրի հանձնման և սովետական մարդկանց կյանքում տեղի ունեցող այլ կարևոր իրադարձությունների առթիվ:

Պարտիական կազմակերպությունների հիմնական խնդիրը պետք է հանդիսանա աթեիստական միջոցառումների ազդեցության ուժեղացումը անմիջականորեն հավատացյալների վրա: Ուստի անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները արհմիութենական և կոմերիտական կոմիտեների հետ միասին, նախապես պարզեն տվյալ բնակավայրում կամ կոլեկտիվում կրոնական նախապաշարմունքների տարածման չափը, հավատացյալների կազմը, նրանց կրոնամոլության առանձնահատկությունները և ըստ այնմ կազմակերպեն աթեիստական պրոպագանդա՝ այդ նպատակով առանձնացնելով հեղինակավոր, կյանքը ճանաչող մարդկանց: Ցանկալի է, որպեսզի աթեիստական պրոպագանդայում ներգրավվեն հավատացյալների կոմունիստ-բարեկամները, ինչպես նաև կանայք: Աթեիստական աշխատանքում հաջողություն կունենա նա, ով կգործի համոզման մեթոդով, լավ կճանաչի հավատացյալներին, ճիշտ, սրտակից մոտեցում կունենա նրանց հանդեպ, կիրառելով ներգործության զանազան ձևեր ու մեթոդներ: Պետք է ակտիվացնել հավատացյալների հետ աշխատանքը ըստ նրանց բնակավայրի, օգտագործելով այդ նպատակի համար մշտապես գործող ագիտկետերը:

Գիտաաթեիստական պրոպագանդայում առանձնապես աչքի ընկնող դեր կարող են կատարել ուսուցիչներն ու բժիշկները, որոնք, իրենց մասնագիտության բերումով, ավելի լավ, քան ուրիշները, գիտեն մարդկանց անձնական կյանքը, մշտապես շփման մեջ են հավատացյալների հետ, գիտեն նրանց անձնապես:

Պետք է նկատի ունենալ, որ եկեղեցականները և աղանդավորների պարագլուխները մեծ մասամբ բանավոր պրոպագանդա են մղում, անհատական աշխատանք են տանում մարդկանց հետ: Նրանք նրբորեն հաշվի են առնում մարդկանց տարբեր կատեգորիաների հոգեկան պահանջները, տրամադրությունները, տվյալ մոմենտի ապրումները և ըստ այնմ կազմակերպում կրոնական պրոպագանդա, ենթարկում նրանց իրենց ազդեցությանը: Մինչդեռ մեր պրոպագանդիստներից ու ագիտատորներից շատերը հաճախ սահմանափակվում են հակակրոնական ընդհանուր, պատահական դասախոսություններով ու զրույցներով, որոնց սովորաբար ներկա են լինում ոչ թե հավատացյալները, այլ ոչ-հավատացյալները:

Պարտիական, արհմիութենական, կոմերիտական կոմիտեները, տեղական սովետները, կուլտուր-լուսավորական հիմնարկները, «Գիտելիք» ընկերությունը պետք է առանձնապես կանանց և տարեց մարդկանց համար սիստեմատիկաբար իրագործեն մասսայական միջոցառումներ՝ երեկույթներ, հանդիպումներ, աշխատանքային հոբելյանների նշում, թոշակի անցնելու կապակցությամբ հանդիսավոր ուղեկցումներ և այլն:

Վճռական նշանակություն ունի աճող սերնդի՝ երեխաների ու պատանիների աթեիստական դաստիարակությունը: Խնդիրն այն է, որպեսզի մանուկ հասակից աթեիստական դաստիարակություն տրվի: Աճող սերնդի հակակրոնական դաստիարակության գործում մեծ դեր են պատկանում դպրոցին և ուսուցչին: Դպրոցում, դասավանդման պրոցեսում են դրվում գիտա-աթեիստական, մատերիալիստական աշխարհըմբռնման հիմքերը: Ուստի պետք է ուժեղացվեն դպրոցական ծրագրերի, մանավանդ հասարակագիտության հակակրոնական ուղղությունը: Անհրաժեշտ է մանկավարժական խորհուրդներում սիստեմատիկաբար քննարկել աշակերտների աթեիստական դաստիարակության հետ կապված հարցերը, լայնորեն օգտագործել արտադասարանային և արտադպրոցական աշխատանքի զանազան ձևերը՝ պատանի աթեիստների ակումբներն ու անկյունները, դասախոսությունները, զրույցները, երեկույթները, էքսկուրսիաները, ներկայացումները, կինոյի կոլեկտիվ դիտումները և այլն: Կարևոր է աթեիստական աշխատանքի ուժեղացումը նաև աշակերտների ծնողների շրջանում: Հաճախ է պատահում, երբ առանձին ծնողներ, հավատացյալ լինելով, ազդում են երեխաների վրա ավելի ուժեղ չափով, քան դպրոցն իր հակակրոնական պրոպագանդայով: Դպրոցը պետք է աչքաթող չանի այդ ծնողներին, զբաղվի նրանց դաստիարակության գործով:

Լուսավորության մինիստրությունը պետք է կոմերիտական կոմիտեների

հետ միասին կազմակերպի ուսուցիչների, պիոներ-ջոկատավարների, նախադպրոցական հիմնարկների աշխատողների փնջային և ռեսպուբլիկական սեմինար խորհրդակցություններ՝ նվիրված երեխաների, պատանիների, ինչպես նաև ծնողների շրջանում տարվող աթեիստական աշխատանքի հարցերին:

Ուսուցիչների, պիոներ ջոկատավարների և նախադպրոցական հիմնարկների աշխատողների համար անհրաժեշտ է մանկավարժական ինստիտուտներին կից ստեղծել մշտական գործող աթեիստական դասընթացներ, ինչպես նաև նրանց համար հրատարակել հակակրոնական դաստիարակության վերաբերյալ մեթոդական գրականություն:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է առանձնացնեն աթեիստական աշխատանքների կազմակերպման համար պատասխանատու կոմունիստների, նրանց շուրջը համախմբելով ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկներում, դպրոցներում, պիոներական կազմակերպություններում աթեիստական աշխատանք ու պրոպագանդա կատարող ընկերների խմբեր:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է նաև ուժեղացնեն վերահսկողությունը կոմունիստների նկատմամբ, որպեսզի նրանք կատարեն կրոնական նախապաշարմունքների դեմ վճռական պայքար մղելու կանոնադրական՝ իրենց պարտականությունները: Չի կարելի անուշադրության մատնել այն կոմունիստների ու կոմերիտականների հարցը, որոնք կատարում են կրոնական ծիսակատարություններ:

Պարտիական խոշոր սկզբնական կազմակերպություններում, շրջկոմներում, արտադրական վարչությունների և կոնսոների պարտիական կոմիտեներում, քաղկոմներում գոյություն ունեցող գաղափարական հանձնաժողովներին կից անհրաժեշտ է ստեղծել աթեիստական աշխատանքի սեկցիաներ, որոնք պետք է կոորդինացնեն ու ղեկավարեն այդ ուղղությամբ պարտիական, արհմիութենական և կոմերիտական կոմիտեների, «Գիտելիք» ընկերության, կուլտուր-լուսավորական հիմնարկների, դպրոցների կատարած աշխատանքը:

Պարտիական կազմակերպությունների պարտքն է՝ ամենակարճ ժամանակում վերացնել աթեիստական պրոպագանդայի բնագավառում գոյություն ունեցող թերությունները՝ գործի դնելով գաղափարական աշխատանքի բոլոր միջոցները, բոլոր կազմակերպությունները:

Մեզ մոտ ստեղծված են բոլոր պայմանները աթեիստական հաջող պրոպագանդայի համար: Սովետական գիտության ու տեխնիկայի աննախընթաց նվաճումները, սովետական մարդկանց կրթական-կուլտուրական մակարդակի բարձրացումը, կոմունիստական շինարարության մեծ վերելքը երկրում հզոր գործոն են այնպիսի հին, մարդու գիտակցությունը մթագնող վերապրուկի վերացման համար, ինչպիսին կրոնն է:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԴԱՇՆԱԿԻՑՆ Է

Տ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ, Մ. ՄԱՐՏԻԿՅԱՆ

*Միջազգային կոմունիստական շարժման արմատական հարցերի շուրջն ունեցած իրենց տարաձայնությունները Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները մեծապետական շովինիզմի դիրքերից ոչ միայն սրեցին, այլև գաղափարական բանավեճը փոխադրեցին միջպետական հարաբերությունների ասպարեզը, անլուր զրպարտանքներ տարածելով կոմունիստական շարժման ջոկատների և, մասնավորապես, ՍՄԿՊ-ի ու նրա ղեկավարության հասցեին:*

*Բանավեճին վերջ տալու և միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունն ապահովելու ուղղությամբ ՍՄԿՊ-ի և կոմունիստական մյուս պարտիաների ջանքերն ապարդյուն անցան: ՉԿՊ-ի ղեկավարությունը մնաց իր պառակտողական դիրքորոշման վրա: Ահա այդ էր պատճառը, որ ՍՄԿՊ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն հարկ համարեցին այդ խնդիրը քննության առնել Կենտկոմի 1964 թվականի փետրվարյան պլենումում:*

*Արդի դոգմատիկների ու աղանդավորների դեմ մղվող պայքարում գաղափարական կարևոր զենք են հանդիսանում ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի նյութերը: Եվ պատահական չէ, որ մարքսիզմ-լենինիզմի դրոշին հավատարիմ կոմունիստական շարժման ջոկատները միահամուռ և ջերմ հավանություն տվեցին պլենումի որոշումներին:*

*Տարաձայնության առարկա հանդիսացող շատ հարցերից մենք վերցնում ենք մեր օրերում մարդկությանը հուզող հարցերի հարցը՝ պատերազմի և խաղաղության հարցը: Զարգացման ներկա էտապում այն ծայրաստիճան կարևոր նշանակություն ունի, քանի որ, ինչպես ընկ. Մ. Ա. Սուսլովն է նկատում, «Մեր գործի բախտը, ժողովուրդների բախտը վճռականորեն կախված են պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում կոմունիստական շարժման ստրատեգիական ու տակտիկական ճիշտ դրույթներից»:*

*Այն ստրատեգիան ու տակտիկան, որ մշակել է միջազգային կոմունիստական շարժումը 1957 և 1960 թվականների Մոսկովյան խորհրդակցություններում, այսօր կատաղի ու անզուսպ հարձակումների օբյեկտ է դարձել և՛ աջից, և՛ «ձախից»:*

*Հակակոմունիզմի և հակասովետական մտայնությամբ տարված աջ սո-*

ցիալիստները, որոնք վաղուց բացահայտորեն հրաժարվել են մարքսիզմից,
այսօր հարում են ֆաշիստական և պրոֆաշիստական գաղտնի ու կիսագաղտ-
նի զանազան կազմակերպությունների, որոնց միավորում է մի ընդհանուր նը-
պատակ՝ «պայքարը կոմունիզմի դեմ, ուր էլ որ այն դրսևորվի»: Որդեգրելով
իմպերիալիստական բուրժուազիայի քաղաքականությունն ու գաղափարախո-
սությունը, արդի աջ սոցիալիստները, ռեֆորմիստները բուրժուական գործիչ-
ների նման փաստորեն հանդես են գալիս որպես պատերազմի հրձիգներ:
Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ երկու ճակատում պայքարելիս պետք
է կրակն առաջին հերթին ուղղել գլխավոր վտանգի դեմ: Պատմական զար-
գացման տվյալ էտապում կոմունիստական շարժման համար գլխավոր վտանգ
է դարձել ռևիզիոնիզմը, աղանդավորականությունը՝ միջազգային կոմունիս-
տական շարժման ստրատեգիայի ու տակտիկայի վերանայումն ու քննադա-
տությունը «ձախից»: Այստեղից էլ մեր պայքարի հիմնական լոզունգն է՝ չդա-
դարեցնելով պայքարն աջերի դեմ, կրակն ուղղել առաջին հերթին դոգմատիկ-
ների, աղանդավորականների, «ձախերի» դեմ: Հենց այդ է ՍՄԿՊ Կենտկոմի
փետրվարյան պլենումի պահանջը:
Մարքսիզմ-լենինիզմից ՉԿՊ-ի ղեկավարների հեռանալն իր ամենացայ-
տուն արտահայտությունը գտավ դեռևս ՍՄԿՊ XX համագումարի ժամանակից
միջազգային կոմունիստական շարժման՝ պատերազմի և խաղաղության հար-
ցերում ընդունած գծի դեմ նրանց մղած պայքարի մեջ: Չինական ղեկավար-
ների դիրքորոշումն այդ հարցերում «ձախ» օպորտունիստական, դոգմատիկա-
կան, աղանդավորական է: «Ձախ» օպորտունիզմը մանրբուրժուական տարրե-
րի դիրքերից դիտելով համաշխարհային զարգացման երևույթները, համաշ-
խարհային ռևոլյուցիոն պրոցեսը, սոցիալիզմի և իմպերիալիզմի ճամբարների
պայքարը, դրսևորում է սոցիալական այդ խավերին ներհատուկ շփոթվածու-
թյուն ու երկչոտություն և ճգնում է ամպագոռգոռ ռևոլյուցիոն ֆրազաբանու-
թյամբ քողարկել հենց իր շփոթվածությունն ու երկչոտությունը: Այդպես է
եղել միշտ, երբ «ձախ» ֆրազներով քողարկված օպորտունիստական տարրերն
ու հոսանքները ռևոլյուցիոն շարժման մեջ արտաքուստ հակադրվելով աջերին,
ըստ էության, ճիշտ է, գլուխկոնծի, բայց եկել միացել են աջերին: Այդ երե-
վույթը հիանալի մերկացրել է Վ. Ի. Լենինը ««Ձախության» մանկական հի-
վանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում, երբ մարքսիստական, ի-
մացաբանական քննադատության ենթարկելով «ձախերի» ուլտրա—ռևոլյուցիո-
նականությունը, անհերքելիորեն ցույց տվեց, որ այն իր էությամբ հանգում է
հակառևոլյուցիոն տակտիկայի: Եվ իսկապես, վերջին հաշվով, միայն ձևա-
կան, երևութական տարբերություն կա աջ օպորտունիստների և «ձախերի»,
ռևիզիոնիստների և դոգմատիկների միջև՝ արդիականության ամենաարմատա-
կան հարցերում: Սրանք միավորվում են մանրբուրժուական կեղծ ռևոլյուցիո-
նականության և հակասովետական ոգու իրենց գծերով: «Ձախերը» դոգմատիզ-
մի դիրքերից գտնում են, որ նոր պատերազմը կանխել անհնարին է, քանի որ
այն սկսելը կամ չսկսելը իբր ամբողջովին կախված է իմպերիալիստների կամ-
քից: Այստեղից էլ նրանք հանգում են այն «խորիմաստ» եզրակացության, թե
խաղաղ գոյակցությունը նույնպես անհնարին է, թե իբր այն դասակարգային
պայքարի ժխտում է և, հետևաբար, չի կարող լինել սոցիալիստական երկրների
արտաքին քաղաքականության գլխավոր գիծ: Նման պնդումները թեորիապես
արդարացնելու համար նրանք հիմք են ընդունում այն թեզը, թե իսկական



լենինյանները չեն կարող չտեսնել, որ իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը չի
փոխվել, հետևաբար և պատերազմի կանխումը և խաղաղ գոյակցությունը
հավասարապես անհնար են: Չտեսնել այս, ասում են «ձախերը», կնշանակի
ընդունել, որ կապիտալիզմը փոխել է իր բնույթը, իսկ դա նշանակում է զու-
նազարդել իմպերիալիզմը և հույսը դնել իմպերիալիստական պարագլուխների
բարի մտադրությունների վրա:
Մի ժամանակ այդ տեսակետը բացահայտորեն արտահայտում էին ալբա-
նական ղեկավարները: Սակայն վաղուց արդեն հանրահայտ է, որ խաղաղ
գոյակցության և պատերազմը կանխելու հնարավորության ժխտման տեսակե-
տի իսկական հեղինակները ՉԿՊ-ի ղեկավարներն են: Ալբանական ղեկավար-
ները հանդես են եկել միայն որպես նրանց խոսափող և աջակից: Սրանք
պարծենում են», որ իրենք համաձայն չեն բոլոր նրանց հետ, ովքեր «խաղաղ
գոյակցությունը համարում են սոցիալիստական երկրների արտաքին քաղա-
քականության գլխավոր գիծը»: Այդ դեպքում իրավացի հարց է ծագում, հապա
ո՞րն է գլխավոր գիծը: Պատերա՞զմը: Բայց այդ դեպքում նրանց կարծիքը
ինչո՞վ է տարբերվում իմպերիալիզմի ավանտյուրիստական շրջանների տե-
սակետից: Ըստ էության տարբերությունը միայն այն է, որ մոլեգնող իմպե-
րիալիստները կորցրել են հավատը սոցիալիզմի հետ կապիտալիզմի խաղաղ
մրցության նկատմամբ, իսկ դոգմատիկները չեն հավատում այդ մրցությու-
նում կոմունիզմի հաղթանակի հնարավորությանը:
Չին ղեկավարները ջերմամիջուկային զենքը համարելով «թղթե վագր», ա-
ռանց տատանվելու հայտարարում են, որ համաշխարհային սոցիալիստական
ռևոլյուցիան օր առաջ կատարելու համար պետք է դիմել ջերմամիջուկային
պատերազմի: Թող մարդկության թեկուզ կեսը ոչնչանա այդ պատերազմում,—
ասում են նրանք, բայց դրա փոխարեն կհաղթանակի սոցիալիզմը, իսկ «հաղ-
թանակած ժողովուրդները կործանված իմպերիալիզմի ավերակների վրա չա-
փազանց արագ տեմպերով կստեղծեն հազար անգամ ավելի բարձր քաղաքա-
կրթություն, քան կապիտալիստական հասարակարգի օրոք, կկառուցեն իրենց
իսկական գեղեցիկ ապագան»: Մարքսիզմ-լենինիզմին խորթ, մարդատյաց
այս կոչի հեղինակները անտեսում են մի «մանրուք», այն, որ ատոմային
ռումբը իր հրեշավոր կործանիչ գործողության մեջ ոչ մի դասակարգային
տարբերություն չի դնում: Այս կապակցությամբ ՍՄԿՊ Կենտկոմն իր բաց նա-
մակում դիպուկ կերպով նկատում է. «Բանվոր դասակարգը, աշխատավորներն
այդպիսի «ռևոլյուցիոներներին» կհարցնեն՝ դուք ի՞նչ իրավունք ունեք մեր փո-
խարեն լուծելու մեր գոյության և մեր դասակարգային պայքարի հարցերը:
Մենք էլ ենք սոցիալիզմի կողմնակից, բայց ուզում ենք այն նվաճել դասակար-
գային պայքարով և ոչ թե համաշխարհային պատերազմ սանձազերծելու մի-
ջոցով»:
Բանվոր դասակարգի, աշխատավորների այս հարցադրմամբ զամվելով
անարգանքի սյունին, զգալով, որ իրենց այդ կոչերով ենթարկվում են ինքնա-
մերկացման, նրանք դիմում են քողարկման նոր հնարների: Հենց այդ հնար-
ներից մեկը նրանց այն հայտարարությունն է, «Թե հենց Չինաստանի կոմ-
պարտիայի ղեկավարներին է պատկանում պատերազմի կանխման թեզն առաջ
քաշելու ծառայությունը: Երեկ նրանք ամբաստանում էին խաղաղ գոյակցու-
թյունը, այսօր քիչ է մնում իրենց ներկայացնեն որպես նրա միակ և ամենա-
թունդ ջատագովներ» (Մ. Ա. Սուսլով, «ՍՄԿՊ պայքարը միջազգային կոմու-

նիստական շարժման համախմբվածության համար», «Սովետական Հայաստան», 14 ապրիլի 1964 թ.)։ Իրենց հայացքների քողարկման՝ ՉԿՊ-ի ղեկավարների տրոցկիստական նման հնարները նորություն չեն։ Այդ նորություն
չէ, հատկապես, ՍՄԿՊ-ի և սովետական ժողովրդի համար, որոնք անցել են
տրոցկիզմի դեմ մղված պայքարի բովով։

Տեղին է նկատել, որ տրոցկիզմին հատուկ վոլյունտարիզմը այսօր յուրովի է դրսևորվում դոգմատիզմի մեջ։ Այն արտահայտվում է, մասնավորապես,
խաղաղ գոյակցության կուրսը ժխտելու հարցում։ Այդ ժխտումը փաստորեն
հենվում է դոգմատիկների կողմից իմպերիալիզմի ուժերի գերագնահատման
և սոցիալիզմի ուժերի թերագնահատման վրա։ Դա տանում է դեպի բացահայտ ավանտյուրիզմ։ Եվ ճիշտ այնպես, ինչպես մի ժամանակ տրոցկիզմն
էր իր ավանտյուրիզմը քողարկում ինտերնացիոնալիստական ֆրազներով,
այդպես էլ արդի դոգմատիկները նույնպիսի ֆրազներով ըստ էության քողարկում են ո՛չ միայն իրենց ավանտյուրիզմը, այլև անց են կացնում յուրատեսակ նացիոնալիզմ՝ մեծախանական շովինիզմ,— ինչպես դիպուկ բնորոշում
է ընկ. Խրուշչովը։

Դոգմատիկները գիտեն, որ Վ. Ի. Լենինը II Ինտերնացիոնալի օպորտունիստներին մեղադրում էր վախկոտության մեջ։ Դա նրանց հիմնական արատներից էր։ Բայց կամենալով խաղաղ գոյակցության կուրսը կիրառողներին ու
պաշտպաններին մեղադրել մարքսիզմ-լենինիզմի ռևիզիայի մեջ, դոգմատիկները նրանց են վերագրում վախկոտություն։ Բայց նրանք չարաչար սխալվում
են։ Հիրավի, ո՞րն է վախկոտությունը, իմպերիալիզմի ուժերի գերագնահատման միջոցով ավանտյուրիզմի մեջ ընկնե՞լը, թե՞ հենվելով համաշխարհային
սխտեմ դարձած սոցիալիզմի ուժերի վրա, հավատալով այդ ուժերի անպարտելիությանը, շրջահայաց, աներեր կուրս վարելը։ Անհերքելի է, որ տվյալ
դեպքում վախկոտության մեջ կարելի է մեղադրել դոգմատիկներին։ Խաղաղ
գոյակցությունը դասակարգային պայքարի ձև. մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում։ Դա սոցիալիզմի մի ինչ-որ պասսիվ հաշտեցում չէ կապիտալիզմի հետ։ Դա «հանգիստ սպասման» քաղաքականություն չէ, որ այնպես հատուկ է վախկոտներին, այլ՝ ակտիվ, ամենաբազմազան մի պայքար է կոմունիզմի արագ կառուցման համար սոցիալիզմի երկրներում։ Իսկ այդ իր հերթին, ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի բաց
նամակում և հաստատում է ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թ. փետրվարյան պլենումը,
միջազգային ռևոլյուցիոն բանվորական շարժմանը օգնելու լավագույն եղանակն է նրա հիմնական դասակարգային նպատակների իրականացման ասպարեզում։

Խաղաղ գոյակցության կուրսը ելնում է համաշխարհային ասպարեզում
սոցիալական ուժերի տեղաբաշխման ու հարաբերակցության ստույգ հաշվառումից։ Արդ, ո՞րն է մարքսիզմ-լենինիզմի ռևիզիան՝ ուժերի իրական հարաբերակցության գիտական հաշվառումից բխող քաղաքականությունն ու թեորիան, թե՞ սեփական սուբյեկտիվ ցանկություններն իրականության վրին
քոնի փաթաթելու մտորվող թեորիան ու հանձնարարվող պրակտիկան։ Իրենց
Լենինի և լենինիզմի պաշտպաններ հորջորջող չինական ղեկավարները որտե՞ղ
են կարդացել Լենինի մոտ, որ պայքարող ուժերի հարաբերակցության ստույգ
հաշվառումը ռևիզիոնիզմ է։ Այդ ինչպե՞ս է պատահել, որ Լենինի և լենինիզմի «պաշտպանները» մոռացել են լենինյան այն խոսքերը, թե ճշմարիտ քա-



ղաքականությունը պետք՝ է հենվի գիտության վրա, իսկ գիտությունն էլ պահանջում է ի թիվս այլ հանգամանքների, նաև պայքարող ուժերի հարաբերակ-
ցության ստույգ հաշվառում։

Մարքսիզմ-լենինիզմի՝ խորապես հումանիստական այդ ուսմունքի հետ
ոչ մի առնչություն չունի խաղաղ գոյակցության ժխտումը, որը փաստորեն
միլիոնների կործանման քարոզ է։

Համաշխարհային դեմոկրատական լայն հասարակայնության միահամուռ
հավանությանն արժանացած ընդհանուր և լիակատար զինաթափման վերաբերյալ Սովետական Միության առաջարկները չինական և ալբանական ղեկա-
Համաշխարհային...
վարների կողմից ներկայացվում են որպես ոչ ռեալ առաջարկներ, որոնք իբր
նշանակում են սոցիալիստական երկրների և իրենց ազատագրության համար
մարտնչող ժողովուրդների «միակողմանի զինաթափում» և անպաշտպան մնալը «մինչև ատամները զինված իմպերիալիստական ագրեսորների հանդեպ»։
Չին ղեկավարների համար բնորոշ է և այն, որ նրանք ծառանում են նաև կոմունիստական և բանվորական պարտիաների կողմից նոր պատերազմի կատաստրոֆիկ բնույթի պարզաբանման դեմ։ Նրանք պնդում են, որ այդպիսի
պրոպագանդան իբր վախ է սերմանում մասսաների մեջ, ոչ թե նրանց մոբիլիզացնում, այլ հոգեբանորեն զինաթափում է իմպերիալիզմի և պատերազմի վտանգի հանդեպ։ Միամիտ դատողություններ... Այդ պրոպագանդան, ընդհակառակը, միայն մոբիլիզացնում է մասսաներին նոր պատերազմի վտանգի
դեմ, հանուն խաղաղության։ ՉԿՊ-ի ղեկավարներն ամեն կերպ աշխատում
են իրենց հետին նպատակները թաքցնել մասսաներից։ Այն ժամանակ, երբ
մարքսիստ-լենինյանները բացեիբաց մասսաներին պարզաբանում են հնարավոր ջերմամիջուկային պատերազմի ահավոր հետևանքները, չինական
ուլտրառևոլյուցիոնները ատոմային ռումբը հայտարարում են «թղթե վագր»՝
խաբում են մասսաներին, ասում, դրանով նրանց ներշնչում են այն հոգեբանությունը, թե «պատերազմն իրենից վտանգ չի ներկայացնում, թող լինի»։
Չէ որ նրանց է պատկա-
Հենց այս էլ չինական ղեկավարների ցանկությունն է։
նում այսօր այն տխրահռչակ միտքը, որ համաշխարհային ռևոլյուցիան կարելի է և պետք է արագացնել նոր պատերազմի միջոցով։

Չինական ղեկավարների բոլոր պնդումներն ըստ էության քննելով՝ նկատում ենք, որ դրանք սկզբից մինչև վերջ անհիմն են և հակամարքսիստական։
Սկսենք թեկուզ իմպերիալիզմի բնույթի հարցից։ Կոմունիստական և բանվորական պարտիաները ոչ միայն չեն գունազարդել և չեն գունազարդում իմպերիալիզմը, այլ իրենց 1960 թվականի Մոսկովյան խորհրդակցության Հայտարարության մեջ պարզեիպարզ ասել են, որ «իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը չի փոխվել»։ Միաժամանակ Հայտարարությունը նշում է, որ «...անցել
է այն ժամանակը, երբ իմպերիալիստները հնարավորություն ունեին իրենց
կամայականությամբ որոշելու պատերազմի լինելու կամ չլինելու հարցը։
...Հասել է ժամանակը, երբ կարելի է խափանել համաշխարհային պատերազմ
սանձազերծելու իմպերիալիստական ագրեսորների փորձերը։ Համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային
ազատագրական շարժման միացյալ ջանքերով, պատերազմի դեմ հանդես
եկող բոլոր երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել»։ Չին ղեկավարները, իրենց
հատուկ կարճատեսությամբ, ուժերի հարաբերակցության մեջ կատարված այս

նոր փոփոխությունները չնկատելով, պնդում են, որ պատերազմի կանխման և խաղաղ գոյակցության հնարավորության ընդունումն իբր իմպերիալիզմի գունազարդում է, նրա ագրեսիվ բնույթի ժխտում։ Մինչդեռ իմպերիալիզմի ագրեսիվ բնույթի ընդունումը և սոցիալիզմի ուժերի գերակշռությունն իբր թելադրում են վճռականորեն հանդես գալ իմպերիալիզմի դեմ, քանի որ խաղաղ գոյակցությունը կնշանակեր դասակարգային պայքարի ժխտում և ապավինում իմպերիալիստների բարի մտադրություններին։ Այս ամենից էլ նրանք հանգում են այն հերյուրանքին, թե իմպերիալիզմի դեմ միակ վճռականորեն հանդես եկողներն իրենք են։ Տարօրինակ է այդ մարդկանց նման տրամաբանությունը, որ հիմնովին հակասում է իրականությանը։ Կոմունիստական և բանվորական պարտիաները ստեղծագործական մարքսիզմի դիրքերից խաղաղ գոյակցությունը ոչ միայն չեն դիտում որպես իմպերիալիզմի դեմ պայքարից հրաժարվելու միջոց, այլ ընդհակառակը, այն համարում են սոցիալիզմի և կապիտալիզմի միջև խաղաղ մրցություն, որն ըստ էության ուրիշ բան չէ, բայց եթե համաշխարհային մասշտաբով դասակարգային պայքարի շարունակություն նոր ձևով, նոր պայմաններում։ Հենց սա է համապատասխանում արդի պատմական զարգացման օբյեկտիվ տրամաբանությանը, քանի որ խաղաղությունը, ինչպես նշված է Հայտարարության մեջ, սոցիալիզմի դաշնակիցն է։ Չին դոգմատիկների կարճատեսությունը նրանց զրկում է տեսնելու, որ խաղաղ գոյակցությունը ոչ միայն չի թուլացնում, այլև ավելի է ուժեղացնում պրոլետարիատի դասակարգային պայքարը, որ այն ոչ միայն չի թուլացնում, այլ էլ ավելի ամրապնդում է ազգային անկախության համար մարտնչողների դիրքերը, որ այն ոչ միայն չի նշանակում իմպերիալիզմի դեմ պայքարից հրաժարում, այլ ընդհակառակը, ենթադրում է և նպաստում իմպերիալիզմի դեմ մղվող գաղափարական, քաղաքական, տնտեսական պայքարին և իրենից ներկայացնում է իմպերիալիզմի դեմ դասակարգային պայքարի յուրահատուկ ձև։ Ավելին, խաղաղ գոյակցությունը ռեալ հնարավորություններ է ընձեռում սոցիալիստական ռևոլյուցիայի և ռևոլյուցիոն շարժման բոլոր ձևերի զարգացման համար։ Այս հարցադրումները ոչ թե կյանքից կտրված վերացական հայտարարություններ են, այլ ուղղակի վերջին ժամանակաշրջանի պատմական փորձի գիտական ընդհանրացում։ Հենց խաղաղ գոյակցության պայմաններում է, որ վերջին տարիների ընթացքում շուրջ հինգ տասնյակ երկրներ ազատագրվել են գաղութատիրության կապանքներից, ըստ որում, նրանց մի որոշ մասը թևակոխել է ոչ կապիտալիստական զարգացման և սոցիալական արմատական վերափոխությունների ուղին։ Ամերիկյան մայրցամաքում առաջինը սոցիալիստական ռևոլյուցիա է կատարել Կուբայի հերոսական ժողովուրդը։ Հենց վերջին տարիներս է, որ խաղաղ գոյակցության պայմաններում նոր վերելք է ապրում համաշխարհային բանվորական ռևոլյուցիոն շարժումը։

Չին դոգմատիկներն իրենց մետաֆիզիկական մտածողությամբ չեն ըմբռնում, որ փոխադարձ սերտ կապ ու փոխազդեցություն կա խաղաղ գոյակցության և ռևոլյուցիոն շարժման միջև, որ այստեղ կատարվում են անցումներ, և այդ անցումների մեջ էլ դրսևորվում է հենց ռևոլյուցիոն բոլոր ուժերի միասնությունը ընդդեմ իմպերիալիզմի։ Նույն մետաֆիզիկական մտածելակերպն է դրսևորվում նրանց մոտ նաև ընդհանուր ու լրիվ զինաթափման հարցի ըմբռնման մեջ, երբ սուբյեկտիվ կուրությամբ դարձյալ չտեսնելով նշված



փոխազդեցությունը, կապն ու անցումները խաղաղ գոյակցության և ռևոլյուցիոն շարժման միջև, բարբառում են այն մասին, թե իբր ընդհանուր ու լրիվ զինաթափումը ռևոլյուցիոն ուժերի ու ժողովուրդների զինաթափումն է մինչև ատամները զինված իմպերիալիզմի հանդեպ։ Դոգմատիկները չեն տեսնում, որ ընդհանուր ու լրիվ զինաթափումը հսկայական նշանակություն ունի կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում մասսաներին մոբիլիզացնելու գործում։

Համաշխարհային կոմունիստական շարժումը, հարազատ լենինյան պատգամներին, ընդհանուր և լրիվ զինաթափման, ինչպես նաև պատերազմների կանխման հնարավորության իրականացման համար մղվող պայքարը դիտում է կապիտալիզմից սոցիալիզմին անցման խնդիրների հետ սերտ կապի մեջ։

ՉԿՊ-ի ղեկավարները խոսում են Լենինի անունից, իրենց համարում են միակ լենինյաններ, բայց մոռանում են ռևոլյուցիոն գործողության լենինյան սկզբունքները, այն է՝ ռևոլյուցիոն համարձակություն, ռևոլյուցիոն ճկունություն և կոնկրետ պայմանների համակողմանի հաշվառում, երեք կարևոր պայման, երեքը՝ մեկ միասնության մեջ վերցրած։

Խաղաղ գոյակցությունը, ընդհանուր և լրիվ զինաթափումը, ինչպես նաև պատերազմի կանխման հնարավորությունն ամբողջովին բխում են լենինյան այս սկզբունքներից։ Հրաժարումը դրանցից տանում է դեպի կտրվածություն մասսաներից, նրանց ռևոլյուցիոն պայքարից, մի բան, որ բնորոշ է մասնավորապես աղանդավորականությանը, իսկ արդի աղանդավորականությունը, դոգմատիզմն ու ձախ օպորտունիզմը ներքուստ կապված են միմյանց հետ, լրացնում են միմյանց, ինչպես և անցյալում։

Չինական և ալբանական ղեկավարների վարքագիծն ըմբռնելու համար անգնահատելի են դոգմատիզմի, աղանդավորականության և, մասնավորապես, «ձախ» կոմունիզմի ու տրոցկիզմի դեմ Վ. Ի. Լենինի պայքարի դասերը։ ՉԿՊ-ի ղեկավարների գիծը և՛ կազմակերպական, և՛ թե գաղափարախոսական իմաստով ակամայից հիշեցնում է լենինյան պարտիայի պայքարով ոչնչացված տրոցկիզմի գիծը։ Չին ղեկավարներն էլ հանդես են գալիս «ձախ» ֆրազներով, նրանք էլ կանգնած են վոլյունտարիզմի դիրքերում և ելնում են բանվորի ու գյուղացու դաշինքի լենինյան գաղափարի ժխտումից։ Սակայն նրանց միջև կա նաև տարբերություն։ Այդ այն է, որ տրոցկիզմը կառչելով պրոլետարիատից, անտեսում էր գյուղացիության ռևոլյուցիոն հնարավորությունները, նրան համարելով հակապրոլետարական ուժ և միաժամանակ թերագնահատում էր բանվոր դասակարգի ռևոլյուցիոն հնարավորությունները, իսկ ՉԿՊ-ի ղեկավարները խոնարհվում են գյուղացիության առջև, թերագնահատում են պրոլետարիատին և ըստ էության ժխտում նրա հեգեմոնիան ռևոլյուցիոն շարժման մեջ։ Այդ ցայտուն կերպով երևում է հենց այն բանից, որ ըստ նրանց «իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում վճռական ուժ է հանդիսանում ոչ թե սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ոչ թե միջազգային բանվոր դասակարգի պայքարը, այլ ազգային ազատագրական շարժումը»։

Միայն կարելի է ցավել, որ Լենինի և լենինիզմի անունից հանդես եկող չին ղեկավարները, որ այնպես շտապում են համաշխարհային ռևոլյուցիա կատարել նույնիսկ ջերմամիջուկային կատաստրոֆիկ պատերազմի գնով, մոռացել են, որ Վ. Ի. Լենինը իր վերջին աշխատություններից մեկում («Լավ է քիչ, բայց լավ») համաշխարհային ռևոլյուցիայի հաղթանակի վճռական պայ-

մանը համարում էր եվրոպական բանվորական ռևոլյուցիոն շարժման և Ասիայի ազգային-ազատագրական շարժման միակցումը, դաշինքը։ Չէ՞ որ լենինյան այս հանճարեղ միտքը մարտական կոչ է՝ ստեղծելու բանվորի և գյուղացու դաշինք համաշխարհային մասշտաբով, ապահովելով բանվոր դասակարգի հեգեմոն դերն այդ դաշինքում։ Մի՞թե իրենց կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 և 1960 թվականների Մոսկովյան խորհրդակցությունների փաստաթղթերի միակ ճիշտ մեկնաբաններ հռչակող չին ղեկավարները չեն գիտակցում, որ այդ փաստաթղթերի էական կողմերից մեկն էլ այն է, որ դրանց մեջ հենց կոնկրետացվել ու զարգացվել է լենինյան այդ գաղափարը ներկա էտապում։

Օրինական հարց կարող է ծագել՝ իրական և տրամաբանական ի՞նչ հիմքեր ունի չին ղեկավարների ներկայիս վարքագիծը։ Դա կապված է համաշխարհային զարգացման մեջ հանդես եկած նորի և նրա գիտական ըմբռնման հարցի հետ։ Այդ նորն այն է, որ սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ, սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման։ Համաշխարհային ուժերի տեղաբաշխման մեջ տեղի են ունեցել արմատական փոփոխություններ՝ հօգուտ սոցիալիզմի։ Կասկածից վեր է, որ այդ փոփոխությունների մեջ հսկայական են ազգային-ազատագրական շարժման հաջողությունները։ Ընդ որում Վ. Ի. Լենինը կանխատեսում էր այդ։ «...Վաղվա օրը,— գրում էր նա,— համաշխարհային պատմության մեջ կլինի հենց այնպիսի օր, երբ վերջնականապես կարթնանան իմպերիալիզմի կողմից ճնշված, սթափված ժողովուրդները և երբ կսկսվի երկարատև և ծանր վճռական մարտը նրանց ազատագրման համար»։ Այսօր արդեն իրականություն են դարձել լենինյան այս մարգարեական խոսքերը։ Նոր իրականությունը ծնել է նաև նոր երևույթներ, որոնք Վ. Ի. Լենինը անձամբ չէր կարող նախատեսել։ Սակայն այդ նոր երևույթներն էլ, ինչպես ինքը՝ Վլադիմիր Իլյիչն էր սովորեցնում, «կարելի է գիտակցել միայն մարքսիզմի փիլիսոփայության ու քաղաքականության հողի վրա կանգնելով»։

Այդ նորի կարևոր մոմենտներից մեկն այն է, որ այդ շարժման հակաիմպերիալիստական բնույթն իր մեջ պարունակում է հնարավորություն որոշ պայմաններում ծնելու և սնելու ինչպես տեղական նացիոնալիզմ, այնպես և մեծապետական շովինիզմ։ Հիմնականում այդ պայմաններն են. առաջին՝ եթե արտաքին թշնամու՝ իմպերիալիզմի դեմ ունեցած արդարացի թշնամական վերաբերմունքը բացարձակացվի և տարածվի անխտիր բոլոր արտաքին ուժերի վրա, միևնույն է՝ այդ ուժերը թշնամական են, թե բարեկամական, երկրորդ՝ եթե ազգային-ազատագրական շարժման ղեկավարությունը հաղթանակից գլխապտույտ ապրի և վոլյունտարիզմին հարելով կտրվի մասսաներից, հակադրվի նրանց. երրորդ՝ եթե նույն այդ դիրքերից, ձեռք բերած այնքան ցանկալի հաղթանակից կուրացած, էմպիրիկ կարճատեսությամբ այլևս չտեսնի կամ չցանկանա տեսնել ուրիշ բան, առաջացած և առաջացող նորը, դրանով իսկ կանգնի դոգմատիզմի դիրքերում։

Վերը նշված բոլոր մոմենտները հատուկ են Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությանը։ Իսկ դրանից անխուսափելիորեն բխում է ցավալի այն եզրակացությունը, որ չին ղեկավարների վարքագիծը ոչ այլ ինչ է, եթե ոչ ազգային-ազատագրական շարժման հաղթանակից գլխապտույտի ենթարկված ղեկավարների մի փորձ՝ համաշխարհային զարգացումը, նրա արմա-





տական խնդիրներն ըմբռնելու և լուծելու նեղ-ազգային տեսանկյունից։ Ինքնին հասկանալի է, որ այս ամենի թեորիական հիմքը կարող է լինել և է առաջին՝ ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմից հեռանալը, դոգմատիկորեն նրա տառից կառչելով ոգուն դավաճանելը, մարքսիզմ-լենինիզմը սեփական նեղ-ազգային ըմբռնումներին հարմարեցնելը։ Պատմությունը շատ օրինակներ է տվել, թե ինչպես լայն տարածում գտած, ժողովրդայնացած ուսմունքի (իսկ այդպիսին է այսօր մարքսիզմ-լենինիզմը) դրոշով հաճախ հանդես են եկել հենց այդ ուսմունքի դեմ։ Բայց հենց նույն պատմությունը ցույց է տալիս, որ որքան էլ նման վարքագծի կրողները հանդես գան «ձախ» ուլտրառևոլյուցիոն ֆրազներով, նրանք, ի վերջո, կհանգեն ռեակցիային։ Միթե այդ չի վկայում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարության 1963 թ. հուլիսի 31-ի հայտարարությունը միջուկային փորձարկումների արգելման վերաբերյալ Մոսկովյան պայմանագրի ստորագրման առթիվ։ Ցավալի է, բայց փաստ, որ ուլտրառևոլյուցիոն չին ղեկավարներն այդ հարցում միևնույն կոմպանիայի մեջ գտնվեցին ամերիկյան «կատաղիների» և ֆրանսիական դեգոլականների հետ։ Զարմանալի է, որ չին ղեկավարներն այս ամենը հրամցնում են որպես մարքսիզմ-լենինիզմի միակ ճիշտ ըմբռնում, համաշխարհային ռևոլյուցիոն շահերի միակ ճիշտ պաշտպանություն։ Երկրորդ՝ դրա թեորիական հիմքը ազգային-ազատագրական շարժման հակադրումն է միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժմանը, բանը ներկայացնել այնպես, թե իբր «ազգային-ազատագրական շարժումն է դարաշրջանի հիմնական շարժիչ ուժը»։ Երրորդ՝ մեթոդոլոգիական տեսակետից դավաճանությունը մարքսիստական դիալեկտիկային, չորրորդ՝ պրակտիկ-քաղաքական տեսակետից՝ վաղուց պատմության աղբակույտը նետված տրոցկիզմին հատուկ ավանտյուրիզմ՝ վոլյունտարիզմի հիմքի վրա։

Ահա սրանք են չին ղեկավարների ներկայիս վարքագծի իրական ու տրամաբանական հիմքերը։ Կասկած չկա, որ այդ վարքագիծը խորթ է մարքսիզմ-լենինիզմի և՛ տառին, և՛ ոգուն։ Դա արմատապես հակասում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի բուն էությանը։ Պատահական չէ, որ համաշխարհային կոմունիստական շարժման ջոկատները մեկը մյուսի հետևից վճռականորեն հանդես են գալիս այդ վարքագծի դեմ, հանուն համաշխարհային կոմունիզմի ուժերի միասնության և հետագա համախմբման. նրանք խորապես մտահոգված են, որ ամեն կերպ հաղթահարվեն այդ միասնության ճանապարհին ընկած բոլոր խոչընդոտները։





# ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՎ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

«Ազատություն» բառն այսօր որպես ահեղ մի մարտակոչ է հնչում աշխարհի բոլոր ժողովուրդների լեզուներով: Եվ ահա, որպեսզի ազատության համար ծավալված շարժումը չմիաձուլվի սոցիալիզմի հետ և ընդունի հակակոմունիստական ընթացք, բուրժուազիայի վարձու գրչակները փորձում են մի կողմից ազատությունը նույնացնել կապիտալիզմի հետ և, մյուս կողմից կեղծելով մեր հասարակարգի էությունը, ազատությունը հակադրել սոցիալիզմին:

Իսկ ինչպիսի՞ն է ազատությունը սոցիալիզմին հակադրելու իմպերիալիստաների ու նրանց գիտական սպասավորների «տեսական» շատամը: «Մեր թշնամիները,— ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշեց Լ. Իլյիչովը,— չարանենգ հերյուրանք են տարածում, թե սոցիալիզմը, վերացնելով մասնավոր սեփականությունը, մասնավոր ձեռնարկատիրությունը և կապիտալիզմի մյուս սքանչելիքները, իբր հասարակությանը զրկել է կենսագործունեության խթանից, ուստի և ստիպված է դիմելու «տոտալիտար մեթոդների», կոնֆլիկտ է ծնել մարդու և արտադրության միջև, մերժել է «սպառողի սուվերենությունը», արհամարհում է մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքները, ճնշում է անհատին»:

Վերջին հաշվով, ո՞րն է մեր թշնամիների գաղափարական ելակետը: Ազատության և աշխատանքի դիալեկտիկական կապի և միասնության նենգափոխումը, որը կարող է իսկապես մաքուր դրամի տեղ ընդունվել սոցիալիստական գիտակցությունից զուրկ խավերի կողմից:

Աշխատանքի և ազատության փոխադարձ կապի ճիշտ ըմբռնումը այսօր, քան երբեք, ունի ոչ միայն տեսական, այլև գործնական մեծ նշանակություն, ինչպես կապիտալիստականի նկատմամբ՝ սոցիալիստական կարգերի առավելությունների բացահայտման, այնպես էլ կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրների ըմբռնման համար:

Ուրեմն ի՞նչ է ազատությունը և ինչպես է այն առնչվում աշխատանքի հետ:

## 1

Մարդը գործի դնելով աշխատանքի միջոցները և իր փորձը, փոխում է բնության իրերի հատկությունները և բավարարություն տալիս իր պահանջմունքներին: Ինչպես նշում է Մարքսը, աշխատանքի միջոցով մարդը բնության



տվածի մեջ միաժամանակ իրականացնում է իր գիտակցված նպատակը: Սա էլ հենց մարդուն վեր է դասում կենդանական աշխարհից, նրան հակադրելով բնությանը, որպես ինքնուրույնությամբ օժտված սուբյեկտ: Բայց աշխատանքը ինչ-որ ավելի մեծ բան է, քան այդ: Էնգելսի արտահայտությամբ, «դա մարդկային ամբողջ կյանքի հիմնական պայմանն է, և այն էլ այն աստիճան, որ մենք որոշ իմաստով պիտի ասենք՝ հենց աշխատանքն է ստեղծել մարդուն» (Ֆ. Էնգելս «Բնության դիալեկտիկա», Հայպետհրատ, 1956 թ., էջ 185): Բանն այն է, որ աշխատանքի պրոցեսում մարդը փոխում է ոչ միայն բնությունը, այլև ինքն իրեն:

Աշխատանքը սակայն բնության տիրապետման թեև առաջին, բայց միակ պայմանը չէ: Մարդկանց գոյությունը կարող է հարատևել և բարգավաճել նրանց համատեղ գործունեությամբ և որոշակի միավորմամբ: Ըստ որում այդ միավորումը ոչ թե պատահական, բնազդային է, ինչպես կենդանական աշխարհում, այլ թելադրված է մարդկային կեցությամբ:

Արտադրության ընթացքում մարդկանց համախմբումը նշանակալի չափով նպաստեց արդյունքների ավելացմանը: Սակայն հազարամյակներ պետք է անցնեին, որպեսզի հասարակությունը հասներ արտադրաուժերի այնպիսի մակարդակի, երբ նախնադարյան համայնքները կարողանային ավելին արտադրել, քան իրենց պահանջմունքն էր: Սակայն ավելցուկների գոյության փաստից սկզբում առաջացած պատահական փոխանակությունը հետզհետե դարձավ կանոնավոր և հրահրեց ստրկական աշխատանքի պահանջը: Արտադրելով նախ փոխանակության համար, հասարակությունը տարերայնորեն ներգրավվեց ապրանքային տնտեսության ոլորտում, որտեղ կենդանի աշխատուժի տերը դադարեց միայն իր համար արտադրելուց: Այս դեպքում նա պետք է աշխատեր և ուրիշի համար, եթե ցանկանում էր հարատևել իր գոյությունը: Աշխատանքի սույն երկուացման էությունը Մարքսը դիտում էր իբրև օտարում:

Անդրադառնալով պատմական այդ դարաշրջանին, Ֆ. Էնգելսը նշել է. «Զարգացման այս աստիճանը հիմնականում հենց այն աստիճանն է, որի ժամանակ առաջ են գալիս աշխատանքի բաժանումը և փոխանակությունն առանձին անհատների միջև: Սրանից հետո այլևս երկար չտևեց, մինչև որ գտնվեց այն մեծ «ճշմարտությունը», թե մարդն էլ կարող է ապրանք լինել, թե մարդկային ուժն էլ կարելի է փոխանակել և օգտագործել, եթե մարդուն ստրուկ դարձնես: Մարդիկ հազիվ էին սկսել փոխանակությունը, երբ նրանք իրենք էլ փոխանակման առարկա դարձան» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, «Ընտիր երկեր», հ. 2, էջ, 415):

Աշխատանքի հասարակական բաժանումն ի վերջո իր հետ բերեց դասակարգերի ծնունդը: Ազատների և ստրուկների տարբերության կողքին դրսևորվեց նաև հարուստների ու աղքատների տարբերությունը: Այլ ցեղերի բռնի ստրկացումն անհրաժեշտաբար հանգեցրեց սեփական ցեղակիցների աշխատանքի բռնադատմանը: Հասարակության անտագոնիստական ընթացքը խորացրեց քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունները:

Մասնավոր սեփականության և դասակարգերի առաջացման հետ միասին հասարակությունը զրկվեց աշխատանքով ստեղծված բարիքները տնօրինելու ֆունկցիայից, որն անցավ սեփականատերերին: Հասարակության մեջ անհատի տեղն ու դերը, նրա մտավոր ու ֆիզիկական զարգացման հնարավորություն-

ներն արդեն սկսեցին որոշվել դասակարգի գոյության պայմաններով, որին պատկանում է նա։ Ըստ որում որքան ավելի շատ բարիքներ է կուտակվում մի բևեռում, այնքան ավելի է աճում աղքատությունը հակադիր բևեռում։ Բնության նկատմամբ մարդու տիրապետությունը դադարում է հասարակության մեջ աշխատավորի ազատության չափանիշը լինելուց։

Աշխատանքը, որ կյանքի էր կոչվել, որպես բնությունից ազատություն նվաճելու սուբյեկտիվ էներգիա, կաղապարվելով մասնավոր սեփականատիրական հարաբերությունների շրջանակներում, վեր է ածվում մի մամլակի, որը ճզմում է այդ էներգիան կրողին՝ մարդուն։ Զրկվելով իր աշխատանքի արդյունքից, մարդը զրկվում է նաև իր աշխատանքի բերկրանքը վայելելու հնարքից։ Ինչպես նշում է Մարքսը, 1844 թվականի իր «Ձեռագրերում», աշխատանքի առարկան, նրա արդյունքը դիմակայում է մարդուն, որպես արտադրողից անկախ, օտար կեցություն։

Աշխատանքի արդյունքների օտարման հետևանքով փոխվում է նաև մարդու վերաբերմունքը բուն աշխատանքի նկատմամբ, որը դադարում է ստեղծագործելու ներքին պահանջմունք լինելուց և վեր է ածվում արտաքին հարկադրանքի։ Ինչպես նշում է Մարքսը, «օտարված» աշխատանքը մարդուց օտարում է նրա մարդկային էությունը։ Հետևանքը լինում է այն, որ աշխատանքը մարդու էությունը հարստացնող, մարդուն էլ ավելի մարդայնացնելու միջոց լինելուց, վեր է ածվում մարդու մոտ գոյության կենդանի բնազդներ վերածնելու միջոցի։ Այստեղ պետք է որոնել շահագործողական հասարակարգերում ազատության բացասման արմատը։

Աշխատանքի օտարումը ծնում է մարդկային գործունեության նաև մյուս կողմերի օտարում։ Նրանք, ովքեր արտադրության միջոցների ու գործիքների սեփականատեր են, նյութական հնարավորություն են ստանում իրենց ձեռքը վերցնելու հոգևոր ստեղծագործության, աշխատանքի արդյունքի բաշխման, արտադրության ղեկավարման, հասարակական հարաբերությունների կարգավորման մենաշնորհը։ Այս հողի վրա էլ ծնվում է օտարումն արդարացնող գաղափարախոսությունը, որը սրբագործում է ու հիմնավորում աշխատավորների կեղեքումը պորտաբույծների կողմից։ Այստեղ էլ, չնայած ազատության բացասման արմատը աշխատանքի օտարումն է, բայց որպես ազատության բացասման կենդանի ուժեր անմիջականորեն հանդես են գալիս օտարման ածանցյալ ձևերը, որոնք ոչ այլ ինչ են, եթե ոչ տիրապետող դասակարգերի ներգործման ձևեր։

Քիչ թե շատ նշանավոր արդյունքի հասնելու համար ճնշվածների դասակարգը ստիպված է լինում նույնպես համախմբելու իր ուժերը։ Հասարակության մեջ գոյության կռիվը դրսևորվում է իբրև դասակարգային պայքար։

Բնավ պատահական չէ, որ բուրժուական գաղափարախոսները հիմա էլ սոցիալական ստրկությունը հավերժացնում են, բոլոր չարիքները դիտելով կամ որպես ի վերուստ սահմանված կարգ, կամ մարդու էությանը, հասարակությանը ներհատուկ ինչ-որ բնատուր արատ։ Սա հենց օտարման գաղափարախոսությունն է, որին հակադրվում է մարքսիզմն իրական աշխարհի իր ճշմարիտ բացատրությամբ։ Մարքսիզմը մարդուն մոտենում է ոչ միայն որպես մի շարք պատճառների ածանցյալի, այլև իր առջև գիտակցական նպատակներ դնող և իրագործող բանական էակի։ Սակայն բանը նրանումն է, որ ազատություն նվաճելու համար մարդը պետք է կարողանա ճանաչել և վերա-



հսկել ոչ միայն բնության, այլև հասարակության զարգացման օրինաչափությունները, մինչդեռ մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակությունն այդպիսի հնարավորություններ չի ընձեռում։ Ինչպես նշում է Էնգելսը, ապրանքային արտադրության վրա հիմնված ամեն մի հասարակություն օժտված է այնպիսի առանձնահատկությամբ, երբ արտադրողները հասարակական հարաբերությունների նկատմամբ կորցնում են իրենց իշխանությունը։ Մարդկանց արտադրական հասարակական գործունեությունը և նրա արդյունքների տնօրինումը դուրս է գալիս նրանց գիտակցական վերահսկողության շրջանակներից, հասարակության զարգացման ներքին օրինաչափությունները մարդկանց նկատմամբ հանդես են գալիս այնպիսի ճակատագրական անխուսափելիությամբ, ինչպես բնության տարերային ուժերը թույլ և անզեն մարդու նկատմամբ։ Այստեղ մարդն իր ստրկական վիճակը կարող է գիտակցել և այն հաղթահարել լոկ այն դեպքում, երբ օտարման հին ձևը հակադրության մեջ մտնելով արտադրության մի նոր, առաջավոր եղանակի հետ, այս կամ այն չափով արդեն սպառել է իրեն։ Բայց նույնիսկ այն ժամանակ, երբ մարդը գիտակցում է տիրող կարգերի կործանման անհրաժեշտությունը, նրա գործողությունները չեն հանգեցնում ցանկալի արդյունքի, քանի դեռ նրա պահանջները խարսխվում են մասնավոր սեփականության վրա։

Անշուշտ ստրկության վերացումը պրոգրեսիվ մի քայլ էր աշխատավորների ստեղծագործական ուժերի ձերբազերծման ճանապարհին։ Բայց շուտով այդ ազատությունը վերածվեց իր հակադրությանը, որովհետև փոխվեց լոկ կեղեքման ձևը և մնաց նույն հիմքը՝ մասնավոր սեփականությունը։ Ճորտատիրական կարգերի վերացումով ընդլայնվեցին աշխատանքի իրավական սահմանները։ Թեև շուտով չքավոր գյուղացին և մանր արհեստավորը մեքենայական արտադրության հուժկու հարվածներից խուճապահար պետք է լքեին իրենց հյուղակները և դիմեին նոր տերերի ողորմածությանը։ Այս անգամ արդեն պատմության թատերաբեմ իջավ մի դասակարգ, որը բոլորովին զուրկ լինելով արտադրության միջոցներից, իր ազատագրության հույսերն այլևս չէր կարող կապել մասնավոր սեփականության հետ։ Այդ ավելի ակնառու դարձավ, երբ արտադրության անարխիայի երկնակամարի վրա մեկը մյուսի ետևից ճայթեցին գերարտադրության ճգնաժամերը, նոր ահավոր զրկանքներ և տառապանքներ բերելով մարդկանց։ Այդ ճայթյուններ լույսի տակ բացվեց մինչև այդ պատմության խավարի մեջ թաղված այն գաղտնիքը, որ մասնավոր սեփականությունը ոչ միայն աշխատանքի ինքնաօտարման արդյունք է, այլև միջոց է աշխատանքն ինքնաօտարելու, այդ օտարումն իրացնելու համար, և որ ընդհանրապես մարդու կողմից մարդու շահագործումը վերացնելու, հասարակությունը գերարտադրության ջղաձգություններից փրկելու առաջին և վճռական պայմանը մասնավոր սեփականության և շահագործող դասակարգերի վերացումն է։

Սակայն հնի խորտակման և նորի հաղթանակի անհրաժեշտությունը որպես հնարավորություն կարող է իրականություն դառնալ մարդկանց գիտակցված, ինքնակամ գործունեության միջոցով։ Քանի դեռ մարդը չի գիտակցել անհրաժեշտությունը, նա շղթայակապ քարշ է գալիս նրա ետևից։ Իսկ երբ գիտակցում է այն, կարող է ազատությունը նվաճել միայն աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման միջոցով։ Խոսքն այստեղ ոչ թե երևույթների արտաքին կապերի և փոխադարձ պայմանավորվածության ըմբռնման, այլ

կապիտալիզմի զարգացման ներքին օրինաչափությունների ճանաչման մասին է, օրինաչափություններ, որոնցով պայմանավորված են բանվոր դասակարգի ազատագրական շարժման նպատակներն ու բնույթը, նրա պայքարի ձևերն ու մեթոդները։

## 2

Մարքսիզմը կապիտալիզմին մոտենալով որպես սեփականատիրության պատմական զարգացման արդյունք, երբեք չի ժխտում, որ նրա հաղթանակը նշանավորեց որոշակի առաջընթաց անհատի ազատության հարցում։ Իր վերելքի ճանապարհին փշրելով ֆեոդալից աշխատավորի գամվածության շղթաները, կապիտալիզմը անհատին դրեց «շուկայի վերաբերմամբ ինքնուրույն հարաբերությունների մեջ, դարձնելով նրան ապրանքատեր (և որպես այդպիսին նրան հավասար դարձնելով ամեն մի այլ ապրանքատիրոջ) և ստեղծեց անհատի զգացմունքի բարձրացում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 527)։ Կապիտալիզմն իր գործունեությունը ծավալելու համար անհրաժեշտաբար հաստատեց անձի իրավական ազատություն ինչպես իր աշխատուժը վաճառքի հանած բանվորի, այնպես էլ կապիտալիստի համար։

Իսկ ի՞նչ «շահեցին» այդպիսի ազատությունից աշխատավորական մասսաները։ Այս հարցի բանալին կրկին գտնում ենք աշխատանքի կապիտալիստական օտարման այն առանձնահատուկ ձևի մեջ, որի սահմաններում և որի միջոցով դրսևորվում է բանվոր դասակարգի կեցությունն իր ողջ ողբերգությամբ, որը նպատակադրված պայքարի է մղում նրան։

Պրոլետարիատի կեցությունը բնորոշվում է այն փաստով, որ զուրկ լինելով արտադրության ամենատարրական միջոցներից և Մարքսի արտահայտությամբ, հասցված լինելով իր «մերկ գոյությանը», աշխատանքի օտարումը կարող է դրսևորվել ոչ թե միջնորդավորված (աշխատավորի ստեղծած իրի) ձևով, այլ անմիջականորեն արտադրության պրոցեսում, աշխատանքի՝ որպես մարդու էության օտարելու ձևով։ Օտարման անմիջական օբյեկտն այստեղ ոչ թե աշխատանքի արդյունքն է, որի մեջ մարդն առարկայացրել է իր գիտակցված նպատակները, այլ մարդն է, որն՝ ինչպես նկատում է ֆրանսիական մարքսիստ-տեսաբան Ռոժե Գարոդին, մասնակցում է անանուն «ապրանքների», անանուն «հավելյալ արժեքի» արտադրությանը։ Այստեղ, արտադրության ոլորտում աշխատավորը դադարում է նպատակներով օժտված լինելուց և վեր է ածվում արտադրության այնպիսի մի պարզ միջոցի, ինչպիսին իր ձեռքով պատրաստված գործիքներն են։ Դեռ ավելին, արտադրության մեքենայացման և ավտոմատացման հետևանքով հարկադրաբար գամվելով մի ինչ-որ արտադրական նեղ գործողության, բանվորը նույնիսկ կորցնում է իր պատկերացումը ստանդարտ դետալի իմաստի ու նպատակի մասին և դառնում է մեքենայի մի պարզ կցորդ։ Սա նշանակում է, որ կապիտալիզմի պայմաններում աշխատավորը կտրվում է ոչ միայն իր աշխատանքի արդյունքից, այլև օտարվում է աշխատանքի բուն պրոցեսին, արտադրական կոլեկտիվին։ Մարդն այլևս դադարում է մարդու մեջ տեսնել իր ընկերոջը, բարեկամին։ Ինչ որ մարդու մեջ մարդկային է՝ աշխատանքը, հանգեցվում է մարդու բիոլոգիական գոյությունը պահպանելու միջոցի։ Աշխատանքը հանդես է գալիս որպես մարդուց դուրս գոյություն ու-



նեցող մի օտար ուժ, որը ճնշում, ճզմում է աշխատավորներին։ Ամերիկյան սոցիոլոգ Հարվեյ Սվոդոսը մի հոդվածում գրում է. «Այն անձինք, որոնց հետ վերջին անգամ աշխատում էի կոնվեյերի վրա, համարյա բոլորն էլ, առանց բացառության, իրենց զգում էին ինչպես թակարդն ընկած կենդանիներ... Նրանց զզվեցրել է այն, որ իրենց քշում են հատուկ վարձված վերակացուները... որ իրենց կյանքում նրանք կախված են եղել հանուն վաճառքի արտադրության մանիակային սիստեմից»։ Այսպիսի պայմաններում, նույնիսկ բարձր աշխատավարձը ոչ այլ ինչ է, եթե ոչ ստրուկի բարձր վճար, որովհետև «... ոչ բանվորին և ոչ էլ աշխատանքին չի վերադարձնում նրանց մարդկային նշանակությունը և արժանապատվությունը» (К. Маркс и Ф. Энгельс, «Из ранных произведений», ст. 567)։ Սա է վերջին հաշվով հանգեցնում մի այնպիսի անախրոնիզմի, երբ բանվորն իրեն մարդ է զգում աշխատանքից դուրս, իսկ աշխատանքի մեջ նա իրեն կորած է համարում և կյանքի մարդկային կողմը դառնում է կենդանական, իսկ կենդանականը ընկալվում է որպես մարդկային։

Կապիտալիստական հասարակության մեջ մարդն օտարվում է աշխատանքին մի այլ առումով ևս։ Նրա գլխին դամոկլյան սրի պես կախված է մրնում անգործության տագնապը։ Այսօր ԱՄՆ-ում 5 միլիոն գործազուրկներ կան։ Բնակչության աճի տվյալները ցույց են տալիս, որ 1970 թվականին աշխատանքի կարիք կունենան 26 միլիոն երիտասարդ ամերիկացիներ, մինչդեռ, ինչպես նշում է «Յունայտեդ Ստեյտս նյուս» ամսագիրը, «Ազատ աշխարհի» ամենահարուստ երկիրը հնարավորություն ունի ամեն տարի աշխատանք տալու ընդամենը 800 հազար նոր բանվորների։

Ի՞նչ է սպասում այսօրվա այն 12 միլիոն պատանիներին ու աղջիկներին, որ 1970 թվականին կգան ողողելու աշխատանքային շուկան։ Եթե արտադրության պրոցեսում աշխատանքի օտարումը մարդուն խորթացնում է արտադրական կոլեկտիվին, ապա գործազրկությունը նրան օտարում է ողջ հասարակությանը։ Բուրժուազիայի գաղափարական սպասարկուների այն պնդումը, թե կապիտալիզմի օրոք մարդն ազատ է, որովհետև հնարավորություն ունի ընտրություն կատարելու աշխատելու և չաշխատելու միջև, ազատության ճշմարիտ ըմբռնումը սոցիալական ստրկության գաղափարախոսությամբ նենգափոխելու փորձ է։

Կապիտալիզմի օրոք աշխատանքի օտարումը հանգեցնում է բանվորի ազատության այնպիսի ծայրահեղ բացասման, որ նա այլևս չի կարող մարդ լինել առանց փշրելու կապիտալիստական սեփականատիրության շղթաները։ Իսկ ո՞րն է այն աղբյուրը, որ սնում, զորացնում է պրոլետարիատին և նրան դարձնում հաղթող ուժ։ Չէ՞ որ նա միակն է պատմությանը հայտնի բոլոր դասակարգերից, որ մարտնչում է սեփականատիրական բնագծի հակառակ կողմում և հույսը միայն իր վրա կարող է դնել։

Պրոլետարիատն իր վիճակը կարող է ընկալել երկու տարբեր հայեցակետից, առաջին՝ տարերայնության ճակատագրական անհրաժեշտության հայեցակետից, որի դեպքում նրա գործողությունները չեն կարող անցնել միջավայրին հարմարվելու կամ էլ խռովության շրջանակներից, և երկրորդ, երբ նա իր կեցությունը դիտում է հասարակության անընդմեջ զարգացման հայեցակետից, որպես անցումային մոմենտ, որպես առանց օտարման աշ-

խարհի հեռանկար, որը չի կարող նրա մեջ չառաջացնել աշխարհը վերափոխելու անզուսպ մղում։

Բայց դեպի ո՞ւր, ինչպիսի՞ երթուղով։ Դեպի ե՞տ։ Այս դեպքում ի՞նչ իմաստ ունի շարժումը։ Դեպի առա՞ջ։ Ուրեմն ի՞նչ պլանով, ինչպե՞ս։

Ճիշտ է, արդյունաբերության համակենտրոնացումը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում պրոլետարների համախմբման համար։ Սակայն այստեղ կապիտալիստների դասակարգը չի պատկերացնում իր գոյությունն առանց աշխատանքի օտարման, իսկ պրոլետարիատի մարդավայել գոյության պայմանը բուն իսկ օտարման բացասումն է, բայց որը կլանված լինելով դառը գրկանքների առօրյա հոգսերով, իր մտավոր կարողությամբ ի վիճակի չէ սեփական ուժերով կռելու ռևոլյուցիոն տեսություն։ Այդ տեսությունը մշակվում և բանվորական շարժման մեջ է մտցվում դրսից, մարքսիստ տեսաբանների կողմից, որոնք աշխատանքի զարգացման և նրա լիակատար ազատագրման մեջ գտնելով հասարակության ողջ պատմության բանալին, իրենց հայացքներն ուղղում են բանվոր դասակարգի կողմը և հասարակական առաջընթացի մատերիալիստական վերլուծությամբ, հայտնագործում են առանց դասակարգերի և առանց օտարման հասարակության ռեալ ուղիները։

Հասարակության պատմական առաջընթացը դիտելով որպես վերջին հաշվով աշխատանքի զարգացման արգասիք, մարքսիզմը մեզ տալիս է աշխատանքի և ազատության փոխհարաբերության, նրանց դիալեկտիկական միասնության միակ ճշմարիտ մեկնաբանությունը։ Մարքսիզմը ելնում է այն ըմբռնումից, որ քանի դեռ արտադրաուժերի զարգացումը գտնվում էր այնպիսի մակարդակի վրա, երբ մարդու կենսական ուժերի հյուծմամբ էր միայն հնարավոր ստեղծել նյութական բարիքներ, առանց աշխատանքի օտարման չէր լինի ժամանակակից քաղաքակրթությունը։ Բայց երբ արտադրողական ուժերն այնքան են զորեղանում, որ աճում են նյութական նախադրյալները հասարակության բոլոր անդամների բազմակողմանի զարգացման և նրանց պահանջմունքների բավարարման համար, աշխատանքի օտարումը դառնում է պատմության կաշկանդիչ գործոն։

Այլ կերպ ասած, այնքան ժամանակ, քանի դեռ մեկի բարեկեցությունը, հետևաբար ազատ զարգացումը հնարավոր է մեկ ուրիշի աշխատանքի հաշվին, հասարակությունն առաջադիմում է աշխատանքի բռնադատման, աշխատավորական զանգվածների ճնշման ու շահագործման միջոցով։ Բայց երբ արտադրաուժերը աճում են այնքան, որ յուրացման մասնավոր սեփականատիրական հարաբերությունները կասեցնում են նրանց առաջընթացը, հասարակությունը կարող է զարգանալ միայն ճնշման ու շահագործման բոլոր ձևերի վերացմամբ, այսինքն՝ աշխատանքի օտարման բացասումով։ Ահա թե որտեղից է բխում կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի հաստատման անհրաժեշտությունը։ Պրոլետարիատի կողմից այս անհրաժեշտության գիտակցումը, որը տեղի է ունենում բանվորական շարժումը գիտական կոմունիզմի հետ միաձուլելու ընթացքում, նոր իմաստ ու ընթացք է տալիս նրա շարժմանը։ Այդ բանի շնորհիվ, Մարքսի արտահայտությամբ, պրոլետարիատն «ինքնին» դասակարգից վեր է ածվում «ինքն իր համար» դասակարգի։ Այդ պահից էլ պրոլետարիատը պատմությունը կերտում է իր և բոլոր աշխատավորների շահերի համեմատ, հանուն



աշխատանքի հավերժ ազատագրման։ Այս մեծ իրողության վրա է խարսխված ազատության նրա ըմբռնումը։

Ի դեպ, այստեղ անհրաժեշտ է ընդգծել Մարքսի այն դարակազմիկ միտքը, որ կապիտալիստական հարաբերությունները՝ նախ և առաջ աշխատուժի առքն ու վաճառքը, խստորեն սքողում են ահավոր շահագործումը կամ հավելյալ արժեքի բուն աղբյուրը։ Հարցին մոտենալով այն տեսակետից, որ «կապիտալն ուրիշի անվճար աշխատանքի մի որոշ քանակի տերն ու տնօրենն է», Մարքսը վերջնականապես բացահայտեց կապիտալիստական տնտեսությանը հատուկ բոլոր կատեգորիաների ֆետիշացման ակունքը, որը բխում է վարձու աշխատանքի սոցիալական սիստեմից։

Հիրավի, կապիտալի իշխանության ներքո մարդկային աշխատանքը բազմազան փոխակերպությունների է ենթարկվում, որի հետևանքով «բուրժուական հասարակության մակերեսի վրա բանվորի վարձը երևում է իբրև աշխատանքի գին, իբրև փողի մի որոշ քանակ, որ վճարվում է աշխատանքի մի որոշ քանակի փոխարեն» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. I, 1933 թ., էջ 502։ Այս և հաջորդ ընդգծումները մերն են—Հ. Հ.)։ Սակայն իրականում այդպես չէ։ Բացահայտելով աշխատավարձի բուն էությունը ու նրա տարբեր ձևերի իռացիոնալ դրսևորումները, Մարքսը միաժամանակ վերհանեց աշխատանքի սոցիալական զարգացման պատմական նկրտումը, համարելով այն բոլոր աշխատավորների վերջնական ազատագրման միակ գրավականը։ Աշխատավարձի իր հանճարեղ տեսությամբ Մարքսը տվեց աշխատանքի դարավոր տառապանքների ճշմարիտ ըմբռնման անփոխարինելի բանալին։

«Ապրանքաշուկայում դրամատիրոջն ուղղակի հանդիպադրվում է իրապես ոչ թե աշխատանքը, այլ բանվորը։ Վերջինս յուր աշխատուժն է ծախում։ Հենց որ բանվորի աշխատանքն իրոք սկսվում է, սա արդեն դադարում է նրան պատկանելուց, ուրեմն այլևս չի կարող նրա կողմից ծախվել։ Աշխատանքն արժեքների սուբստանցն է և ներհատուկ չափը, բայց նա ինքն արժեք չունի։

«Աշխատանքի արժեք» արտահայտության մեջ արժեքի գաղափարը ոչ միայն լիովին ջնջված է, այլ յուր հակադրությանն է փոխարկված։ Նա մի իրակեղծ արտահայտություն է, ինչպիսին է, օրինակ, հողի արժեքը։ Սակայն այս իրակեղծ արտահայտությունները ծագում են հենց արտադրական հարաբերություններից։ Որ իրերը երևույթի մեջ հաճախ շրջված են պատկերանում, այս բավական ծանոթ իրողություն է բոլոր գիտությունների մեջ, բացի քաղաքատնտեսությունից» (Նույն տեղ, էջ 504)։

Ահա իրերի այս շրջված երևալու հետևանքով է, որ աշխատուժի արժեքը դրսևորվում է իռացիոնալ՝ աշխատանքի արժեքի ձևով։ Մինչդեռ իրականում «աշխատավարձի ձևը ջնջում է» վճարված և անվճար աշխատանքի «ամեն մի հետք» և «ամբողջ աշխատանքը թվում է վճարված»։ Այն ժամանակ, երբ գույքային հարաբերությունների հետևանքով ստրուկի ամբողջ աշխատանքը անվճար է թվում, «դրամական հարաբերությունը թաքցնում է վարձու բանվորի ձրիաբար աշխատելը»։

Այսպիսով, այն, ինչ չէին կարողացել անել բուրժուական բոլոր մտածողները աշխատանքի սոցիալ-պատմական էությունն ըմբռնելու բնագավառում, դա կատարեց Կ. Մարքսը։ «Այս պատճառով հասկանալի է այն երևույթի վճռական կարևորությունը, երբ աշխատուժի արժեքն ու գինը

փոխարկվում են աշխատավարձի ձևին, կամ թե դառնում են բուն իսկ աշխատանքի արժեք ու գին։ Բանվորի, ինչպես և կապիտալիստի իրավական բոլոր պատկերացումները, արտադրության կապիտալիստական եղանակի բոլոր կեղծարարությունները, ազատության մասին նրա առաջ բերած բոլոր պատրանքները, գռեհիկ տնտեսագետների ջատագովական բոլոր բարբաջանքները հիմնվում են աշխատուժի արժեքի գնի՝ իբրև աշխատանքի արժեք ու գին երևան գալու այս ձևի վրա, որ թաքցնում է իրական հարաբերությունը և սրա հենց ճիշտ հակառակն է ցույց տալիս» (նույն տեղը, էջ 507)։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակով սկսվում է կեղեքումից ազատագրված աշխատանքի ստեղծարար երթը, որը զերծ է այն բոլոր իռացիոնալ դրսևորումներից, որոնք առկա են կապիտալիստական հասարակարգում։ Այստեղ է, որ ազատ աշխատանքը մարդկությանը բերում է ազատության իրական թագավորություն։

## 3

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մի ժամանակակիցը պատմում է, թե ինչպես մի անգամ Լենինին հարցրին.

— Հավատո՞ւմ եք արդյոք կոմունիզմի հաղթանակին։

Նա կտրուկ պատասխանեց.

— Գիտեմ։

Լենինյան այս լակոնիկ պատասխանի մեջ արտահայտված է ազատության բուն էությունը։

— Հավատում եմ, որովհետև կոմունիզմի կառուցումը գիտականորեն հիմնավորված է, արդարացի և անհրաժեշտ։

Մեր թշնամիներից շատերը, որոնք չգիտեն կամ գիտենալով փորձում են արատավորել մարքսիզմի ազատատենչ ոգին, սովետական մարդկանց նվիրվածությունը կոմունիզմին բացատրում են ինչ-որ ֆանատիզմով։ Սակայն ո՞ւմ համար պարզ չէ, որ ֆանատիզմը նույնքան խորթ է սովետական մարդուն, որքան մարքսիստական փիլիսոփայությունը կրոնական կույր հավատին։

Սոցիալիստական, ինչպես և ամեն մի հասարակության մեջ տնտեսական օրենքները դրսևորվում են մարդկանց կամքից և գիտակցությունից անկախ։ Բայց եթե մասնավոր սեփականության պայմաններում, այդ օրենքներն իրենց համար ճանապարհ են հարթում հակադիր շահերի բախումների, պատահականությունների միջով և աշխատավորը ուրիշի կամակատարն է, ապա սոցիալիզմի օրոք վիճակը բոլորովին փոխվում է։ Հասարակությունն իր ձեռքը վերցնելով արտադրության միջոցներն ու գործիքները, կարողանում է սանձել անհրաժեշտությունը և այն դնել իր իսկական հունի մեջ՝ արտադրությունն ուղղել հենց իրենց՝ նյութական բարիքներն ստեղծողների պահանջմունքների բավարարմանը։

Սոցիալիստական հասարակության ուժն ու վեհությունն այն է, որ աշխատանքը և բանելու պահանջմունքը, աշխատանքը և ազատությունը ոչ թե հակադրվում են միմյանց, ինչպես շահագործողական հասարակարգերում է, այլ հանդես են գալիս միասնաբար։

Իսկ ինչպե՞ս է դրսևորվում աշխատանքի և ազատության միասնու-



թյունը սոցիալիզմի պայմաններում։ Այդ միասնությունը պայմանավորված է առաջին հերթին համաշխարհային պատմական այն իրողությամբ, որ սոցիալիզմի պայմաններում բոլոր աշխատավորները լիովին ազատագրվել են շահագործումից։ «Ով կաշխատի, նա կուտի» սոցիալիզմի սկզբունքի կիրառումը հաստատելով ստեղծարար աշխատանքի տիրապետությունը, դրանով իսկ մեծապես ընդլայնում է ազատության շրջանակները հասարակության բոլոր անդամների համար։ Սոցիալիզմը անձի ազատության նյութական հնարավորությունները կախման մեջ դնելով աշխատանքից, յուրաքանչյուրի ազատ զարգացումը դարձնում է բոլորի ազատ զարգացման պայմանը։

Սոցիալիստական հասարակությունը արտադրությունն ուղղելով հենց իրենց՝ աշխատավորների պահանջմունքների բավարարմանը, ամեն մի աշխատավորի հնարավորություն է տալիս ըմբռնելու աշխատանքի հասարակական դերը, գիտակցելու իր աշխատանքի նպատակը, որը և ծնում է նյութականից դուրս, աշխատանքի արտադրողականության բարձրացման նոր՝ բարոյական կարգի շարժառիթներ։ Դրա շնորհիվ բազմապատկվում են բնության նկատմամբ հասարակության տիրապետությունն ընդլայնելու հնարավորությունները, որը և ճանապարհ է հարթում ապրուստի առօրյա հոգսերի բեռը մարդու ուսերից ընդմիշտ թոթափելու, անձի լիակատար ազատության համար։

Աշխատողների անշահախնդիր հոգատարությունը համաժողովրդական շահերի, սոցիալիստական արտադրությունը բարձրացնելու նկատմամբ, սերտ միավորում է մարդկանց արտադրական կոլեկտիվների մեջ։ Այդ հիման վրա աշխատանքի պրոցեսում գոյավորվում են ընկերական համագործակցության և սոցիալիստական փոխօգնության հարաբերություններ, անսահմանափակ հնարավորություններ են ստեղծվում նախորդների աշխատանքի փորձը ստեղծագործաբար յուրացնելու և անհատի ունակությունները դրսևորելու համար։ Աշխատանքը ազատության նյութական նախադրյալներ ստեղծելու միջոց լինելու հետ միաժամանակ, դառնում է անհատի ազատ զարգացման միջոց։

Արևմտյան մի բիզնեսմեն հյուրընկալվելով Սովետական Միությունում և սոցիալիստական մյուս երկրներում, զարմացած ասել է. «տնտեսությունն այստեղ առաջ է ընթանում այնպիսի հսկայական քայլերով, որ կարելի է կարծել, թե կոմունիստները նրան հագցրել են մոգական մաշիկներ, ինչպես մանկական հեքիաթում»։ Վատ չի ասված, բայց ասված է առանց իմանալու, թե որն է այն մոգական ուժը, որն օգնում է սովետներին սրընթաց շարժվելու առաջ։ Այդ ուժը՝ ազատագրված աշխատանքն է, որի միջոցով սովետական մարդիկ դրսևորում են իրենց ողջ եռանդը, ոգին ու միտքը։ Հենց այստեղից էլ սկիզբ է առնում միլիոնավոր նորարարների և կոմունիստական աշխատանքի բրիգադաների ու հարվածայինների հուժկու շարժումը։

Սովետական մարդկանց պատկերացմամբ, իրական ազատությունը աշխատավոր ժողովրդի և նրա շինարար գործունեության սատարումն է։ Միլիոնների կողմից գիտակցված կոմունիզմի կառուցման անհրաժեշտությունը թեկուզ և որոշ դժվարությունների գնով, մարդկանց մղում է աշխատանքային սխրանքների։ Մարդիկ այսօր աշխատում են բազմապատկված եռանդով, որպեսզի վաղը ավելի մեծ բարիքներից օգտվեն։

Սոցիալիստական աշխատանքի բնորոշ կողմերը հատուկ կլինեն նաև

կոմունիզմին, որովհետև նրանք միևնույն հասարակական-տնտեսական ֆորմացիայի զարգացման աստիճաններն են։ Թե՛ սոցիալիզմը և թե կոմունիզմը հենվում են արտադրության միջոցների հանրային սեփականության և յուրացման հասարակական ձևի վրա։ Երկու դեպքերում էլ հասարակությունն իր յուրաքանչյուր անդամից պահանջում է աշխատել «ըստ իր ընդունակությունների»։ Հիմնական տարբերությունն այստեղ հասարակության անդամների պահանջմունքների բավարարման որակական տարբեր աստիճանների մեջ է։

Սոցիալիզմը բնութագրելով որպես կոմունիզմի առաջին փուլ, Լենինը գրում է. «... կոմունիզմի առաջին փուլը դեռ չի կարող արդարություն և հավասարություն տալ. հարստության վերաբերյալ տարբերությունները կըմնան... Ջախջախելով Լասալի մութ ֆրազը «հավասարության» և «արդարության» մասին ընդհանրապես, Մարքսը ցույց է տալիս կոմունիստական հասարակության զարգացման ընթացքը, հասարակություն, որն ստիպված է նախ ոչնչացնել միայն այն «անարդարությունը», որ արտադրության միջոցները հափշտակել են առանձին մարդիկ, և որն անկարող է միանգամից ոչնչացնել նաև հետագա անարդարությունը, երբ սպառման առարկաները բաշխվում են «ըստ աշխատանքի» (և ոչ թե ըստ պահանջմունքների) (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 606—607)։

Այստեղից հետևում է, որ եթե սոցիալիզմի օրոք ազատությունը հիմնականում նշանակում է աշխատավորների ազատագրումը շահագործումից և նրանց ֆիզիկական ու հոգևոր կարողությունների բուռն զարգացում, ապա կոմունիզմը մարդու վերջնական հոգսազերծումն է նյութական բնույթի կարիքներից։ Լիակատար ազատությունը ենթադրում է ոչ միայն բաշխման, այլև աշխատանքի հավասար պայմաններ։ Խոսքն այստեղ, առաջին հերթին, քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքների միջև եղած տարբերությունների վերացման մասին է։

Դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին Լենինը նշում էր, որ սովետական իշխանությունը չի կարող բանվորների նկատմամբ վերաբերվել այնպես, ինչպես կապիտալիստները, որոնք սովի ու մահակի սպառնալիքով բանվորներին քշում էին առողջության համար վնասակար, ծանր, հյուծող աշխատանքի։ Նշելով հատկապես տորֆամշակման մեջ աշխատանքի ծանր պայմանները, Լենինը խնդիր է դնում մեքենաների ամենալայն կիրառման միջոցով արմատապես թեթևացնել աշխատանքը ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում։

Այն, ինչի մասին երազում էր Լենինը, իրականություն է դարձել մեր երկրում։ Այսօր արդեն աշխատանքային շատ պրոցեսների մեքենայացմանը փոխարինելու են գալիս արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, որը նշանակում է մի նոր հեղաշրջում աշխատանքի բնույթի և նրա պայմանների մեջ։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը հնարավորություններ կընձեռի աստիճանաբար մեքենաներին և ավտոմատներին հանձնելու ոչ միայն ծանր ֆիզիկական աշխատանքը, այլև նախկինում գոյություն ունեցող աշխատանքի միակողմանի, միոտոն գործողությունները, որով և օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծվում մարդուն աշխատանքից վանող դրդապատճառների վերացման համար։



Թեռնաթափելով ձեռքերը, տեխնիկական առաջադիմությունը ծանրաբեռնում է միտքը, խթանում, արագացնում է աշխատավորի մտավոր զարգացումը։ Սոցիալիզմը ստեղծելով և ամենուր զարգացնելով մարդկանց կուլտուրական, տեխնիկական մակարդակի բարձրացման ռեալ հիմքերը, նաև ճանապարհ է հարթում մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման համար։

Տեխնիկական առաջադիմությունը սոցիալիզմի պայմաններում մի նոր բարիք էլ է բերում։ Այն տնտեսական անհրաժեշտություն է դարձնում աշխատանքային օրվա կրճատումը։ Ազատ ժամանակն այն «իսկական հարստությունն է», որ սոցիալիզմը ի սպաս է դնում աշխատավորների ուսման, որակավորման բարձրացման, հաճելի հանգստի, էսթետիկական ճաշակի զարգացման համար։ Ընդունակությունների բազմակողմանի զարգացումը նրանց հնարավորություն է տալիս ազատորեն ընտրելու իրենց ընդունակություններին ու հակումներին համապատասխան մասնագիտություն, իսկ ցանկության դեպքում աշխատանքային գործունեության մի ձևը փոխարինելու մի այլ ձևով։

Այսպիսով, կոմունիզմի օրոք կստեղծվի մի այնպիսի վիճակ, երբ մարդու կողմից աշխատանքի անհրաժեշտության խոր ըմբռնումը, կզուգակցվի աշխատանքի պրոցեսում ֆիզիկական և մտավոր ողջ կարողությունները ներդնելու մարդու ներքին ցանկության հետ։ Այդ էլ պահանջմունքների բավարարման համար աշխատանքը կվերափոխի մի աշխատանքով, որը նորմալ օրգանիզմի ներքնաբուխ, ստեղծագործական պահանջմունք է։

Կոմունիզմը,— ասված է մեր պարտիայի ծրագրում, ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կըհաստատվի հանրային ինքնավարություն, հասարակության համար կատարվող աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջ, գիտակցված անհրաժեշտություն, յուրաքանչյուրի ընդունակությունները կըգործադրվեն ժողովրդի համար առավել օգտավետությամբ։

Սոցիալիզմի պայմաններում ամենուր ծնունդ է առնում և ծավալվում ընդհանուրի համար աշխատելու մասսայական շարժումը, որն իր մարմնավորումն է գտնում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի բազմաթիվ ձևերում։

Սոցիալիզմն ազատություն է ապահովում բոլոր նրանց, ովքեր ազնիվ աշխատանքով են ապրում և անձնվիրաբար ծառայում են կոմունիզմին։ Բայց մեր երկրում ազատ չեն և չեն կարող լինել նրանք, ովքեր խանգարում են ժողովրդին կառուցելու կոմունիզմ։ Մեր հասարակության նշանաբանն է.

— Ուզո՞ւմ ես ապրել կոմունիզմի օրոք, ուրեմն աշխատիր ստեղծել նյութական նախադրյալներ այդ հասարակության համար, իսկ եթե փորձում ես կոմունիզմ գնալ ուրիշի ուսերին բազմած, ազատության թշնամի ես, խորթ տարր։

Չկա և չի կարող լինել ճշմարիտ ազատություն առանց պարտականությունների և պատասխանատվության։ Մարդկանց ներարկել կոմունիստական հոգեբանություն իրենց ամենաէական պարտականության՝ աշխատանքի նկատմամբ, միաժամանակ նշանակում է նրանց գիտակցության մեջ սերմանել ազատության ճշմարիտ ըմբռնում, նրանց նախապատրաստել գալիք լիավարտ ազատության՝ կոմունիզմի համար։

---

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԳՐԱԿԱՆ ԿԵՐՊԱՐԸ

Ս. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Բանասիրական գիտությունների թեկնածու

## 1

*Ռեալիստական գրականության պատմությունը նոր մարդու որոնման, մարդու նկատմամբ արտահայտվող անկաշառ սիրո պատմություն է, հումանիզմի պատմություն։ Գրողներն ու արվեստագետները, ճշմարիտ հետախույզների նման, տանջալի որոնումներ են կատարել, երազել, ծանր երկունքի ու մտորումների ազնիվ տառապանք ապրել՝ իսկական մարդուն գտնելու համար։ Որոնումները երկար են տևել։ Այսօր էլ դեռ շարունակվում են՝ ինքնատիպ մտահղացումներով, գեղարվեստական անսովոր ձևերով, կյանքի ու պատմության նոր խաչաձևումների մեկնությամբ։*

*Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում անփոխարինելի գործոն է գաղափարական աշխատանքը՝ նրա մի մասնաճյուղը կազմող գեղարվեստական գրականությունը։ Նոր բարձրացող քաղաքների ու գյուղերի, վերաշտարակվող գործարանների, մշտապես փոփոխվող իրականության համապատկերում պետք է ցայտուն երևա այդ ամենի ստեղծողը՝ մարդը։ Մարդը՝ տքնող ու ստեղծագործող, երազող ու շինարար, բուռն ապրումներով, մեծ սրտով, գեղեցիկ իդեալներով։ Ու գեղարվեստական գրականությունը պետք է մարմնավորի նրան՝ մեր ժամանակակցին, իսկական քաղաքացուն, պետք է նպաստի նոր մարդու ձևավորման պատմական պրոցեսին, տոգորի լավատեսությամբ ու կենսահաստատ զգացումներով, զարգացնի նրա մեջ թանկագին հատկություններ։*

*Սովետական գրականությունը հսկայական փորձ է կուտակել նոր մարդու կերպարի մարմնավորման ավելի քան չորս տասնամյակ ձգվող ճանապարհին։ Որոնումներ՝ տևական ու համառ։ Ստեղծագործական ինքնատիպ զըննումներ՝ կյանքում իր օրինական տեղը հաստատած, նոր աշխարհ կառուցող մարդու հոգեբանության հետախուզումով։ Եվ ահա առաջին հաջողությունները։ 20—30-ական թվականներին, իբրև պատմական էպոխայի տիպական արտահայտություն, սովետական գրականության մեջ ստեղծվում են գեղարվեստական մեծարժեք երկեր՝ իրականության ռևոլյուցիոն վերակառուցման պաթոսը իրենց էությունը դարձրած, նոր աշխարհայացք ունեցող հերոսական բնավորություններով։ Ֆադեևի «Ջախջախում», Սերաֆիմովիչի «Երկաթե հեղեղ», Ֆուրմանովի «Չապաև», Շոլոխովի «Հերկած խոպան», Օստրովսկու*



*«Ինչպես է կոփվում պողպատը», Գլադկովի «Ցեմենտ», Գորբատովի «Դոնբաս» վեպերում ժամանակաշրջանի հասարակական-սոցիալական և քաղաքական հեղաբեկումների ֆոնի վրա բարձրանում են նոր մարդկանց բազմաթիվ ռեալիստական կերպարներ։*

*Հետագա տասնամյակներում նույնպես սովետական գրողները հաջողությամբ շարունակում են որոնումները՝ մեր օրերի հերոսի գրական կերպարի ամբողջացման ուղղությամբ։ Հիշենք Լեոնովի «Ռուսական անտառ», Կազակևիչի «Աստղ», Պանովայի «Ուղեկիցներ», Ֆադեևի «Երիտասարդ գվարդիա», Աժաևի «Մոսկվայից հեռու», Պոլևոյի «Պատմվածք իսկական մարդու մասին», Շոլոխովի «Մարդու ճակատագիրը», Սիմոնովի «Ողջերն ու մեռածները», Նիկոլաևի «Ուղեմարտը», Ստելմախի «Մարդկային արյունը ջուր չէ» վիպական կտավները։ Հիշենք Աուեզովի, Գոնչարի, Այտմատովի և այլ հեղինակների տասնյակ ստեղծագործությունները, սովետահայ արձակից՝ Ստ. Զորյանի «Հեղկոմի նախագահը», Արազու «Ընկեր Մուկուչը», «Ջրվեժի ցոլքում», Դեմիրճյանի «Ռաշիդը», «Նիգյարը», Ն. Զարյանի «Հացավանը», Բակունցի ու Թոթովենցի մի շարք պատմվածքներն ու վիպակները։ Այս երկերի հերոսները նոր ժամանակաշրջանի մարդիկ են, նոր հոգեբանության ու աշխարհայացքի կրողներ։ Անձնազոհությունը, հասարակական ու անհատական շահերի սերտ ներդաշնակումը, ժողովրդի գործին կատարելապես նվիրվելու գաղափարը նրանց բնավորության մեջ մուծում են ռոմանտիկ ընդգծված երանգ։ Սերը մարդու հանդեպ, կյանքը նորացնելու գործնական ձգտումը հիմնորեն շաղախված են սոցիալ-պատմական տեղաշարժերի ըմբռնմանը։ Հերոսի կատարած որևէ քայլ չի առանձնանում ժամանակաշրջանի բուռն շարժումներից։ Բնորոշ է նաև, որ հետին պլան չի մղվում անձնականը։ Կա, երևում է «ներքին» մարդը։ Հեղինակները բնավ չեն շրջանցել ընտանեկան-անհատական դրաման, թեպետ գլխավոր կոնֆլիկտը զարգանում է ոչ թե «կենցաղային» ակոսով, այլ հասարակական բարդ հանգույցների խաչաձևումով։ Բնական էր դա և ցոլացնում էր պատմական զարգացման օրինաչափ ընթացքը։*

*Որոնումներին, սակայն, ուղեկցում էին նաև տանջալի հակասություններ, լուրջ նահանջներ ու անհաջողություններ։ Մասնավորապես անհատի պաշտամունքի ծանր տարիներին ցավալիորեն շատ խոր էր զգացվում ճեղքվածքը։ «Անկոնֆլիկտայնության» դիմազրկող տեսությունը, հերոսի բնութագրման անճիշտ չափանիշները, կեղծ հռետորականությունը և փաստագրական նատուրալիզմը իբրև գրականություն հրամցնելու պրակտիկան տխուր հետևանքներ էին ունենում։ Հորինվում էին գրական հերոսի չափված ու ձևված կաղապարներ։ Մի յուրօրինակ «պրոկրուստյան մահիճ», որին անպայման հարմարվում էին կամ ստիպված էին հարմարվել գրողները։ Հաճախ գրականության հերոս էր դառնում մերկ բարոյախոսը, որ վերջին հաշվով կրավորական անձնավորություն էր։ Անարյուն ու անկենդան այդ կերպարը, ըստ էության, զրկված էր անհատականությունից։ Երևութական էր նրա դերը, որքան էլ ղեկավար պաշտոն էր զբաղեցնում։ Պարզ է, որ չէր կարող այդպիսի հերոսը նստվածք տալ ընթերցողի հոգում, մտերմորեն խոսել սրտերի հետ։*

*Սա չի նշանակում, անշուշտ, թե անհատի պաշտամունքի շրջանում գրական արժեքավոր երկեր չստեղծվեցին, կամ գրականության մեջ ամենևին հանդես չեկան մեր օրերի մարդիկ՝ լիարյուն ու կենդանի, մարդիկ, որոնք*

հավատ ներշնչելին, ոգևորելին։ Ահա Հրաչյա Քոչարի «Մեծ տան զավակները» վեպը, գեղարվեստական ակնարկներն ու պատմվածքները, Մկրտիչ Արմենի «Յասավան», Ս. Խանզադյանի «Մեր գնդի մարդիկ» և Ստ. Ալաջաջյանի «Անապատում» ստեղծագործությունները, Գարեգին Սևունցի «Թեհրան» երկհատոր վեպը և այլն։ Գործեր են սրանք՝ հագեցված հայրենասիրական ու հումանիստական բովանդակությամբ։ Հերոսները չեն խուսափում կյանքի «աղմուկից», հեշտասահ ուղիներ չեն որոնում։ Նրանց կերպարների բացահայտման միջոցով հեղինակները դրսևորում են խոր քաղաքացիականություն, բարձրացնում սոցիալական հուզող պրոբլեմներ։

## 2.

Իսկ ինչպիսի՞ն է վիճակը անհատի պաշտամունքի պսակազերծումից հետո։ Էսթետիկական ի՞նչ սկզբունքներ են գործում այսօր մեր ժամանակակցի հերոսական բնավորությունը մարմնավորելու պրոցեսում։

Վերջին տասնամյակում, հիրավի, փոխվել է մթնոլորտն ու «մաքուր երկնքի» տակ երևույթներն այլ գունավորում են ստացել։ Այժմ մարդու «արժեքավորումը» կատարվում է հասարակական-պատմական զարգացման արդի էտապի համապատկերում՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի տեսանկյունով, որը մարդկային փոխհարաբերություններում դավանում է բարձր ու ազնիվ սկզբունքներ։ Ահա այս հարցում է հենց, որ գեղարվեստական գրականությունը պետք է իր անկեղծ խոսքն ասի, դառնա իրոք մասսաների միտքը, կամքը և զգացմունքը կազմակերպող ազդու միջոց։

Սովետահայ արձակի զարգացման ակնառու տենդենցը, անհատի պաշտամունքի քննադատությունից հետո, իսկական մարդու, ժամանակակից հերոսի կերտման ուղղությամբ կատարվող նոր որոնումների խորքում պետք է տեսնել։ Ապարդյուն չեն անցել որոնումները։ Եվ այսօր նկատելի նվաճումներ ունենք։ Մի կողմից՝ անցած տասնամյակների որոշակի փորձը, մյուս կողմից՝ արվեստի ու գրականության գործիչների համար ստեղծված այսօրվա մթնոլորտը հնարավորություն են ընձեռում կյանքի տեղաշարժերն ընկալել հասարակական զարգացման շղթայում, նոր մարդու դերը, նրա անհատականության գեղարվեստական պատմությունը ներկայացնել ճիշտ դիտակետից։

Բնավորության ինչպիսի՞ գծեր են առանձնացնում սովետահայ արձակագիրները ժամանակակից մարդու կերպարում։ Որո՞նք են հասարակական-բարոյական այն հատկանիշները, որոնք բնութագրում են մեր գրականության այսօրվա հերոսին։

Գրականության հերոսի ընտրության հարցը չափազանց կենսական է ու սերտորեն առնչվում է կյանքի ճանաչողության հետ։ Չպետք է բեմերից նայել ընդարձակ դահլիճներում հավաքված ունկնդիրներին, փորձելով նրանցից առանձնացնել գրական կերպար։ Անկարելի է պատահական տպավորություններից «կարթով» որսալ նրան։ Անհրաժեշտ է մշտապես քայլել կյանքի մայրուղիներում, չխուսափել խաչմերուկներից ու կեռմաններից։ Կենդանի իրականության խորքերի հետախուզումով հասնել հերոսին և ոչ թե սոսկ արտաքին շերտերին թեթևակի հաղորդակցվելով։

«Մարդու էսթետիկայի» այսպիսի ըմբռնումը ուղեցույց է եղել մի շարք գրողների համար՝ իրենց ստեղծագործություններում ամբողջական հայացք



զարգացնելու և գեղարվեստորեն լուծելու ժամանակակից հերոսի պրոբլեմը։ Մարդուն պետք է ցույց տալ ազնիվ ճանապարհը, սովորեցնել նրան գեղեցիկ ապրելու արվեստը։ «Բարձրանալ և միշտ բարձրանալ։ Բարձրանալ մինչև... մարդը»,— գրում է Մահարին։ Հասնողը քայլում է հպարտ, իր վաստակի ու նպատակի գիտակցումն ունեցող մարդու վստահությամբ։ Նրա հերոսը՝ վարպետ Աշոտը, մեծ հավատ ունի դեպի մարդը և փորձառուի շեշտով խրատում է Սանասարին։ «Մտածիր քո ձեռքի մասին, մաքրիր ձեռքդ ու համբուրիր քո մաքրված ձեռքը։ Ձեռքը տրված է մարդուն աշխատելու համար և ոչ թե... գողանալու կամ լիզելու»։ Այնուհետև նույն խոր համոզմունքով նա ավելացնում է. «Չլիներ ձեռքը, ոչինչ չէր լինի աշխարհում, ոչ քաղաք, ոչ գյուղ, ոչինչ չէր լինի... Ձեռքն է ստորագրում բարի ու չար թղթեր, ձեռքն է կառուցում բանտ ու պիոներական պալատ, ձեռքը, ձեռքը...»։ Շատ որոշակի, նույնիսկ անսքող տենդենցով է ասված։ «Մաքուր ձեռքերի» մահարիական փիլիսոփայությունը խոր ենթատեքստ ունի և ուղղակիորեն մերվում է գրականության այսօրվա հերոսի գեղագիտական ըմբռնման հետ։

Իսկական արվեստը միշտ էլ հասցեագրված է մարդուն, օգնում է ապրել ու պայքարել, ամրապնդում է հավատը բանականության և արդարության ուժի հանդեպ։ Արվեստը պետք է ոգևորի ու վեհացնի մարդուն, կյանքի վերափոխման պատմական միսիայում մղի դեպի ազնիվը, բարին։ Հումանիստական այս մեկնակետը սովետական գրականության շարժիչ ուժն է, այն հավատամքը, որով գրողները ծառայում են ժողովրդին։ Մաքսիմ Գորկին, մեր գրականության մեծ սկզբնավորողը, շատ գեղեցիկ է բանաձևել իր մարդասիրական հայացքները. «Հասկանո՞ւմ եք դուք, թե ինչ է նշանակում մարդ»,— ասում է նա։— «Ես չգիտեմ ոչինչ ավելի լավ, ավելի բարդ, ավելի հետաքրքիր, քան մարդը», մի նամակում գրում է Ռեպինին։ Մեծ հումանիստը, իբրև ճշմարիտ խոստովանություն և իր ստեղծագործական կենսագրության պայծառ նշանաբան, այն միտքն է հայտնում, որ իր համար մարդու մեջ կարևոր են նրա բոլոր լավ, արժեքավոր կողմերը։ Եվ խորհուրդ է տալիս գրողներին՝ ավելի շատ ուշք դարձնել առավելություններին, քիչ՝ թերություններին։

Անշուշտ այս թեզը չի նշանակում անհոգություն և անտարբերություն դեպի մարդկանց ծուռն ու թերին. հաշտվողականության կամ չեզոքության քարոզ չէ։ Մարդուն կատարյալ տեսնելու, ավելին՝ կատարելագործելու անդիմադրելի բաղձանքն է գրողին թելադրել այդ թեզը։ Մարդու նկատմամբ ունեցած անափ սերն ու հավատն են նրան տարել շարունակ իսկական հերոսներ փնտրելու, պայքարող ու անընկճելի բնավորություններ հայտնաբերելու, մարդկանց հոգու ծալքերում ազնիվ հատկանիշներ տեսնելու հունով։ Եվ բնավ պատահական չէ, որ մարդու գորկիական կոնցեպցիան տրամաբանորեն հանգեց այս համոզմունքին. «Իմ ուրախությունը և հպարտությունը նոր մարդն է, նոր հասարակարգ կառուցողը»։

Մեր ժամանակի հերոսի գեղարվեստականացման պահանջը պատմական սոցիալ-հասարակական իմաստ ունի և անմիջականորեն կապվում է արդիականության արմատական պրոբլեմներին։ Դիտենք, թե գրական հերոսի մարմնավորման հարցում գրողներն ինչպիսի դիրքորոշում ունեն՝ հատկապես արդիականության սուր պրոբլեմներին արձագանքելու իմաստով։ Ժամանակակից մարդը դառնո՞ւմ է դարաշրջանի սոցիալ-հասարակական մակընթացությունների կրողն ու արտահայտիչը։

«Երջանկությո՞ւն, ասում ես, իսկ ի՞նչ ասել է երջանկություն»։ «Կյա՞նք, իսկ ի՞նչ է կյանքը»։ «Ի՞նչ ասել է ապրել»։ Արտաքուստ պարզ, սակայն իրականում բարդ հարցեր, որոնք յուրաքանչյուրի մոտ յուրովի սահմանում ու մեկնաբանություն ունեն՝ կյանքի նկատմամբ իրենց հատուկ վերաբերմունքով, մոտեցմամբ, կյանքին տալու կամ կյանքից քաղելու փիլիսոփայությամբ։ Արձակագիր Բոգդան Վերդյանը «Լեռների որդին» վեպում այս հարցերի գեղարվեստական լուծումն է դարձրել գլխավոր անկյունաքարը։ Նույն բանը տեսնում ենք նաև երիտասարդ արձակագիր Վ. Պետրոսյանի մի շարք պատմվածքներում ու «Մամա, ես արդեն մեծացել եմ» վիպակում։ Երիտասարդության հասարակական նկարագրի, անհատական-բարոյական աճի համապատկերում հեղինակը ջանում է գեղարվեստորեն հիմնավորել այդ հուզող հարցը։ Իսկապես, ինչի՞ համար է մարդը ապրում։ «Մարդը նրա համար չի ծնվում, որ երկար ապրի։ Եթե այդ լիներ ապրելու նպատակը, մարդը կարող էր երազել քար ծնվել, քանի որ աշխարհի ամեն մի քար ավելի երկար է մնում հողի վրա, քան մարդկանցից ամենաերկարակյացը։ Մարդը ծնվում է ապրում է ուրիշ բանի համար։ Բայց ինչի՞ համար...»։

Իր վիպակի գաղափարական զարգացումը Վ. Պետրոսյանը տանում է մեր ժամանակաշրջանի առաջադրած և մարդու բարոյական կերպարը բնութագրող այս խնդիրը լուծելու հետքերով։ Նրա հերոսը մեծ կենսագրություն չունի, սակայն արագ համոզվում է, որ ապրելու իմաստը աշխատանքի մեջ է, և մարդը իր կյանքը իմաստավորելու համար պետք է անդադար, համառ ու հետևողական կերպով որոնի, որոնի մինչև վերջ։

Բ. Վերդյանի հերոսը՝ Արմենը, գիտության մարդ է։ Ավարտելով քիմիական ֆակուլտետը, նա պատրաստվում է նվիրվել սիրած աշխատանքին, բայց պատերազմն անկատար է թողնում նրա երազանքը։ Երբ չորս տարի հետո դառնում է տուն, կյանքում արդեն շատ բան էր փոխվել։ Փոխվել ու հասունացել էր Արմենը։ Այժմ նա ավելի խոր համոզվածությամբ է կապվում գիտությանը, լեզու տալիս քարերին։ Հանձին նրա Բ. Վերդյանը պատկերել է մարդ-գիտնականին, որի պատկերացումները կյանքի, երջանկության մասին՝ գեղեցիկ ապրելու, գեղեցիկ աշխատանքի, բարձրին ու կատարյալին երազելու կենսահայեցողությամբ են ջերմացած։ Արմենի համար «ապրելը» և «գոյություն ունենալը» միանգամայն տարբեր բաներ են։ Ապրել՝ առաջին հերթին նշանակում է տքնել, սիրել ու գործել։ Ապահով ապրելակերպի համար հնարավոր է ունենալ և հարմարավետ բնակարան, արտասահմանյան կահույքով, և սեփական ավտոմեքենա, և լավ պաշտոն (սա է վեպի հերոսներից մեկի՝ քաղքենի Վեքիլյանի պատկերացումը երջանկության մասին)։ Սակայն, իրոք, նման «երջանկությունից» մարդ կարող է պայթել, եթե ոչինչ չի ստեղծում։ Մոլեռանդ սիրահարի պես նվիրվիր գործիդ, գործով հաստատիր քո գոյության իրավունքը— ահա Արմենի փիլիսոփայությունը։ «Ես մարդ եմ և ստեղծված եմ նրա համար, որ մի բան ավելացնեմ եղածի վրա,— ասում է նա։ «Կա՞ աշխարհում ավելի մեծ բավականություն, քան երբ մարդ ուտում է իր ստեղծած հացը, խմում իր ստեղծած գինին... այրվում իր ստեղծած հնոցի առաջ»։ Երբ ունես կատարածդ գործի ճշմարիտ գիտակցությունը, թող աշխարհում թեկուզ մեկը միայն ճանաչի քեզ, միայն մեկը հասկանա, դարձյալ արժե ապրել։ Այսպիսի համոզմունքը կարող է ծնվել միայն իսկական մարդասիրու-



թյունից։ Եվ այդ անկաշառ մարդասիրությունն է ժամանակակից հերոսի բնավորության մի առանձնահատկությունը։

Նոր մարդու պրոբլեմը ինքնատիպ ձևով է մեկնել Անահիտ Սահինյանը «Խաչուղիներ» վեպում։ Որոշակիորեն տարբեր են մարդկանց կրքերը, հոգեբանությունը։ Իրական գործող պրոցեսը, էպոխայի պահանջներին համապատասխան, ձևում է նոր բնավորություններ։ Այսինքն՝ նոր հերոսը միօրինակ ու միագիծ սխեմա չէ, անփոփոխ մեծություն, այլ իրական գործող պրոցեսի կենդանի արդյունք։

Դրական հերոսի մի առանձնահատկությունը գեղեցիկ իդեալների դավանումն է։ Այդ իդեալները հակադրության մեջ չեն հասարակական գործող օրենքների հետ։ Ընդհակառակը, պայմանավորված են դրանցով, սոցիալ-հասարակական բովանդակություն ունեն։ Դրական հերոսի իդեալը արվեստագետի իդեալն է, որ կերպարանք է ստանում պատկերների, տիպական հանգամանքների ամբողջական հյուսվածքում, հերոսի սոցիալ-հոգեբանական զարգացմամբ։ Մեր արվեստի փիլիսոփայությունը տրամագծորեն առանձնանում է անհատապաշտական էսթետիկայի զանազան հնատարազ և մոդայիկ տեսություններից։ Սոցիալիստական ռեալիզմի գրականության մեջ հավատը մարդու հանդեպ, նրա ուժի և անսահմանափակ կարելությունների ճիշտ գնահատումը գլխավոր երակն է։ Դա ծայրահեղ բևեռն է մենակության և անհատի հուսալքության, անվստահության և դատապարտվածության զգացում սերմանող գրականության։ Սովետական գրականությունը դրական հերոսի խտացված օրինակներ է տվել։ Դրանք մեր օրերի ազնիվ քաղաքացիներն են, ամբողջական նկարագիր ունեցող անհատներ, որոնք ոչ թե «կուլ են գնում կոլեկտիվին», այլ վերջինիս ներդաշնակ սիմֆոնիայում հնչեցնում իրենց սեփական, ինքնատիպ ձայնը։

Ժամանակակից ֆորմալիզմը, աբստրակցիոնիզմը, մոդեռնիստական այլ ուղղությունները թերահավատություն են ներշնչում մարդու հանդեպ, նրա պատմական փորձի և ստեղծագործական հնարավորությունների հանդեպ։ Մեր արվեստի փիլիսոփայությունը, մարդկային խոր բովանդակությամբ, ընդհակառակը, անսպառ հավատ է ներշնչում։ Այսպես, նայենք թեկուզ արձակի նոր նվաճումներին. գլխավոր պաթոսը այդ ստեղծագործություններում մարդու մեծարման գաղափարն է, այսօրվա մարդու տիպական առանձնահատկությունների շեշտվածությունը։

Իսկ որտե՞ղ փնտրել ժամանակակից հերոսին։ Ներանձնացած գրողի հոգու «գաղտնարաններո՞ւմ», գրքերի՞ մեջ։ Երևակայությա՞մբ սնունդ տալ նրան։ Իրականությունը խոսքի ճշմարիտ վարպետներին ցույց է տալիս տեղը. պետք է հետախուզել կյանքի խորքերը, որոնել մարդկային-հասարակական փոխհարաբերությունների ջրապտույտում՝ Քաջարանի ու Ալավերդու պղնձահանքերում, մեծ քիմիայի համար պայքարող աշխատավորների շրջապատում, Արարատյան դաշտում, Երևանի հզոր գործարաններում, Արագածի լանջերին, գիտնականների ու ինտելիգենցիայի միջավայրում։ Սերո Խանզադյանի «Հողը», Բ. Ուլուբաբյանի «Հայրենի հող» և «Թարթառ», Բ. Սեյրանյանի «Աստղաձոր» ծավալուն հյուսվածքները, Ս. Այվազյանի, Գ. Բեսի, Վ. Խեչումյանի, Ա. Ավագյանի, Վ. Արամյանի, Խ. Գյուլնազարյանի մի շարք պատմվածքներ ու նովելներ շոշափում են ժամանակակից հերոսի հարցը։

Կյանքի տարբեր ոլորտներից ընտրելով նոր մարդու բնորոշ կերպարներ,

մի էական խնդրի վրա են սովետահայ արձակագիրները սևեռում իրենց ուշադրությունը. նոր մարդու նկարագիրը տալ ժողովրդի կյանքի ճշմարիտ օրինաչափությունների գնահատության չափանիշով, հերոսի գործունեությունը դիտել ժամանակի ու պատմության օբյեկտիվ իրողությունների նշանակետից։ Գարեգինը երազում է տասնամյակներ շարունակ խոպան մնացած տարածությունները դարձնել հացի շտեմարան («Հողը»), Արմենակ Արագյանի ձգտումը փոքր ու մասնատված կոլտնտեսությունների խոշորացումն է («Աստղաձոր»), Գևորգ Սարոյանը պայքարում է քայքայված գյուղական տնտեսությունը ոտքի կանգնեցնելու համար («Հայրենի հող»)։ Հերոսների բնավորության մեջ ընդգծված է մարդկանց նվիրվելու, մարդուն երջանիկ դարձնելու զգացումը։ Այնուհետև, հետաքրքիր է այն փաստը, որ նրանք ինչ-որ արտակարգ կեցվածք չեն ընդունում, հերոսականության ճչացող ու երևույթական համարում չունեն։ Հանդես չեն բերվում «բացառիկ» հանգամանքներում, խորհրդավոր ու «գերմարդկային» արարքներով չեն զարմացնում։ Սովորական մարդիկ են։ Ոչ մի ճիգ՝ նրանց կերպարներում փայլ կամ հրավառություն ցուցադրելու։ Եվ, այնուամենայնիվ, առանձնանում են իրենց խառնվածքով։ Ինչո՞ւ։ Նախ, նրանց հոգեբանության մեջ չեն մուծված անհարազատ, օտարամուտ գծեր։ Ամեն ինչ բնական է, անկեղծ՝ և՛ հողի լեզուն հասկանալու գաղտնիքը, և՛ մարդու հետ մտերմանալու անշահախնդիր ձգտումը, և՛ եռանդը առանց մնացորդի մարդկանց նվիրաբերելու թանկ հատկությունը։

Մյուս կողմից՝ նրանք ճշմարիտ ըմբռնում ունեն մարդու կոչման մասին և հավատարիմ են մնում այդ ըմբռնմանը իրենց ամբողջ գործունեությամբ, հասարակական-բարոյական վարքագծով։ «Ես կոլխոզում գրավում եմ ամենաբարձր պաշտոնը՝ շարքային կոլտնտեսականի պաշտոնը», անկեղծ պարծանքով ասում է Բ. Ուլուբաբյանի հերոսներից մեկը, ջրբաժան Բարսեղը։ Այդպես են մտածում նաև սովետահայ արձակի շատ կերպարներ։ Ու դա պատահական չէ։ Մեր շատ արձակագիրներ իսկական մարդուն տեսնում են ժողովրդի ընդերքում՝ ժողովրդական կենսահյութերով սնված ու մեծացած։ Եվ գիտակցորեն հերոսի ընտրության հարցում պաշտպանում են այդ առողջ տեսակետը՝ կերտել բնավորություններ՝ ժողովրդի տարերքի, պատմական փորձի ու մաքառման խոր կնիքով։

Նոր մարդու գեղարվեստական դիմանկարի հարցում որոշակի հաջողության է հասել շնորհալի արձակագիր Բ. Ուլուբաբյանը։ Նրա «Թարթառ» վիպակը, որ արժանացել է «Դրուժբա նարոդով» ամսագրի մրցանակին, այդ իմաստով նկատելի առաջքայլ է։ Իրական ու գրական փաստի համադրությամբ հեղինակը ստեղծել է կենդանի միջավայր, մի հաճելի մթնոլորտ, որտեղ գործող հերոսները հոգեբանական ինչ-ինչ նրբերանգներով դառնում են ժամանակակից գյուղաշխարհի բնորոշ կողմերի խտացումը։ Վիպակում կենտրոնական հերոսը Արտաշեսն է՝ պարտիայի շրջկոմի հրահանգիչը։ Սովետահայ արձակում մեծ մասամբ պարտիական աշխատողների դիմապատկերը դժգույն է ստացվել։ Շատ աննշան թիվ են կազմում ներքին կրակ ու ջերմություն ունեցող հերոսները՝ լույսով ու ստվերով, հավատով ու տագնապով։ Զարմանալի անկեղծություն ենք տեսնում Արտաշեսի կերպարում։ Մարդասիրության զգացումը շատ հզոր ծփանքով է հանդես գալիս նրա բնավորության մեջ, իբրև մյուս հատկանիշների՝ համեստության, լավատեսության ու աշխատանքի նվիրվածության հայտարար։ Իսկ որտեղի՞ց է բխում այդ սթափ և զգա-



յուն վերաբերմունքը, ի՞նչ արմատներ ունի նրա մարդասիրությունը։ Բ. Ուլուբաբյանը ընդգծել է Արտաշեսի մոտ կյանքի ճանաչողությունը, գյուղացու սրտի խոր զգացողությունը։ Արտաշեսն անկեղծորեն սիրում է մարդկանց, մտերիմ ու հարազատ է գյուղացուն։ Մերթ վերջինիս ցավակիցն է, մերթ ուրախության ընկերը, մերթ խորհրդատուն։ Պայծառ երազանքով է ողողված նրա հոգին, ու հավատում ես, որ այդ երազանքը կյանքի թրթիռն է կրում իր մեջ։

Հր. Քոչարի «Մայրը», Ա. Ավագյանի «Միջօրե», «Պատշգամբից», Վ. Խեչումյանի «Կայծակնահար ծառը», Ս. Այվազյանի «Լուռ Լալազարը», «Ջրերի ձայնը», Բ. Սեյրանյանի «Տրակտորիստները», Ս. Խանզադյանի «Բաղդասար նախագահը», Գ. Բեսի «Բրիգադիր Ենոքը», «Վարդը», Վ. Պետրոսյանի «Մարդու ճանապարհը» պատմվածքները տարբեր մարդկանց ու տարբեր ճակատագրերի մասին են գրված։ Բայց մի գիծ, կարմիր թելի պես, անցնում է բոլորի միջով։ Դա հենց մեր օրերի մարդկանց բնավորությունը ցոլացնելու գեղարվեստական ճշմարիտ մեկնակետն է. մարդը պետք է կյանքում ապրի սիրով ու հավատով, լույսեր ունենա հոգում, հոգու լույսերը տա աշխարհին։ Նրանց հերոսները գործում են որոշակի նախասիրություններով, գիտեն, թե ինչ են փայփայում, ինչ են ատում։ Հերոսներ, որ «չեն կորցրել գլխավորը կյանքում»— գեղեցիկ ու ազնիվ ճանապարհի ուղևոր լինելու ձգտումը։ Նորի կրողներն են նրանք՝ նույնպես հավատ ներշնչող։ Իսկ «երբ մարդիկ հավատ են ներշնչում քեզ,— գրում է սովետահայ նովելիստներից մեկը,— ուզում ես երգել, ուզում ես, որ այդ երգը քո ուրախությունը տանի դեպի հեռուները, բաժանի ուրիշներին, ընկերներիդ, հարազատներիդ»։

Նոր մարդու կերպարը առանցքային պրոբլեմ է նաև, պայմանականորեն ասենք, «արդյունաբերական» թեմատիկայի մի շարք ստեղծագործություններում։ Վերջին տարիներս բանվոր դասակարգի կյանքն ու աշխատանքը նկատելիորեն զբաղեցնում են մեր արձակագիրներին։ Վերջիններս, թեև ոչ ստեպ-ստեպ, հայացք են նետում դեպի գործարան, նյութեր քաղում դազգյահի մարդկանց հոգու խորքերից։ Վ. Ալազանի Նատալիան, Սեմյոն Սիլինը, Վազգենը, Իվան Զագորնին («Հյուսիսային աստղ»), Ա. Ստեփանյանի Անին («Ամառնամուտ»), Բ. Վերդյանի Վարդանը, Հրայրը, Կարինեն («Ինչպե՞ս է գալիս երջանկությունը») նոր մարդկանց լիարյուն բնավորություններ են։

Հեղինակները դազգյահի ու տեխնիկական սարքավորումների ետևում չեն մոռացել կենդանի աշխատավորին, չեն անտեսել նրա հոգեբանությունը։ Հերոսները գեղանկարված են պարզ ու բնական ինտոնացիայով, գործարանային ու ընտանեկան փոխհարաբերությունների հանգույցում։ Յուրաքանչյուրը հանդես է գալիս հոգեկան ուրույն աշխարհով, վարակիչ հույզերով ու զգացմունքներով։ Նրանք «մարգարեններ» չեն, ոչ էլ աստվածակերպ գերմարդիկ։ Նոր ժամանակի քաղաքացիներ են, որոնց կերպարներում շատ բնական երանգներով արտահայտվել են սովետական մարդկանց գլխավոր առանձնահատկությունները՝ աշխատասիրությունը, կոլեկտիվիզմը, հումանիզմը, ժողովուրդների բարեկամությունը, ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունը։ Նրանք անցել են ինքնաստուգման մեծ դպրոց՝ կյանքի դպրոցը, հասարակության մեջ տեղ և անուն ունենալու համար իրենց բնավորության անհատականությունը «սրել» կյանքի հեսանին։

Աճի տենդենցով նրանք մեր արձակում նախապատրաստում են մուտքը այնպիսի հերոսների, որոնք համապարփակ նշանակություն ունեն, երբեք չեն

կարող հաշտվել «հարյուր գրամանոց երջանկության» հետ (Օ. Գոնչար) և անցնելով տարբեր փորձություններից, իրենց համար սահմանել են այս հավատոհանգանակը. «Միայն պայքարի մեջ է ապրում մարդը»։

## 3.

Կյանքը կանաչ լույսերով ողողված պողոտա չէ։ Իրական հակասությունները, հնարավոր է, երբեմն շատ են դառնացնում մարդուն։ Սակայն մարդն իր մեջ ուժ պիտի գտնի դիմագրավելու փորձությունը, չպետք է թողնի, որ նկվի հոգին։ Դառնությունները, փորձություններն ու զրկանքները չպետք է խախտեն մարդու հավատը։ Սա ուժեղ բնավորության, ամուր կամքի հարց է, և գեղարվեստական գրականությունը պետք է ձևեր գտնի այդ հատկությունները մարդկանց հոգեբանության մեջ պատվաստելու համար։

Անհատի պաշտամունքի քննադատությունից հետո պայմաններ ստեղծվեցին ճշմարիտ խոսք բացելու ո՛չ միայն մի ամբողջ էտապի խոր հակասությունների մասին, այլև առհասարակ մարդուն տեսնելու այնպես, ինչպես նա կա։ Գրականությունն է դառնում մարդու հոգեկան դրաման, մարդը պատկերվում է նաև իր կորուստներով։ Այդպես մարդն ավելի է մարդկայնանում, ստանում է իր բնական գույնը։

Կյանքի հակասությունների, անհատի ողբերգության թեման վերջերս շատ է հուզում մեր արվեստագետներին։ Դա օրինաչափ է։ Երբ մաքրվում է երկինքը, թող ամպի ծվեն չմնա։ Անհատի պաշտամունքի շրջանում մոլեգնող անիրավության հիմքերի բացահայտումը կնպաստի առողջ մթնոլորտ ստեղծելուն։

Այդ առնչությամբ սովետահայ արձակում քննվում է մարդու բարոյականքաղաքական դիմանկարի հարցը։ Գրողներն անհատի անձնական ու հասարակական փոխհարաբերությունները պատկերելիս, մարդկային կոչման ու պարտքի թեման սրելիս աշխատում են ցույց տալ նաև խութերն ու դժվարությունները։ Նրանք կյանքի զարգացման կորագծի մեջ իրական հակասությունների անտեսման դյուրին ճանապարհը չեն ընտրում։ Արդիական նյութի գեղարվեստական մշակումը, հեռավոր կամ մոտիկ անցյալի պատմության պեղումը կատարում են այնպես, որ երևա ժողովրդի, ժամանակակից մարդու չվարագուրած կենսագրությունը՝ իր պայծառ և ամպոտ օրերի միմյանց հանգուցված օղակներով։

Գուրգեն Մահարու «Նախօրյակին», «Սև մարդը», Մ. Արմենի «Իմ տառը», Վ. Արամյանի «Փշրված սարսափը», Մ. Սարգսյանի «Խնդրում եմ չմոռանալ» պատմվածքները, Շ. Թաթիկյանի «Նրա ճանապարհը» վեպը, Լ. Հուրունցի «Կարապներ» վիպակը, որքան էլ ծանր թեմայի լումծան մղումով են ստեղծված, որքան էլ անհատի ներքին դրամայի անաքող ցուցադրումն են, այնուամենայնիվ նոր մարդու առաքինության, տոկունության, կամքի ու հավատի հիմնն են հնչեցնում։ Պատմության փորձով հաստատվել է սովետական մարդկանց հերոսական բնավորությունը։ Արտաքին ու ներքին ոչ մի ահեղ փոթորիկ չկարողացավ ընկճել նրանց ոգին, մարել հայրենասիրության կրակը, թուլացնել նոր աշխարհ կառուցելու նրանց նվիրական բաղձանքը։ Անգամ պատերազմը, անգամ Սիբիրի բուքն ու սառնամանիքը, ուր տանջալիորեն խախտում էին ազնիվ ու շինարար մարդկանց կյանքի բնականոն ընթացքը, անկա-



րող գտնվեցին սպանելու մարդու հավատը։ Չկոծկելով կյանքի անարդարու-
թյուններն ու թերությունները, սովետահայ գրողները պատմական մի ժամա-
նակահատվածի մասին ասում են դառը ճշմարտությունը։ Մարդը պատկեր-
վում է իր ներքին աշխարհի բարդություններով, անցած ճանապարհի հակա-
սականությամբ, հոգեկան վերելքով ու անկումով։ Այսինքն՝ «գրական կեն-
ցաղ» է դառնում ռեալիստական արվեստի տրադիցիան, իսկ դա մեր գրակա-
նության հետագա զարգացման գլխավոր նշանաձողերից մեկն է։

Ո՞րն է կյանքի հակասությունները, մարդու անձնական ու հասարակա-
կան դրաման արտացոլող երկերի արժեքը։ Առաջին հերթին՝ ուսուցողական
լիցքը։ Այլևս չպետք է կրկնվեն անցյալի հանցապարտ սխալները։ Մարդը իր
բարձունքից չպետք է իջնի կյանքի հատակը։ Հետևողականորեն պետք է պայ-
քարել արդարության ու ճշմարտության համար։ Եվ հեղինակների այս կեն-
սափիլիսոփայությունը մեր կյանքի մի պատմական էտապի յուրովի արձա-
գանքն է։ Որքան հուզիչ է ու ցնցող գրական կերպարների կենսագրության
պատումը, այնքան հավատում ես նոր մարդու անկեղծությանը. «Կոմունիստ
եմ, իսկական, նրդվյալ։ Մինչև 1940 թվականը առանց տոմսի, 1940 թվակա-
նից՝ տոմսով։ Տոմսը կրել եմ երկու տարի միայն. մնացած տարիներին բռ-
նագրավված տոմսս կրծքիս վրայից տեղափոխել եմ կրծքիս տակ և դրանով
է բաբախել իմ սիրտը»։ Մ. Սարգսյանի «Խնդրում եմ չմոռանալ» պատմված-
քի հերոսի այս խոսքերը կարող են անվերապահորեն կրկնել Մահարու Նյա-
յան, Աշոտը, Հուրունցի Լենան, Սուրենը, Մ. Արմենի Կովալյովը և ուրիշներ։

## 4.

Չի կարելի, սակայն, մեր ասածներից հետևցնել, թե սովետահայ արձա-
կում նոր մարդու պատկերման պրոբլեմը լուծված է հիմնավորապես։ Իսկու-
թյունն այն է, որ դեռևս մտահոգող պակասություններ ունենք։ Կյանքի ճանա-
չողության ակնհայտ թուլությամբ և տեսական առանձին դրույթների ոչ հստակ
ըմբռնմամբ պայմանավորված թերություններ, որոնց հաղթահարումը անհե-
տաձգելի խնդիր է այսօր։

Նոր մարդու, մեր ժամանակակցի կերպարը շատ գրողների է հուզում,
բայց քչերն են կարողանում ստեղծել այնպիսի անհատականություններ, որոնք
դառնային գրական հերոսի օրինակելի տիպարներ։ Նոր մարդու և գրական
հերոսի սահմանները միախառնվում են, բայց նույնը չեն։ Գրական հերոսի
մարմնավորումը անպայման ենթադրում է հասարակական որևէ կոնկրետ
պատմաշրջանի սոցիալ-հոգեբանական ընդհանրացում։ Հերոսականությունն
ու էպիկականությունը նրա ամենաբնորոշ կողմերն են։ Խոր ընդհանրացումը
նրան հաղորդում է նաև մոնումենտալություն, «մասշտաբայնություն»։ Այդ
հատկանիշներով գրական հերոսը դառնում է «էպոխայի տիպ», «նոր դարի լի-
կական ասպետ»։ Էպիկական հզոր ուժով, խոհերի ու զգացմունքների լիրիկա-
կանությամբ գրական հերոսը ձեռք է բերում մի տեսակ կենտրոնաձիգ հատ-
կություն և դառնում հավաքական կրողը այն ամեն լավագույնի, որ ավելի
քան քառասնամյա իր պատմության մեջ սեփականել է սովետական ժողո-
վուրդը։

Գրական հերոսի մոնումենտալությունը չի հասկացվում սոսկ լայնքի,
ծավալի, ընդգրկման իմաստով, այլ, առաջին հերթին՝ բովանդակության, նրա

նշանակության ու խորության։ Այստեղ արդեն որոշիչը գրողի ընդհանրաց-
ման վարպետությունն է։ Մյուս կողմից՝ չմոռանանք, որ անխառն ու զտված
հերոսների պահանջը գայթակղիչ կերպով կարող է տանել դեպի սխեմատիզմ,
կյանքի երևույթների հասարակացում։ Նոր հերոսը կենդանի մարդ է՝ իր խո-
հերով ու զգացմունքներով, իր անձնական կյանքով։ Հետևաբար նրան էլ կա-
րող են երբեմն հատուկ լինել մարդկային առանձին «թուլություններ», միայն
թե նրա կերպարում որոշիչ լիցքը ժամանակի գլխավոր պաթոսի ճիշտ ընկա-
լումն է։

Դրական հերոսի էսթետիկական չափանիշը կոնկրետությունն է, ճշմարտա-
ցիությունը։ Ճշմարտացիությունն էլ կոնկրետ է, հետևապես կենսական հարց
է, թե հերոսը կյանքի ո՞ր ճշմարտությունն է արտահայտում, այսինքն՝ ո՞ւմ
հայեցակետից, գաղափարական ինչպիսի ելակետով։ Դրական հերոսը ոչ թե
ինչ-որ կրավորական, հասարակությունից դուրս կանգնած լավ հատկանիշների
հավաքածու է, այլ կոմունիստական հայացքների գաղափարախոսը։ Սրանից
հետևում է, որ տվյալ դեպքում պարտիական մոտեցումը արվեստագետի հա-
մար ունի սկզբունքային նշանակություն, իսկ նոր մարդու կերպարը պետք է
ցուցադրվի լայն կապի ու կապակցությունների մեջ, կենդանի կոնֆլիկտների,
կրքերի ու բախումների խաչուղիներում։

Սովետահայ մի շարք արձակագիրների երկերում գրեթե չենք զգում
ստեղծագործական հաճելի անհանգստությունը՝ նոր մարդկանց բնավորությու-
նը սրելու, նրանց կերպարներին հասարակական հնչեղություն հաղորդելու
համար։ Էլ չենք խոսում այն մասին, որ չափազանց քիչ են սոցիալ-պատմա-
կան մեծ նշանակություն ունեցող, լայն ընդգրկումի և խոր բովանդակության
մարմնացում դրական հերոսները։ Խտացված անհատականությունների փո-
խարեն առանձին գրողներ որդեգրել են «ծավալային» կերպարների խոցելի
մեթոդը (Նոր-Այրի «Ոլորտներում», Քր. Թափալցյանի «Ոսկե հովիտ» վեպե-
րը)։ Այդ պատճառով մեծ ծավալ ունեցող նրանց երկերում նոր մարդկանց
դիմապատկերներն աղոտ են, անգույն։ Պակասում է ոգևորիչ ռոմանտիկան,
երազանքը, որ հերոսականության ակունքներից մեկն է։

«Ամառնամուտ» ծավալուն վեպում Ա. Ստեփանյանը հաջողությամբ կեր-
տելով Անիի կերպարը, մյուս գործող անձերի վրա քիչ ուշադրություն է դարձ-
րել, և որ առավել ցավալի է, կենսաղագրական վիպագրության հետքերով
խիստ «մանրացրել» նրանց։

Լեոնովին ուղղված մի նամակում Գորկին այն միտքն է հայտնել, թե ինքը
ստեղծագործության մեջ սիրում է լինել մարդու աճի դիտորդը։ Այս խոսքի ու,
առհասարակ, Գորկու ամբողջ ժառանգության մեջ լավագույն ձևով արտա-
հայտվել է արվեստագետի դավանանքը, գրականությունն իբրև «մարդագի-
տություն» ըմբռնելու կոնցեպցիան։ Նոր մարդը մեկընդմիշտ տրված, անփո-
փոխ մեծություն չէ։ Հասարակական զարգացման հետ նրա բնավորությունը
նոր երանգներ է ընդունում, հասունանում։ Սակայն, ընդհանրության մեջ հե-
տաքրքիր, որոշ գործերում նոր մարդու կերպարի գրեթե անշարժ վիճակներ
են հաջորդում իրար։ Ս. Այվազյանի «Լեռնցիներ», Ա. Ավագյանի «Նազելի
Դալարյան», Ան. Սեկոյանի «Ոսկե վազերի մեջ», Խ. Հրաչյանի «Ուրցի Մա-
րան» վեպերը այդ իմաստով լուրջ արատներ ունեն։

Այնուհետև, չի կարելի աչքաթող անել, որ նոր մարդկանց գրական կեր-
պարներում երբեմն չի շեշտվում քաղաքացիական ակտիվությունը (Հ. Ղու-



կասյանի «Ռոմանտիկ պատմություն» վիպակը, Մ. Շաթիրյանի վերջին գոր-
ծերը և այլն)։ Իսկ առանձին երիտասարդ արձակագիրների երկերում ժամա-
նակակից մարդը հաճախ զրկված է ազգային կոնկրետ նկարագրից (Պ. Զեյ-
թունցյանի «Մեզանից հետո» վեպը, Վ. Նալբանդյանի պատմվածքները)։

Ակնառու նվաճումների կողքին քիչ չեն թերությունները։ Ուրեմն՝ գրող-
ները անելիքներ շատ ունեն։

Ժողովրդի մեծագույն ուժի գեղեցիկ ակունքներից պետք է ջուր առնի
արվեստագետը, նոր մարդու կամքի, հավատի ու լավատեսության փիլիսոփա-
յությունից գնա դեպի ժողովրդի ոգու պանծացումը։ Սովետական գրականու-
թյան հմայքը ժողովրդայնության մեջ է։ Ժողովրդայնությունը ժամանակի ա-
մենակենսական իդեալների բացահայտումն է՝ ռեալիստական բարձրարվեստ
գործերում։

Սովետահա՜յ արվեստագետները պետք է դիմեն նոր որոնումների, նոր հե-
տախուզումների՝ հայտնագործելու այն հանքաքարը, որից պետք է ձուլել
ազնիվ մետաղը։ Ասել է թե՝ գտնել մեր օրերի մարդկանց այն կենդանի նա-
խատիպերը, որոնք իրենց մեջ թաքցնում են գրական կերպարի առողջ սեր-
մեր։ Իսկ իրականությունը, հիրավի, այնքա՜ն շռայլ է այդպիսի նախատիպե-
րով։ Մնում է բազմազան ու բազմաթիվ տաղանդների, հերոսների միջից վար-
պետորեն ընտրել առավել կենսականը, բնորոշը, որն ավելի խորությամբ
կարտահայտի էպոխայի շունչը, պատմության զարգացման ոգին, հասարա-
կական կյանքի պաթոսը։

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿԱՊԻ ՆԵՐԿԱՆ ԵՎ ԱՊԱԳԱՆ


Թ. ՄԻՆԱՍՅԱՆՑ

Հայկական ՍՍՌ կապի մինիստր


**Սոցիալիզմը առանց փոստի, հեռագրի. մեքենաների՝ ամենադատարկ ֆրազ է:**
**ԼԵՆԻՆ**

Կապը ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերից մեկն է, որը կոչված է բավարարելու արտադրության և բնակչության պահանջմունքները փոստային, հեռագրական, հեռախոսային հաղորդումների, ռադիոհաղորդման և հեռուստատեսության բնագավառում: Կոմունիստական շինարարության բոլոր էտապներում պարտիան և սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրել կապի համապետական միջոցների կազմակերպմանն ու շինարարությանը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների բազայի վրա դրանց տեխնիկական կատարելագործմանը:

Առանց կապի չի կարող լինել կատարելագործված արտադրություն: Կապը պատկանում է հասարակական արտադրական պրոցեսի այն ընդհանուր պայմաններին և աշխատանքի ընդհանուր միջոցներին, առանց որի արտադրության պրոցեսը միանգամայն անհնար է, կամ կարող է տեղի ունենալ չկատարելագործված ձևով: Կ. Մարքսը գրել է. «Սակայն ինքնակա այնպիսի արդյունաբերաճյուղեր կան, որտեղ արտադրապրոցեսի արդյունքն առարկայական նոր արդյունք չի, ապրանք չի ամենևին: Այս ճյուղերի շարքում տնտեսապես կարևոր է հաղորդակցության արդյունաբերությունը միայն, լինի սա ապրանքների ու մարդկանց բուն փոխադրանքի արդյունաբերություն, թե սոսկ հաղորդումների, նամակների, հեռագրերի և այլոց փոխհանձնում, միևնույն է»: Դրանով իսկ կապը հասարակական արտադրական պրոցեսի պարտադիր պայմանն ու անհրաժեշտ տարրն է: Զարգանալով հասարակության արտադրողական ուժերի աճման ազդեցության տակ, կապի միջոցները, իրենց հերթին, ներգործություն են ունենում արտադրողական ուժերի զարգացման վրա, լրացուցիչ հնարավորություններ ստեղծում հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման համար: «Խոշոր արտադրությունը, մեքենաները, երկաթուղիները, հեռախոսը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— այս ամենը հազարավոր հնարավորություններ են տալիս քառապատիկ կրճատելու կազմակերպված բանվորների աշխատանքային ժամանակը, նրանց համար ապահովելով քառապատիկ ավելի բարեկեցություն, քան այժմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 20, էջ 181):



Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ժամանակակից էտապում, երբ անհրաժեշտ է առավելագույն չափով կոոպերացնել արդյունաբերական ձեռնարկությունները, ընդլայնել տնտեսական կապերը վաճառահանող և մատակարարող կազմակերպությունների միջև, աճում են կապի միջոցների դերն ու նշանակությունը ժողտնտխորհների, արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, գյուղատնտեսության, տրանսպորտի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համաձայնեցված ու պլանաչափ աշխատանքն ապահովելու գործում: Կապի միջոցները կրճատում են արտադրության կառավարման անարտադրողական ծախսերը, արագացնում շրջանառու միջոցների շրջանառությունը և իջեցնում թողարկվող արտադրանքի արժեքը: Կապի միջոցները ընդհանուր արտադրական պրոցեսի անհրաժեշտ տարրն են և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի բաղկացուցիչ մասը:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում հսկայական նշանակություն տալով կապին, ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Է՛լ ավելի կզարգանան կապի բոլոր միջոցները (փոստը, ռադիոն, հեռուստատեսությունը, հեռախոսը, հեռագիրը): Երկրի բոլոր շրջանները կստանան լավ և կայուն կապ և կկապվեն փոխադարձաբար իրար հետ կապված հեռուստատեսային կայանների ցանցով»:

Այս ծրագրային դրույթը հաջողությամբ իրականացվում է նաև մեր ռեսպուբլիկայում:

Ժողովրդական տնտեսության օպերատիվ ղեկավարման բնագավառում կապի կարևորագույն ճյուղը միջքաղաքային հեռագրական-հեռախոսային կապն է: Ռեսպուբլիկայում վերջին տարիներս հատուկ ուշադրություն է նվիրվել կապի այդ ճյուղի զարգացմանը: Յոթնամյակի անցած հինգ տարում միջքաղաքային հեռախոսային կանալների թիվն ավելացել է ավելի քան 4 անգամ: Դրա շնորհիվ բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոնները, բացառությամբ Մեղրիի, Ղուկասյանի և Ամասիայի, ունեն 2—3 ու ավելի միջքաղաքային ուղղակի կապեր, որոնցով ապահովվում է 24-ժամյա կանոնավոր կապը Երևանի հետ: Իսկ ռեսպուբլիկայի տնտեսական այնպիսի կարևոր շրջանների ու հանգուցակետերի հետ, ինչպիսիք են՝ Լենինականը, Կիրովականը, Հրազդանը, Եղեգնաձորը, Հոկտեմբերյանը, Արտաշատը և այլն՝ Երևանն ունի 10—15-ական և ավելի միջքաղաքային հեռախոսային կապ: Մինչդեռ մինչև վերջերս էլ քաղաքների ու շրջանային կենտրոնների մեծ մասը կապն ստանում էր կարգացուցակով, օրվա խիստ սահմանված ժամերին:

Ներռեսպուբլիկական միջքաղաքային հեռախոսային կապի այսպիսի բարելավմանը նպաստեց այն հանգամանքը, որ բոլոր ուղղություններում կախվեցին մեծ քանակությամբ երկմետաղ շղթաներ՝ տեղադրելով նրանց խտացման բազմականալ բարձր հաճախականության ապարատուրա, որոնց օգնությամբ ֆիզիկական երկու հաղորդալարերով միաժամանակ կարող է տեղի ունենալ մինչև 16 հեռախոսային խոսակցություն: Բացի դրանից, հեռախոսային մեկ կանալով կարելի է կազմակերպել մինչև 17 հեռագրական կապ: Այժմ գրեթե բոլոր երկմետաղ և պողպատյա շղթաները, որոնք ռեսպուբլիկայի քաղաքներն ու շրջանային կենտրոնները կապում են Երևանի և միմյանց

հետ, խտացված են B—3, BC—3 և B—12—2 տիպի բազմականալ բարձր հաճախականության ապարատուրայով։

Մեծ ուշադրություն է հատկացվում միջշրջանային հեռախոսային կապին։ Այսպես, մի քանի ուղղակի գծեր են ստեղծվել Հոկտեմբերյանի ու Թալինի, Արթիկի ու Լենինականի, Դիլիջանի ու Կրասնոսելսկի, Գորիսի ու Ղափանի, Դիլիջանի և Իջևանի, Ալավերդու ու Նոյեմբերյանի և այլ քաղաքների միջև։ Ընդսմին այդպիսի կապ է կազմակերպվում, առաջին հերթին՝ ռեսպուբլիկայի այնպիսի քաղաքների ու շրջանային կենտրոնների միջև, որոնք միմյանց հետ ունեն տնտեսական և արտադրական սերտ կապեր։ Այդ միջոցառումների շնորհիվ նրանք ստացան անմիջական հեռախոսային միացումների հնարավորություն՝ առանց Երևանի միջամտության, որը մեծ չափով արագացնում է նրանց միջքաղաքային հեռախոսային խոսակցությունը։ Բացի դրանից, միջշրջանային ուղղակի հեռախոսային կապերը պայմաններ ստեղծեցին շրջանցիկ ուղղություններ կազմակերպելու համար, որոնք օգտագործվում են հիմնական գծերը զբաղված կամ վնասված լինելու դեպքում, և դրանով նպաստում, որ հեռախոսային խոսակցությունները ժամանակին տեղի ունենան։

Ավելի հզոր ու կայուն, ինչպես նաև տնտեսապես շահավետ կապի համար վերջին տարիներին ներռեսպուբլիկական մի շարք հիմնական ուղղություններում կառուցվում են ստորերկրյա միջքաղաքային կաբելային մագիստրալներ։ Արդեն այդպիսի կապեր կան Երևան—Էջմիածին, Երևան—Արտաշատ և Երևան—Թբիլիսի հատվածներում՝ ճյուղավորվելով դեպի Կիրովական ու Լենինական։ KB—12, K—24 և K—60 տիպի բազմականալ բարձր հաճախականության ապարատուրաների հայրենական նորագույն սիստեմների խտացման շնորհիվ այդ ուղղություններում ստեղծվել են հեռախոսային կանալների հզոր փնջեր, որոնք հանդիսանում են միջքաղաքային հեռախոսային կապի ավտոմատացման հիմնական պայմաններից մեկը։

Յոթնամյակի անցած հինգ տարում հեռախոսային հաղորդակցությունները զգալիորեն բարելավվել են նաև մագիստրալային ուղղություններում։ Ստեղծվել են Երևանի լրացուցիչ միջքաղաքային կապեր Մոսկվայի, Թբիլիսիի, Բաքվի, Լենինգրադի, Ռոստովի և երկրի այլ քաղաքների հետ։

Միջքաղաքային հեռախոսային կապի զարգացման ժամանակակից մակարդակը հնարավորություն տվեց անցնելու նրա ավտոմատացմանը։ Ներկայումս ռեսպուբլիկայի գրեթե բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոնները Երևանի հետ կապվում են կիսաավտոմատ եղանակով, ըստ որում հեռախոսային միացումները կատարվում են անհամեմատ ավելի արագ՝ տեղի հեռախոսավարուհին ուղղակի հավաքում է աբոնենտի համարը, առանց Երևանի հեռախոսավարուհու մասնակցության։ Այդ եղանակով էլ Երևանը միացվում է Լենինականի, Կիրովականի, Գորիսի, Ղափանի և ռեսպուբլիկայի շատ այլ քաղաքների հետ։ Միացման կիսաավտոմատ եղանակը գործում է նաև Երևան—Մոսկվա, Երևան—Թբիլիսի մագիստրալային ուղղություններում, իսկ Մոսկվայի միջոցով մեր մայրաքաղաքը միանում է նաև Նովոսիբիրսկի, Կույբիշևի, Չելյաբինսկի, Լենինգրադի, Սվերդլովսկի, Գորկու, Կիևի և այլ քաղաքների հետ։

Կապի զարգացման պլանով նախատեսված է յոթնամյակի մնացած երկու տարում հզորացնել ներռեսպուբլիկական հեռախոսային կանալները,



ավելացնել կաբելային գծերի երկարությունը։ 1965 թվականին ռեալ պայմաններ կստեղծվեն ներռեսպուբլիկական ցանցի միջքաղաքային կապի լիակատար ավտոմատացման սիստեմին անցնելու համար։ Այդպիսի սիստեմն իրենից կներկայացնի մեծ թողունակություն ունեցող կապի կանալների լայն ճյուղավորված ցանց, որը հնարավորություն կստեղծի ուղղակի հավաքել տարբեր բնակավայրերի հեռախոսային աբոնենտների համարները՝ առանց միջքաղաքային հեռախոսային կայանների հեռախոսավարուհիների մասնակցության։ Իսկ խոսակցությունների արժեքի հաշվառումը կկատարեն միջքաղաքային հեռախոսային կայաններում տեղադրված հատուկ հաշվիչ սարքերը։

Իհարկե, անհնար է միաժամանակ ավտոմատացնել ամբողջ միջքաղաքային հեռախոսային ցանցը։ Ավտոմատացումն իրականացվելու է երկու էտապով, կապի կանալների ավելացմանը զուգընթաց։ Առաջին էտապում, մինչև 1967 թվականը, շատ ուղղություններում գոյություն ունեցող կաբելային կապերի հզորացման և նորերի կառուցման միջոցով ամբողջովին ավտոմատացվելու է Երևանի միջքաղաքային հեռախոսային կապը բոլոր քաղաքների ու շրջանային կենտրոնների հետ։ Հետագայում, մինչև 1970 թվականը, լիովին կավտոմատացվեն նաև ռեսպուբլիկայի քաղաքներից ու շրջաններից արտածվող կապերը, ներառյալ նաև ներշրջանային գյուղական հեռախոսային ցանցի կապը։ Այսպիսով Հայաստանում, առաջինը երկրում, ստեղծվելու է միջքաղաքային հեռախոսային կապի ավտոմատացված միասնական սիստեմ։

Անցյալում ռեսպուբլիկայում թույլ էր զարգացած նաև հեռագրական կապը։ Խիստ սահմանափակ էր հեռագրական հաղորդալարերի թիվը։ Այդ պատճառով Երևանը անմիջական կապեր չուներ բոլոր շրջանների հետ, որի հետևանքով հեռագրերը մշակվում և ուղարկվում էին ռեսպուբլիկայի տրանզիտային հեռագրատներում։ Հեռագրական ապարատուրայի պարկը բաղկացած էր Մորզեի ծանրաշարժ, ցածր արտադրողական ապարատներից։

Յոթնամյակի տարիներին Հայաստանի կապավորները մեծ աշխատանք կատարեցին հեռագրերի հաղորդման և ընդունման պրոցեսներն ավտոմատացնելու, հեռագրական տրանզիտը ուղղակի միացումների առավել պրոգրեսիվ և տնտեսապես ձեռնտու սիստեմով ավտոմատացնելու ուղղությամբ։ Յոթնամյակի առաջին իսկ տարիներին կազմակերպվեցին Երևանի ուղղակի կապեր ներռեսպուբլիկական բոլոր կետերի հետ։ Հինգ հիմնական ուղղություններում արմատավորվեց ТТЧМ—12/16 և НТЧМ—4 խտացման ապարատուրան, որի շնորհիվ ստեղծվեցին մեծ քանակությամբ հեռագրական կանալներ՝ գործողության կայուն, բարձր որակով։ Մորզեի և մյուս տարբեր սիստեմների հեռագրական ամբողջ ապարատուրան փոխարինվեց բարձր արտադրողական արագ գործող СТМ միատառ ապարատուրայի։ Վերակառուցվեցին աշխատատեղերը, ավտոպատասխանողներ ունեցող ավտոմատ ընդունման կցորդներով սարքավորված ապարատներ դրվեցին մագիստրալային ուղղություններում։

Այդ միջոցառումների շնորհիվ արդեն 1960 թվականի սկզբին Հայաստանի հեռագրական կապերում սկսվեց ուղղակի միացումների սիստեմի արմատավորումը։

Ռեսպուբլիկայի ամեն մի քաղաք կամ շրջանային կենտրոն այժմ ավտոմատ կերպով հեռագրական կապ է հաստատում Հայաստանի ցանկացած

վայրի հետ։ Ավտոմատացվել են նաև ռեսպուբլիկայի հեռագրական բոլոր կապերը Ռոստովի և Թբիլիսիի հետ, իսկ այս տարի կավտոմատացվի նաև Կրասնոդարի հետ։ Հեռագրական ուղղակի կապերի շնորհիվ երկու անգամ արագանում է հեռագրերի հաղորդման պրոցեսը և մեծ չափով բարձրանում հեռագրիչների աշխատանքի արտադրողականությունը։

Ռեսպուբլիկայում ստեղծվել է աբոնենտային հեռագրատների ցանց։ Այժմ ժողտնտխորհը, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները և շինարարական կազմակերպություններն անմիջական հեռագրական կապ են հաստատում երկրի բոլոր քաղաքների հետ։ Ներկայումս 32 կազմակերպություններ օգտվում են աբոնենտային հեռագրական ծառայություններից։

Ներռեսպուբլիկական հինգ և մագիստրալային երեք ուղղություններում (Մոսկվայի, Թբիլիսիի և Բաքվի հետ) այժմ գործում է լուսահեռագրական կապ։ Բայց, ցավոք սրտի, կապի այս հարմար ու ձեռնտու տեսակից մեր ռեսպուբլիկայում դեռ շատ քչերն են օգտվում։

Ժողովրդի բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման հետ հեռախոսը դարձավ սովետական մարդկանց կենցաղի անբաժանելի մասը։ Դրա հետ մեկտեղ անչափ աճել է քաղաքային հեռախոսային կապի դերը արտադրության մեջ։ Այդ աճած պահանջմունքները բավարարելու համար կառավարությունն ամեն տարի մեծ միջոցներ է հատկացնում քաղաքներում ավտոմատ հեռախոսային կայանների կառուցմանը։ Միայն Երևան քաղաքում յոթնամյակի տարիներին շարք են մտել 4 ավտոմատ հեռախոսային կայան՝ ԱՀԿ—4-ը Լենինյան շրջանում, ԱՀԿ—7-ը՝ 26 կոմիսարների անվան շրջանում, ԱՀԿ—9-ը՝ Շահումյանում և ԱՀԿ—5-ը՝ Օրջոնիկիձեի շրջանում, յուրաքանչյուրը 10 հազար համար նախագծային կարողությամբ։ Այժմ ռեսպուբլիկայի մայրաքաղաքի բոլոր կայանների մոնտաժված տարողությունը հասնում է 35 հազարի, այսինքն՝ 2,5 անգամ ավելի, քան 1958 թվականին։ Նոր հզոր ավտոմատ հեռախոսային կայաններ են կառուցվել Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում։ Ռեսպուբլիկայի բոլոր քաղաքներում և շրջանային կենտրոններում, բացի Մարալիկից, Ապարանից, Բասարգեչարից և Սիսիանից, գործում են տարբեր տարողությունների ավտոմատ հեռախոսային կայաններ։ Իսկ վերոհիշյալ չորս շրջկենտրոններում քաղաքային հեռախոսային կապը ավտոմատացվելու է 1964—65 թվականներին։

Չնայած աշխատանքների այսպիսի տեմպերին, առաջարկը շարունակում է ետ մնալ պահանջարկից։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի 100 բնակչին այժմ ընկնում է 3,1 հեռախոս։ Մեր խնդիրն է՝ ավելի արագացնել զարգացման տեմպերը և առավելագույն չափով բավարարել բնակչության և ժողովրդական տնտեսության պահանջմունքը քաղաքային հեռախոսային կապի բնագավառում։ Եթե քաղաքային հեռախոսային կայանների կարողությունների աճը առաջ հասնում էր տարեկան 8—10 հազար համարի, ապա միայն յոթնամյակի մնացած երկու տարում, նոր կայանների կառուցման և գործող կայանների ընդլայնման շնորհիվ ռեսպուբլիկայի ավտոմատ հեռախոսային կայանների տարողությունը կավելանա 35 հազար համարով։ Դրա շնորհիվ մայրաքաղաքի կայանների կարողությունները կհասցվեն մինչև նախագծայինի։ Այս տարի քաղաքի արդյունաբերական լենինյան շրջանում սկսվում է 10 հազար համարանոց նոր ավտոմատ հեռախոսային կայանի շինարարությունը, որն ունենալու է վեցանիշ թիվ «Г» տառային ինդեքսով։



Կապի զարգացման 1966—1970 թթ. հեռանկարային պլանով նախատեսված է Երևանում կառուցել նոր ավտոմատ հեռախոսային կայաններ և ընդլայնել գործողները։ Հեռանկարային ժամանակաշրջանի վերջերին քաղաքի բոլոր կայանների ընդհանուր մոնտաժված տարողությունը կհասնի 110 հազար համարի։

Առաջիկա տարիներին մեծ աշխատանք է կատարվելու նաև բոլոր քաղաքների և շրջանային կենտրոնների ավտոմատ հեռախոսային կայանների ընդլայնման ուղղությամբ։ Մինչև 1970 թվականը ռեսպուբլիկայի բոլոր ԱՀԿ-ների հզորությունը կհասնի 150 հազար համարի, որի շնորհիվ 100 բնակչին կընկնի 7 հեռախոս։

Զգալի չափով զարգացել է գյուղական հեռախոսային կապը։ Արդեն 1960 թվականին ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսությունները, սովխոզներն ու գյուղսովետները ապահովված էին հեռախոսով։ Աբոնենտային շղթաների բեռնաթափման միջոցով բնակավայրերի մեծ մասն այժմ ունի ինքնուրույն ելք դեպի միջշրջանային ցանցը։ Ավելացել է նաև միացնող գծերի թիվը գյուղական կոմուտատորների և շրջկենտրոնների կոմուտատորների միջև։ Այս միջոցառումները զգալի չափով արագացրին հեռախոսային միացումները ներշրջանային ցանցում։

Հինգ տարվա ընթացքում գյուղերում լրացուցիչ կերպով տեղադրվեցին ավելի քան 80 հեռախոսային կայան, որոնց շնորհիվ մոտ երկու անգամ ավելացել է գյուղական վայրերի աբոնենտների թիվը, հասնելով 8162-ի։ Առաջիկա երկու տարիներին գյուղական աբոնենտային ցանցը կավելանա ևս երեք հազար միավորով։

Երկրի գյուղատնտեսության հետագա վերելքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) և այս տարվա փետրվարյան պլենումների որոշումներից հետո նոր խնդիրներ ծառացան գյուղական վայրերում կապի միջոցների զարգացման բնագավառում։

Կոլտնտեսային և սովխոզային արտադրության շահերը պահանջում են լայնորեն արմատավորել ներարտադրական հեռախոսային կապը, որն առանձնապես անհրաժեշտ է ցանքի և բերքահավաքի ժամանակաշրջանում։ Այդ նպատակով միայն վերջին երկու տարում ռեսպուբլիկայի 34 կոլտնտեսություններում ու սովխոզներում մոնտաժված են ավելի կատարյալ կոորդինատային ու դեկադաքայլային սիստեմների ավտոմատ հեռախոսային կայաններ, որոնց մեխանիզմներն ավելի կայուն են, իսկ էլեկտրասնումն ավելի խնայողաբար։ Յոթնամյակի վերջերին այդպիսի կապ է կազմակերպվելու ռեսպուբլիկայի 50 կոլտնտեսություններում և սովխոզներում։ Բացի դրանից, խնդիր է դրված լրիվ ավտոմատացնել գյուղական հեռախոսային կապը։ Մոտակա երկու տարում Հոկտեմբերյանի, Արտաշատի, Էջմիածնի և այլ շրջաններում ձեռքով օգտագործվող МБ և ЦБ սիստեմների բոլոր կայանները փոխարինվելու են ավտոմատներով։ Հետագայում, մինչև 1970 թվականը ավտոմատացվելու են նաև ռեսպուբլիկայի մնացած բոլոր գյուղական հեռախոսային կայանները։

Շատ բան է արված կոլտնտեսությունների և սովխոզների հետ տերիտորիալ արտադրական վարչությունների ուղղակի կապն ապահովելու համար։ Վերակառուցվել և տեղադրվել է 1995 կիլոմետր հաղորդալար, որի շնորհիվ

շրջանների գյուղերի մեծ մասն անմիջական կապ է պահպանում արտադրական վարչությունների հետ։

Վերջին տարիներին խիստ զարգացել են ռադիոկապը, ռադիոհաղորդումների և հեռուստատեսության միջոցները։ Ռադիոն և հեռուստացույցը աշխատավորների գաղափարական դաստիարակման, գիտական, տեխնիկական, տընտեսագիտական և այլ գիտելիքների պրոպագանդման հզոր լծակներն են։

Կառուցվելու են հեռուստատեսային ռետրանսլյացիոն կայաններ, որոնց օգնությամբ Սևանի ավազանի և Շիրակի հովտի մի շարք շրջանների բնակիչներ հնարավորություն ստացան ընդունելու Երևանի հեռուստատեսային կենտրոնի հաղորդումները։

Արդեն մի քանի տարի է, ինչ կառուցվում է Երևան-Թբիլիսի ռադիոռելեյին գիծը։ Այս տարվա հուլիս ամսից շահագործման են հանձնվելու հզոր ռետրանսլյացիոն հեռուստատեսային կայանները Սեմյոնովկայի և Պուշկինի լեռնանցքներում, որոնք զգալի չափով կընդարձակեն Երևանի հեռուստատեսության կենտրոնի գործողության շառավիղը, որի հաղորդումները կհասնեն ռեսպուբլիկայի հյուսիսային շրջանների և Սևանի ավազանի բոլոր բնակիչների հեռուստացույցների էկրաններին։ Դրա հետ մեկտեղ կապահովվի բարձրորակ ռադիոհաղորդումը գերկարճալիքներով։ Իսկ տարվա վերջին, ռադիոռելեյին գծի գործարկմամբ, կսկսվի հեռուստատեսային ծրագրերի փոխանակումը Թբիլիսիի և Բաքվի հետ՝ ժամանակավոր վարիանտով, իսկ հետագայում նաև Մոսկվայի և երկրի այլ քաղաքների հետ։ Նախատեսվում է կառուցել Երևան—Ղափան ռադիոռելեային գիծ և հեռուստատեսային ռետրանսլյատորներ. այդ հնարավորություն կտա Զանգեզուրի հեռավոր շրջանների բնակչությանը օգտվելու հեռուստացույցից։

Մագիստրալային ռադիոկապի որակը բարելավելու և կենտրոնական հաղորդումները ռետրանսլյացիայի ենթարկելու համար կառուցվել և շահագործման է հանձնվել ընդունիչ ռադիոկենտրոն, որը հագեցած է նորագույն ապարատուրայով։ Ավարտվել է նաև PB—21 ռադիոկայանի վերակառուցման և հզորացման աշխատանքների առաջին հերթը։ Դրանով ընթացիկ տարվա վերջին անհամեմատ կբարելավվի ռադիոլսողությունը ռեսպուբլիկայի տերիտորիայում և կմեծանա ռադիոկայանի գործողության շառավիղը։ Ավարտման են մոտենում հզոր կարճալիք հաղորդիչ կայանի մոնտաժի աշխատանքները, որը թույլ կտա ավելի ընդլայնելու հաղորդիչ կայանի գործողության գոտին։ Անցյալ տարվա վերջերին Երևանի ռադիոտրանսլյացիոն ցանցում տեղադրվեց նորագույն ապարատուրա, որի շնորհիվ մի գծով հնարավոր է 3 ծրագրային հաղորդում տալ։ Ներկայումս եռակի ծրագրային հաղորդումներից կարող են օգտվել քաղաքի միայն կենտրոնական մասի ռադիոլսողները։ Մինչև այս տարվա վերջը այդ հնարավորությունը կստանան քաղաքի բոլոր ռադիոլսողները։

Յոթնամյակի տարիներին ռադիոֆիկացվել են 95 գյուղ։ Ներկայումս հաղորդալարային ռադիոֆիկացման են ենթարկված 809 բնակավայր։ Մեր խընդիրն է՝ մոտակա մի քանի տարում լրիվին ավարտել ամբողջ ռեսպուբլիկայի ռադիոֆիկացումը։

Կապի ամենից ավելի մասսայական տեսակն է փոստը, որն ընդգրկելով բոլոր բնակավայրերը, կատարում է քաղաքական և կուլտուր-լուսավորական խիստ կարևոր գործ։ Այս բնագավառում մեր խնդիրը եղել և մնում է թերթե-



րի, հանդեսների, նամակների և փոստային մյուս առաքումների մշակման և դրանք բնակչությանը հասցնելու գործի արագացումը, փոստային ձեռնարկությունների ցանցի ընդլայնումը և դրանց ծառայությունները բնակչությանը մոտեցնելը։

Յոթնամյակի անցած տարիներին բացված է կապի ավելի քան 100 նոր բաժանմունք։ Մինչև 1965 թվականի վերջը կազմակերպվելու են ևս 50 բաժանմունք։ Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 415 փոստային ձեռնարկություն, այդ թվում 275-ը՝ գյուղական վայրերում։ Համեմատվող ժամանակաշրջանում 3,3 անգամ աճել է ավիափոստային փոխադրումների ծավալը։ Ներռեսպուբլիկական փոստային ուղիների ավելի քան 95 տոկոսը սպասարկվում է ավտոմեքենաներով։ Կոլտնտեսային մոտ 500 փոստատարներ փոխարինված են գերատեսչայիններով։ Այս միջոցառումների շնորհիվ 875 բնակավայրեր (կամ բոլոր բնակավայրերի 85 տոկոսը) ռեսպուբլիկական թերթերն ստանում են դրանց լույս տեսնելու օրը, իսկ կենտրոնական «Պրավդա» և «Իզվեստիա» թերթերը նույն օրը հանձնվում են Երևանի, Կիրովականի, Լենինականի, Ստեփանավանի և Ալավերդու բաժանորդներին։

Ռեսպուբլիկայի փոստի աշխատողներն օրական մշակում և բնակչությանն են առաքում ավելի քան 100 հազար նամակ, փաթեթ, ծանրոց, 450 հազար օրինակ թերթ ու ամսագիր։

Շատ բան է արվել փոստատարների աշխատանքը հեշտացնելու նպատակով։ Երևանում, Կիրովականում և Լենինականում կազմակերպված է քաղաքային ծառայողական փոստ, որը հատուկ ավտոմեքենաներով առաքումներն ու մամուլը առաքում է խոշոր ձեռնարկություններին և հիմնարկություններին։ Բազմահարկ տների մուտքերում տեղադրված է ավելի քան 3,5 հազար աբոնենտային արկղ՝ 25 հազար բնակարանի համար։

Նամակների, պարբերական հրատարակությունների, դրամական փոխադրումների և այլ առաքումների ծավալի աճը նորանոր խնդիրներ են դնում կապի աշխատողների առաջ։ Դրանցից գլխավորներն են՝ արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը կապի ձեռնարկություններում։ Երևան քաղաքում կառուցվում է մերձերկաթուղային տեսակավորման փոստամտի նոր շենք՝ փոստային առաքումների մշակման բոլոր պրոցեսների և մյուս աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմամբ։ Ավարտվում է Երևանի փոստամտի նոր, 17 հարկանի շենքի նախագիծը, որի շինարարությունը նախատեսվում է սկսել եկող տարի, Կոնդի սարալանջին. այստեղ կոմպլեքսային մեքենայացման են ենթարկվելու արտադրական բոլոր պրոցեսները։ Մոտակա տարիներին շահագործման կհանձնվեն կապի շրջանային հանգույցների նոր շենքեր էջմիածնում, Բասարգեչարում, Ստեփանավանում, Անիում, Գորիսում, Հոկտեմբերյանում, Ապարանում, Սիսիանում, ինչպես նաև փոստի փոխադրման բաժանմունքներ՝ Լենինականում և Կիրովականում։

«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության», պարտիայի այս ծրագրային ցուցումը լավ են հասկանում կապավորները։ Նրանք աշխատում են կապի բոլոր միջոցներով անթերի սպասարկել ժողովրդական տնտեսությանն ու բնակչությանը։



# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՍԱՐՔԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՈՒՄՆ ՈՒ ԿՈՈՊԵՐԱՑՈՒՄԸ

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում վճռական դեր ունի մեքենաշինությունը։ Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագրում նշված է. «Ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման համար առաջնակարգ նշանակություն ունի մեքենաշինության զարգացումը, ավտոմատ գծերի ու մեքենաների, ավտոմատիկայի, հեռուստամեխանիկայի և էլեկտրոնիկայի միջոցների, ճշգրիտ սարքերի արտադրության ըստ ամենայնի արագացումը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 491—492)։

Հատկապես ներկա էտապում, երբ պարտիան իր առջև նպատակ է դրել արագ թափով զարգացնել երկրի քիմիական արդյունաբերությունը և ինտենսիվացնել գյուղատնտեսությունը, մեքենաշինությունը կոչված է քիմիական արդյունաբերության ձեռնարկություններն ապահովելու նոր ապարատուրայով, ավտոմատ սարքերով, էլեկտրոնային միջոցներով, իսկ գյուղատնտեսությունը՝ ժամանակակից, բարձր արտադրողականություն ունեցող մեքենաներով, մեխանիզմներով ու սարքավորումներով։

Այս յոթնամյակում մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերությունը ինչպես ողջ Սովետական Միությունում, այնպես էլ Անդրկովկասյան ռեսպուբլիկաներում շատ արագ է զարգանում։ Ադրբեջանական ՍՍՌ-ում մեքենաշինության տեսակարար կշիռը ամբողջ արդյունաբերության մեջ, 1958 թվականի համեմատությամբ, յոթնամյակում կմեծանա 11 տոկոսով։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության համախառն արտադրանքը հետագա ժամանակաշրջանում կավելանա 46 անգամ, այսինքն՝ 1960 թվականի 33,5 միլիոնի փոխարեն կկազմի 1540 միլիոն ռուբլի[1]։

Արդյունաբերության մյուս ճյուղերի հետ միասին շատ արագ կզարգանա Հայկական ՍՍՌ-ի մեքենաշինությունը, որի տեսակարար կշիռը ամբողջ արդյունաբերության մեջ, 1958 թվականի 23 տոկոսի փոխարեն, 1965 թվականին կկազմի 24,3 տոկոս։

---

1 Տվյալները վերցված են Ադրբեջանական ՍՍՌ ժողտնտխորհի մեքենաշինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության վարչություններից։



Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսված է խիստ արագացնել Վրացական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը, հատկապես մեքենաշինությունն ու սարքաշինությունը։ Այսպիսի աճ կարելի է ապահովել միայն արտադրության կազմակերպման ձևերը բարելավելու և, մասնավորապես, մասնագիտացումն ու կոոպերացումը զարգացնելու դեպքում։

Մեքենաշինության առաջընթացը սերտորեն կապված է գործիքաշինության զարգացման մակարդակի հետ։ Մեքենաների թողարկման ծավալը պետք է ապահովի անցումը դետալների մշակման ու մեքենաների հավաքման առավել արտադրողական մեթոդների։ Առանց ճշգրիտ ու բարձր արտադրողական ունիվերսալ տեխնոլոգիական սարքավորումների մեքենաշինությունը չի կարող զարգանալ։ Դրա համար էլ խիստ մեծանում է տեխնոլոգիական սարքավորումների նորմավորման նշանակությունը։ Նորմավորումը պետք է իջեցնի արտադրանքի ինքնարժեքը և կրճատի արտադրության նախապատրաստման ժամկետները, որը մեծ նշանակություն ունի մեքենաշինության ճյուղերի և ամբողջ արդյունաբերության համար։

Արտադրական պրոցեսների տեխնոլոգիական հագեցման այժմյան եղանակներն ունեն երկու հիմնական թերություն. մեծ է հատուկ սարքավորման նախապատրաստման տևողությունը (նախագծում-պատրաստում-արմատավորում) և համեմատաբար բարձր է նրա ինքնարժեքը։ Այս թերությունների վերացման առավել ճիշտ ուղին կոմպլեկտների և հարմարանքների հանգույցների դետալների խոր նորմավորումն ու ստանդարտացումն է, դրանց կենտրոնացված արտադրության կազմակերպումը։ Մեքենաշինական ձեռնարկությունները սիստեմատիկաբար արմատավորում են մեքենաների և հաստոցների նորանոր նորմալներ ու դետալներ, կատարելագործում իրենց գործարանային տեխնիկական պայմանները, դրանով իսկ ապահովելով բարձրորակ արտադրանքի թողարկումը։ Այս բնագավառում հիմնական թերությունը դեռևս այն է, որ դրանք բավարար չափով չեն արմատավորվում մասսայական ու մեծաքանակ արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության մեջ և ժամանակին չեն վերանայվում։

Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում (1962 թ.) «ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը» զեկուցումում արդարացիորեն քննադատեց գիտահետազոտական ու նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններին, որոնք մեքենաների ստեղծման ու տեխնոլոգիական պրոցեսների մշակման բնագավառում աշխատում են զուգահեռաբար, ընդսմին նրանցից յուրաքանչյուրն ստեղծում է իր սեփական կոնստրուկցիաներն ու տեխնոլոգիան։

Կոնստրուկտորական ուժերի այդպիսի ցրվածությունը, զուգահեռությունը գիտահետազոտական հիմնարկների, կոնստրուկտորական բյուրոների աշխատանքում հանգեցրել է այն բանին, որ մեքենաների, սարքավորումների ստեղծման գործում չկա հանգույցների ու դետալների տիպայնացում և ունիֆիկացում, որով և խախտվում են արտադրության մասնագիտացման հիմնական պայմանները, արգելակվում է մասնագիտացումը լայն մասշտաբներով։

Ունիֆիկացումը վերացնում է շինվածքների տեսակների ու կոնստրուկցիաների, դետալների ու նախաշինվածքների ձևերի ու չափերի, մետաղի

տեսակների չհիմնավորված բազմազանությունը: Կոնստրուկտիվ բազմատեսակության կրճատման հաշվին գործարանների մշակման ու հավաքման արտադրամասերում արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման նոր հնարավորություններ են ստեղծվում: Դրա շնորհիվ զգալիորեն բարելավվում են արտադրության տնտեսական ցուցանիշները՝ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, իջնում արտադրանքի ինքնարժեքը, կրճատվում է արտադրական ցիկլի տևողությունը, պայմաններ են ստեղծվում աշխատամասերի և ամբողջ գործարանների ռիթմիկ աշխատանքի համար:

Արտադրությունը կենտրոնացնելու և մասնագիտացնելու փոխարեն մեզ մոտ շարունակ մեծանում է ունիվերսալ ձեռնարկությունների թիվը: Ինչպես նշված է Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, գործիքների և տեխնոլոգիական սարքավորանքի պատրաստմամբ զբաղված են մոտ 400 հազար բանվոր և օգտագործվում են ավելի քան 200 հազար մետաղահատ հաստոց՝ ամբողջ գործող պարկի գրեթե 10 տոկոսը: Ընդ որում մասնագիտացված գործիքաշինական արդյունաբերության մեջ զբաղված են միայն 50 հազար բանվոր և 17 հազար հաստոցներ: Գործիքաշինական մյուս արտադրությունն իրենից ներկայացնում է ցաքուցրիվ և սակավ արդյունավետ տնտեսություն: Դրա հետևանքով ամեն տարի պետությունը կորցնում է մոտ 300 միլիոն ռուբլի, այսինքն, ավելի, քան 2,5 անգամ շատ, քան բոլոր մասնագիտացված գործարանների հիմնական ֆոնդերի արժեքը [1]:

Անհրաժեշտ է պարբերաբար վերանայել ստանդարտները, հները փոխարինել նորերով՝ հենվելով գիտության ժամանակակից նվաճումների ու նոր տեխնիկայի, ինչպես և երկրի առաջավոր ձեռնարկությունների փորձի վրա: Այդ կօգնի որոշելու արդյունաբերության յուրաքանչյուր ճյուղի էկոնոմիկայի ու տեխնիկայի զարգացման հետագա ուղին, կրճատելու հասարակական աշխատանքի ծախսումները:

Մեքենաշինական շատ ձեռնարկություններում տեխնոլոգիական սարքավորանքը պատրաստվում է ոչ մեծ քանակությամբ, գործիքաշինական արտադրամասերում, ունիվերսալ սարքավորումներով, որի հետևանքով դրանց արտադրության աշխատատարությունը մի քանի անգամ բարձր է, քան մասնագիտացված գործիքաշինական գործարաններում:

Ժամանակակից մեքենաշինության համար անհրաժեշտ են ճշգրիտ հարմարանքներ, անթերի արտադրական տեխնոլոգիա, որը կապահովի բարձր արտադրողականություն և նվազագույն ինքնարժեք:

Ինչպիսի՞ն է այժմ տեխնոլոգիական սարքավորանքի արտադրության զարգացման վիճակը Անդրկովկասի տնտեսական շրջանի մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության մեջ. որո՞նք են առաջիկա տարիների նրա հեռանկարները:

Անդրկովկասի տնտեսական շրջանի գործարանների այժմյան գործիքաշինական արտադրամասերն իրենց զինվածությամբ, տեխնիկական կուլտուրայով և խնդիրների բարդությամբ կարելի է բաժանել 3 խմբի:

1. Արտադրամասեր, որոնք ունեն ունիվերսալ սարքավորումներ, հաղ-

1 Տես Ն. Ս. Խրուշչով «ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը», էջ 46—47:



վագյուտ կոորդինատա-ներտաշիչ, պարուրահղկիչ և պատճենահան ֆրեզող հաստոցներ, լավ սարքավորված չափիչ լաբորատորիաներ. այդ արտադրամասերում պատրաստվում են հատուկ հարմարանքներ, դրոշմոցներ, շատ բարդ ու ճշգրիտ գործիքներ: Այդպիսիք են՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտոմասերի, ճշգրիտ էլեկտրասարքերի, ժամացույցի, Բաքվի էլեկտրամեքենաշինական, Լ. Շմիդտի անվան մեքենաշինական, Քիշլիի մեքենաշինական, Ս. Մ. Կիրովի անվան մեքենաշինական, Բաքվի և Կիրովաբադի սարքաշինական, Թբիլիսիի, Ս. Մ. Կիրովի անվան հաստոցաշինական, սարքաշինական, էլեկտրաքարշաշինական, Քութայիսիի ավտոմոբիլային գործարանների արտադրամասերը և այլն:

2. Բազմատեսակ սարքավորումներ ունեցող արտադրամասեր, որոնք նախատեսված են բավարարելու ավելի ցածր պահանջներ ունեցող գործարաններին, և աչքի են ընկնում սակավաքանակ արտադրությամբ: Այս խմբին են պատկանում Բաքվի Պ. Մոնտինի անվան, «Бакинский рабочий», Վ. Ի. Լենինի անվան մեքենաշինական գործարանները, Լենինականի Ստրոմմաշինա, դարբնոցամամլակային սարքավորումների, ամբարձիչ տրանսպորտային սարքավորումների, Թբիլիսիի շոգեքարշ-վագոնանորոգման, գյուղատնտեսական մեքենաշինության, Բաթումիի նավթաշինական գործարանները և այլն:

3. Գործիքներ նորոգող ու սրող սակավազոր արտադրամասեր, որոնց տեխնիկական հնարավորությունները սահմանափակ են: Այս խմբի մեջ են մտնում Թբիլիսիի գազային ապարատների, Ռուսթավիի մեխանիկական, Փոթիի հիդրոմեխանիզմների «էլեկտրազոդում», Երևանի մեխանիկական, լուսատեխնիկական առարկաների, կաբելի, Սպիտակի «կոնդիցիոներ», Բաքվի գազային ապարատների, Վոլոդարսկու անվան մեխանիկական, ավտոնորոգման, Բինագադու խողովականորոգման գործարանների և այլ ձեռնարկությունների աշխատամասերը:

Անդրկովկասի տնտեսական շրջանի մեքենաշինության, էլեկտրատեխնիկական, սարքաշինական և ռադիոտեխնիկական արդյունաբերության գործարանների գործիքաշինական արտադրամասերի միայն 19 տոկոսն է մտնում առաջին խմբի մեջ, դրանք էլ լիովին չեն բավարարում իրենց ձեռնարկությունների պահանջները:

Մեքենաշինական ձեռնարկություններում գործիքաշինության պլանավորման այժմյան սիստեմը առաջին հերթին ելնում է ո՛չ թե գործիքաշինական արտադրամասերի սարքավորումների ու մարդկանց առավելագույն բեռնվածությունն ապահովելու անհրաժեշտությունից, այլ այն բանից, որ այս կամ այն պատվերը կոմպլեքս սարքավորմամբ ապահովվի որոշակի ժամկետում: Հիմնական արտադրությունը կոմպլեկտավորված տեխնոլոգիական սարքավորմամբ ապահովելու այժմյան սիստեմի գործիքաշինական արտադրամասերի սարքավորումներն ու կադրերը խիստ անհամաչափ են ծանրաբեռնվում: Մի պատվերի կոմպլեկտավորված կատարումը լրիվ ծանրաբեռնում է խառատային հաստոցները, բայց չի ապահովում շաղափիչ հաստոցների բեռնվածությունը, իսկ կլորահղկիչ հաստոցների խումբն առհասարակ ի վիճակի չի լինում մինչև սահմանված ընդհանուր ժամկետը մշակել

տվյալ պատվերի կատարման համար անհրաժեշտ բոլոր դետալները՝ նույնիսկ եթե աշխատեցվում է 3 հերթ:

Մյուս կողմից, Երևանի հաստոցաշինական, կոմպրեսորների, էլեկտրատեխնիկական, էլեկտրամեքենաշինական և այլ գործարանների գործիքաշինական արտադրամասերում տեխնոլոգիական սարքավորման կոմպլեկտների կոնստրուկտիվ-տեխնոլոգիական միատեսակության բացակայության հետևանքով խիստ անբավարար են օգտագործվում սարքավորումները ինչպես ժամանակի, այնպես էլ կարողության տեսակետից, հերթափոխության գործակիցը կազմում է 1—1,2, բեռնվածության գործակիցը՝ 0,5—0,6:

Գրեթե նույն դրությունն է Ադրբեջանի և Վրաստանի ժողտնտխորհների ձեռնարկություններում: Այստեղ հերթափոխայնության միջին գործակիցը կազմում է 1,24 և 1,2, իսկ բեռնվածության գործակիցը՝ 0,55 և 0,58: Մեր կողմից ուսումնասիրված տնտեսական շրջանի գործարանների մեծ մասում գործիքագործ կոնստրուկտորները չունեն սարքավորման նորմալների գծագրերի ալբոմներ, հատուկ սարքավորումների նախագծման տիպային լուծումներ: Այդ է պատճառը, որ նրանք ստիպված են լինում կազմել այս կամ այն հատուկ սարքավորման նախագիծը: Նախագծվող հատուկ սարքավորումները չունեն կատարելագործված կոնստրուկցիա, ցածր է դրանց արտադրողականությունը: Նոր սարքավորանքի առաջին նախագծերը բազմիցս վերամշակվում, ճշտվում են:

Տեխնոլոգիական սարքավորման պատրաստման այդպիսի ապակենտրոնացված մեթոդը լուրջ արգելք է արդյունաբերության այդ ճյուղերի հետագա տեխնիկական առաջադիմության ճանապարհին: Հարկավոր է նշել, որ չնայած Անդրկովկասի մեքենաշինության, էլեկտրատեխնիկական, սարքաշինական արդյունաբերության բուռն զարգացմանը և, առհասարակ, այդ ճյուղերում ընդհանուր տեխնիկական առաջադիմությանը, գործարանների գործիքաշինության մակարդակը (եթե չհաշվենք հաստոցներով դրանց աննշան համալրումը) վերջին տարիներս քիչ է փոխվել: Ձեռնարկությունների հիմնական տեխնոլոգիական արտադրամասերը, որպես կանոն, լավ հագեցվում, լայնորեն մեքենայացվում և ավտոմատացվում են, իսկ գործիքաշինական արտադրամասերում գերակշռում են ձեռքի ցածր արտադրողական աշխատանքը, մշակման հետամնաց մեթոդները և աշխատանքի թույլ դիֆերենցումը:

Գործարանների գործիքաշինական տնտեսությունը գտնվում է օժանդակ արտադրության վիճակում, և միայն այդ «օժանդակ» բառը ետին պլանն է մղում գործիքաշինական արտադրամասերի տեխնիկական հագեցվածության հարցով լրջորեն զբաղվելու խնդիրը: Այդ վիճակը արգելակում է հիմնական արտադրության մեջ նոր շինվածքների արմատավորումը: Հաճախ գործիքաշինական արտադրամասերն ի վիճակի չեն լինում ապահովելու յուրացվող արտադրանքի թողարկման համար անհրաժեշտ տեխնոլոգիական սարքավորման արտադրությունը, որի հետևանքով ձգձգվում են արտադրության մեջ դրանց արմատավորման ժամկետները: Այդ ժամկետները կրճատելու և յոթնամյա պլանով նախատեսված տեմպերն ապահովելու համար հարկավոր է լուծել ձեռնարկությունների գործիքաշինական ամբողջ տնտեսության խոր վերակառուցման հարցը: Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի գործիքաշինություն, որը համաքայլ ընթանար արդյունաբերության զարգացման



արագ տեմպերի հետ: Գործիքաշինության զարգացման միակ ճիշտ ուղին առավելագույն մասնագիտացումն է, որը այն կհասցնի հիմնական արտադրության մակարդակին:

Արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման մեջ մեծ տեսակարար կշիռ ունի տեխնոլոգիական սարքավորումը: Անդրկովկասի մետաղամշակման ու մեքենաշինական գործարաններում հատուկ հարմարանքների նախագծումն ու պատրաստումը գրավում են արտադրության նախապատրաստման վրա ծախսվող ժամանակի մոտ 60 տոկոսը: Ուստի, արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման սիստեմն արմատապես վերակառուցելու համար անհրաժեշտ է կիրառել այնպիսի հարմարանքներ, որոնք կարելի լինի պատրաստել ամենակարճ ժամկետում, հասարակական աշխատանքի ու նյութերի նվազագույն ծախսումներով: Ինչպես ցույց է տվել փորձը, այս պահանջին առավել լրիվ կերպով համապատասխանում է ունիվերսալ, հավաքովի հարմարանքների սիստեմը:

Այդ սիստեմը մեքենաշինության և մետաղամշակման մեջ փորձնական, անհատական, մանր սերիաներով, սերիական և այլ բնույթի արտադրության արագ ու տեխնոլոգիական նախապատրաստման հիմքն է: Ունիվերսալ-հավաքովի հարմարանքների արմատավորմամբ իջնում է արտադրանքի ինքնարժեքը, արտադրության տեխնոլոգիայի մեջ մուծվում են բազմաթիվ նորություններ, բարձրանում է ձեռքի աշխատանքների մեքենայացման աստիճանը և վերանում գծանշման ոչ ճիշտ, կոպիտ պրոցեսը, որը շատ ժամանակ է խլում: Հատուկ հարմարանքներ ունիվերսալ-հավաքովի հարմարանքներով փոխարինելու դեպքում տնտեսվում է թանկարժեք մետաղի և գործիքաշինական արտադրամասերի բանվորների աշխատանքի զգալի մասը, խիստ կրճատվում են նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները, որը թույլ է տալիս կրճատել արտադրության տեխնոլոգիական նախապատրաստման ժամկետները: Ունիվերսալ-հավաքովի հարմարանքների կիրառումը թույլ կտա ազատել զգալի արտադրական տարածություններ, գործիքաշինական արտադրամասերում ներկայումս զբաղված մետաղահատ հաստոցներ և աշխատուժ, բարելավել մեքենաշինության ու մետաղամշակման ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները:

Ահավասիկ մի ակնառու օրինակ: Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում մեկ դետալի՝ 1Բ61Ա հաստոցի ներքին սահուղու մեխանիկական մշակման աշխատատարությունն ըստ տեխնոլոգիայի կազմում է 1,24 նորմա-ժամ: Այդ դետալն անցնում է տեխնոլոգիական երեք գործողությամբ և մշակվում երեք տարբեր հարմարանքներով՝ ֆրեզերային, խառատային և շաղափիչ: Ընդ որում ֆրեզերային և խառատային հարմարանքները համարվում են միջին բարդության, իսկ շաղափիչը՝ պարզ:

Այդ հարմարանքների պատրաստման աշխատատարությունը (ինչպես և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները) կազմել է 499 նորմա-ժամ: 1Բ61Ա հաստոցի ներքին սահուղու մշակման համար ունիվերսալ-հավաքովի երեք հարմարանքների հավաքման աշխատատարությունը (այդ թվում հավաքումը, տեղափոխումը, կարգավորումը, քանդումը) կկազմի ընդամենը 11,34 նորմա-ժամ: Արտադրությունն ունիվերսալ-հավաքովի հարմարանքների օգնությամբ նախապատրաստելու դեպքում կխնայվի 487,66 նորմա-ժամ ժամանակ, որի ընթացքում կարելի կլինի մշակել 393 դետալ:

Հատուկ հարմարանքների պատրաստումն անցել է երկար ճանապարհ, սկսած նախագծման հայտագրի ներկայացումից և վերջացրած դրա օգտագործման վայրով, ընդ որում այդ հարմարանքների ստեղծմանը մասնակցել են տարբեր մասնագիտության մոտ 22—25 մարդ։ Իսկ ունիվերսալ հավաքովի երեք հարմարանքների հավաքման ուղին՝ տեխնոլոգից սկսած և աշխատանքի վայրով վերջացրած, շատ կարճ է, դրա ստեղծմանը մասնակցել են միայն 3—4 մարդ։

Ունիվերսալ-հավաքովի հարմարանքների սիստեմը մինչև 1958 թվականը լայնորեն չէր կիրառվում և օգտագործվում էր միայն առանձին գործարաններում։ Դրա սահմանափակ կիրառումը բացատրվում է նրանով, որ մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկությունների մեծ մասը չունեին արտադրական անհրաժեշտ հմտություն և ունիվերսալ-հավաքովի հարմարանքների ստեղծման հնարավորություն։

Նախկինում, երբ միևնույն տնտեսական շրջանում գտնվող ձեռնարկությունները ենթարկվում էին տարբեր գերատեսչությունների, հնարավոր չէր տնտեսական շրջանի ձեռնարկություններում ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալների կոմպլեկտի կոոպերացված պատրաստումը։ Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, ինչպես նաև խոշորացված տնտեսական շրջաններում կոորդինացման խորհուրդների կազմակերպումը պայմաններ ստեղծեցին գործարանների լայն կոոպերացման միջոցով ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալների արտադրության համար։ Դրա շնորհիվ մեքենաշինության մեջ աճել են ունիվերսալ-հավաքովի հարմարանքների արմատավորման և դրանց սիստեմատիկ կատարելագործման տեմպերը։

Չնայած դրան, ունիվերսալ-հավաքովի հարմարանքների արտադրությունն Անդրկովկասի տնտեսական շրջանի մեքենաշինական և մետաղամշակման մեջ մինչև այժմ արմատավորված չէ։

Յուրաքանչյուր ձեռնարկության համար սեփական ուժերով ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալների կոմպլեկտի պատրաստումը կապված է տեխնոլոգիական բնույթի զգալի դժվարությունների, մեծ կապիտալ ծախսերի հետ և պահանջում է ունենալ որակյալ կադրերով ապահովված ու տեխնիկապես զինված գործիքաշինական արտադրամաս, որը կկարողանա կարճ ժամկետներում մեծ ծավալի աշխատանքներ կատարել։

Ինչպես ցույց է տվել Լենինգրադի և Մոսկվայի մի շարք գործարանների աշխատանքի պրակտիկան, գործարաններ, որոնք հարկադրված են եղել սեփական ուժերով պատրաստել ունիվերսալ-հավաքովի հարմարանքների գերճշգրիտ դետալներ, արտադրության նախապատրաստման նոր սիստեմի արմատավորումը մեծ լարվածություն է պահանջել և շատ դանդաղ է կատարվել, քանի որ գործիքաշինական արտադրամասերը, որպես կանոն, գերբեռնված են եղել իրենց ձեռնարկությունների ընթացիկ և փորձնական արտադրության հագեցման հետ կապված աշխատանքներով։ Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ գործարանների գործիքաշինական ցեխերում առանց արտադրության համապատասխան նախապատրաստման արտադրված ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալների արժեքը շատ բարձր է եղել, իսկ որակը անհրաժեշտ մակարդակի վրա չի գտնվել։ Ինչ վերաբերում է այդ դետալները դրսից հայթայթելուն, ապա այդ հնարավորությունները շատ սահմանափակ են ե-



ղել, որովհետև հավաքովի հարմարանքների տարրերի կենտրոնացված մասնագիտացված արտադրություն չի եղել, իսկ իրենց կարիքների համար դետալներ պատրաստող գործարաններն այդ դետալները դիտել են որպես խիստ դեֆիցիտային արտադրանք և միայն իրենց ավելցուկներն են տվել ուրիշ ձեռնարկություններին։

Ոչնչով չարդարացված կապիտալ ծախսումները, մետաղի ավելորդ ծախսերը խիստ կրճատելու, ինչպես նաև ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալների պատրաստման աշխատատարությունը նվազեցնելու համար անհրաժեշտ է կազմակերպել դրանց թողարկումը հալվող մոդելներով, ճշգրիտ ձուլման մեթոդով, որը 6—7 անգամ կկրճատի դետալների կոմպլեկտի արժեքը և մի քանի անգամ կարագացնի դրանց թողարկումը։

Անդրկովկասի տնտեսական շրջանի մեքենաշինության, էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության մեջ ունիվերսալ-հավաքովի հարմարանքները հաջողությամբ արմատավորելու համար գտնում ենք, որ նպատակահարմար է օգտագործել Երևանի գործիքաշինական գործարանը, որոշ չափով վերակառուցելով այն։ Վերակառուցման անհրաժեշտությունը բխում է նրանից, որ այդ կապիտալ ներդրումների օգտագործման ավելի արդյունավետ ձև է, քան նոր շինարարությունը։ Վերակառուցումը պետք է նպատակ ունենա ստեղծել հալվող մոդելներով ճշգրիտ ձուլվածքի մեքենայացված խոշոր արտադրամաս՝ տարեկան 1200—1500 տոննա պողպատի ձուլվածքի արտադրողականությամբ, ինչպես նաև պետք է աննշան չափով ընդլայնվեն տեխնոլոգիական արտադրամասերը։ Ձուլման արտադրամասի այդպիսի արտադրողականություն է առաջարկվում այն հաշվով, որ գործարանը, ունիվերսալ հարմարանքների դետալներ թողարկելուց բացի կարողանա յուրացնել նորմալացված գործիքների արտադրությունը խոշոր սերիաներով, հաշվի առնելով, որ այդ գործիքների շատ մեծ պահանջ կա երկրում և, մասնավորապես՝ Անդրկովկասում։ Բացի դրանից, Երևանի գործիքաշինական գործարանն ի վիճակի կլինի Հայաստանի տնտեսական շրջանի մեքենաշինական, էլեկտրատեխնիկական, սարքաշինական գործարանները և այլ ձեռնարկություններ ապահովել ձուլված դետալներով, որոնց աշխատատարությունը սովորական պայմաններում բավականին բարձր է։

Տնտեսական տեսակետից հատկապես կարևոր են կազմակերպական այնպիսի եղանակներ, որոնք ապահովում են ո՛չ միայն արտադրության նախապատրաստման ցիկլի տևողության կրճատում, այլև նրա աշխատատարության նվազեցում, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում, նյութական արժեքների խնայողություն, արտադրանքի որակի բարելավում, արտադրության հագեցման կապիտալ ծախսերի կրճատում։



# ՕՐՎԱ հարցեր

## ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԱԶԴԱԿԸ

Գյուղատնտեսության քիմիացումը ռևոլյուցիա է հողագործության և անասնապահության մեջ: Այն լայն ուղի է բացում բուսաբուծության ու անասնաբուծության արագ զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար: Օգտվելով քիմիայի ընձեռած արդյունավետությունից, ինչպես նաև ռացիոնալ օգտագործելով ջրային ռեսուրսներն ու մեքենաները, հնարավոր կլինի ակտիվ ներգործել բնության վրա և կլիմայական բոլոր պայմաններում ապահովել բարձր բերք: Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումը, քննարկելով երկրի գյուղատնտեսության ինտենսիֆիկացման հարցը, նրա գլխավոր ուղիներից մեկը համարեց գյուղատնտեսության քիմիացումը:

Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության տնտեսություններն զբաղվում են այգեգործությամբ, անասնաբուծությամբ, բամբակագործությամբ, մշակում են հացահատիկային, բոստանա-բանջարանոցային և կերային կուլտուրաներ: Շատ տնտեսություններ և բազմաթիվ բրիգադներ արդեն փորձով համոզվել են, որ քիմիական պարարտացումը մեծ չափով նպաստում է բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացմանը:

Ագրոտեխնիկական կանոնների կիրառման և ցանքատարածությունների ու այգիների պարարտացման շնորհիվ վերջին երեք տարում մեր արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացել են խաղող՝ 83, բամբակի հումք՝ 26—27, բանջարեղեն՝ 200—212 ցենտներ: Զգալիորեն բարձրացել է նաև հացահատիկային ու բոստանային կուլտուրաների բերքատվությունը: Առանձին տնտեսություններում, ուր ցանքերի պարարտացումն և գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների ու վնասատուների դեմ մղվող պայքարը լավ է կազմակերպված, ավելի բարձր արդյունքի են հասել: Այսպես, Այգեզարդի կոլտնտեսությունում 1961—62 թթ. բամբակի բերքատվությունը հեկտարից կազմել է 42—43,7 ցենտներ: Քաղցրաշենի, Խալիսայի, Այգեպատի, Վ. Արտաշատի և բազմաթիվ այլ կոլտնտեսություններում ամեն մի հեկտարից ստացել են 165—219 ցենտներ խաղող: Մասիսի, Վ. Արտաշատի, Շահումյանի, Ն. Դվինի, Մեծ Վեդու կոլտնտեսություններում կայունացել է բանջարեղենի բերքատվությունը և ամեն տարի յուրաքանչյուր հեկտարից ստանում են 370—411 ցենտներ բերք:

Փորձը ցույց է տալիս, որ հանքային պարարտանյութերի ճիշտ օգտագործումը պայմանավորված է կոլտնտեսությունների ու սովխոզների հողերի ագրոքիմիական հատկությունների ճիշտ որոշումից: Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության կոլտնտեսությունների և սովխոզների հողերն ըստ տիպերի հիմնականում բազմազան են: Դա բացատրվում է ամենից առաջ տեղի ռելիեֆով: Ինչպես Արտաշատի, նույնպես և Վեդու ենթաշրջանների կենտրոնական մասի տնտեսությունների հողերն առավելապես



կուլտուր-ոռոգելի են: Ըստ որում հյուսիս-արևելյան խմբում հողերը հիմնականում ավազա-կավային են, իսկ հարավ-արևելյան խմբում՝ ծանր կավային, որոնք ունեն անկայուն ստրուկտուրա: Չնայած նրան, որ այդ հողերը հումուսով հարուստ չեն, այնուամենայնիվ բավականաչափ բերրի են, որովհետև եղած հումուսը իր մեջ պարունակում է որոշակի քանակությամբ ֆոսֆորի ու կալիումի պաշար:

Այնուհանդերձ, փորձը ցույց է տալիս, որ Արտաշատի արտադրական վարչության գրեթե բոլոր հողային տիպերը չունեն գյուղատնտեսական բույսերի համար անհրաժեշտ մատչելի ազոտի, ֆոսֆորի ու կալիումի պաշարներ: Թերևս դա է պատճառը, որ գյուղատնտեսական կուլտուրաներից բարձր բերքի ապահովման համար ամեն տարի վեգետացիայի ընթացքում անհրաժեշտ է լինում այգիները և ցանքատարածությունները պարարտացնել մեծ քանակությամբ հանքային պարարտանյութերով, հողում արհեստականորեն ավելացնելով ազոտի, ֆոսֆորի ու կալիումի քանակությունը:

Ընդհանրապես անկայուն ստրուկտուրա ունենալու պատճառով այդ հողերն ունեն ավելի քիչ խոնավություն. եղած ջուրը արագ գոլորշիանում է և բույսերը վեգետացիայի ընթացքում չեն ապահովվում բավարար քանակությամբ ջրով: Ահա թե ինչու նման հողային պայմաններում բարձր ու կայուն բերքի ապահովումը մեծ չափով պայմանավորված է ոռոգման ճիշտ կազմակերպումից:

Արտադրական վարչության կոլտնտեսություններում և սովխոզներում գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու կայուն բերք ապահովելու համար հանքային պարարտանյութերի օգտագործումը դարձել է կենսական անհրաժեշտություն: Հաշվի առնելով մշակվող կուլտուրայի բիոլոգիական առանձնահատկությունները և հողային ու կլիմայական պայմանների յուրահատկությունը, կոլտնտեսություններում շարահերկ կուլտուրաների ցանքատարածություններին հանքային պարարտանյութեր են տալիս ակոսային եղանակով, իսկ ցրտահերկի, հացահատիկի ու խոտաբույսերի տարածություններում շաղ տալու ձևով: Խաղողի և պտղատու այգիներում պարարտացումը կատարվում է ակոսային ու բնային եղանակով:

Վեգետացիայի ընթացքում գյուղատնտեսական կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարին տրվում են պարարտանյութեր հետևյալ չափով.

| Կուլտուրայի անվանումը | Ազոտական | | Ֆոսֆորական | | Կալիումական | |
|---|---|---|---|---|---|---|
| | ֆիզիկական փոշի կգ. | ազդող նյութերի հաշվով | ֆիզիկական փոշի կգ. | ազդող նյութերի հաշվով | ֆիզիկական փոշի կգ. | ազդող նյութերի հաշվով |
| Բամբակ | 350 400 | 120—140 | 600 - 650 | 100 120 | — | |
| Եգիպտացորեն | 300 350 | 100 120 | 500 600 | 90 - 110 | — | — |
| Բանջարեղեն | 350—400 | 120 140 | 550 600 | 100 120 | — | — |
| Հացահատիկ | 200 250 | 75— 90 | 250 - 300 | 45— 50 | — | — |
| Խաղող | 300 350 | 100—120 | 350 - 400 | 60— 75 | 10 | 44—45 |

Պարարտացման համար ազոտական պարարտանյութերից օգտագործվում են բացառապես ամոնիակային սելիտրան, ֆոսֆորական պարարտանյութերից՝ սուպերֆոսֆատը և կալիումական պարարտանյութերից՝ 30—40 տոկոսանոց կալիումական աղը:

Խորապես ուսումնասիրելով կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեությունը, կրկին ու կրկին մենք համոզվում ենք, որ արտադրական վարչության տնտեսություններում հողագործության կուլտուրայի բարձրացման, քիմիական ու օրգանական պարարտանյութերի, ինչպես նաև թունաքիմիկատների ու հերբիցիդների արդյունավետ օգտագործման դեպքում հնարավոր է խոշոր չափով ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Այսպես, օրինակ, արտադրական վարչության Քաղցրաշենի և Նորա-

շենի կոլտնտեսությունները գտնվում են հողային ու կլիմայական միանման պայմաններում։ Քաղցրաշենում ամեն տարի այգիները (հեկտարի հաշվով) պարարտացվում են 350—400 կգ. ազոտական և 450—500 կգ. ֆոսֆորական պարարտանյութերով։ Պարարտացման արդյունավետ սիստեմ կիրառելու և այգիների մշակությունը ագրոտեխնիկական կանոններով կատարելու շնորհիվ վերջին երեք տարում քաղցրաշենցիները ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացել են 187 ցենտներ խաղող։ Դրան հակառակ՝ Նորաշենի կոլտնտեսությունում անուշադրության են մատնել այգիների պարարտացումն ու մշակությունը, որի հետևանքով յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են 86 ցենտներ բերք։

Պարարտանյութերի ազդեցությունն ակնհայտ է նաև բանջարեղենի բերքատվության վրա։ Մասիսի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսությունում տարիներ շարունակ ստացվում էր բանջարանոցային կուլտուրաների ցածր բերք։ Սակայն պարարտացման գործը բարելավելու շնորհիվ վերջին տարիներս բանջարեղենի բերքը գրեթե կրկնապատկվել է ու ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացվում է 400—450 ցենտներ բանջարեղեն։

Առաջավոր շատ տնտեսություններում պարարտացման որոշակի պայմաններում ամեն տարի հեկտարից ստանում են 38—43 ցենտներ բամբակի (Այգեզարդ, Մեծ Վեդի, Վ. Արտաշատ), 165—220 ցենտներ խաղողի (Քաղցրաշեն, Խալիսա, Այգեպատ), 550—600 ցենտներ բանջարաբոստանային կուլտուրաների (Մասիս, Շահումյան, Արևշատ և այլն) բերք։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ մեր արտադրական վարչությունում 20—22 հազար տոննա ազոտական-ֆոսֆորական պարարտանյութերի օգտագործումը հնարավորություն կտա եղած խաղողի այգիների բերքը առաջիկա տարիներին ավելացնելու 40—50 տոկոսով։ Դա միաժամանակ հնարավորություն կտա բանջարեղենի ցանքի ներկա տարածության բերքը բարձրացնել կրկնակի չափով, իսկ հացահատիկային ու կերային կուլտուրաների բերքատվությունը՝ 30—40 տոկոսով։

Հաշվի առնելով, որ քիմիական պարարտանյութերը վճռական դեր են կատարում բերքատվության բարձրացման գործում, այս տարի Արտաշատի արտադրական վարչության տնտեսություններն անցյալ տարվա համեմատությամբ 7000 տոննայով ավելացրել են դրանց ներմուծումը։

Քիմիական պարարտանյութերն առավել արդյունք կտան, երբ օգտագործվեն հողերի ագրոքիմիական քարտագրերին համապատասխան։ Արտադրական վարչությունը Հողագործության և ագրոքիմիայի ինստիտուտի հետ համատեղ ձեռնարկել է հողերի ագրոքիմիական քարտագրերի կազմմանը, որը կավարտվի այս տարվա վերջին։ Դա գյուղատնտեսին հնարավորություն կտա այսուհետև ճիշտ և էֆեկտիվ օգտագործելու քիմիական պարարտանյութերը։

Որպես քաղաքամերձ տնտեսություններ, մեր արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում վերջին տարիներս առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում բանջարաբուծության զարգացմանը։ Պլանավորված է 1964 թվականին պետությանը վաճառել 19 հազար, իսկ 1965 թվականին՝ 23.200 տոննա բանջարեղեն. դրան համապատասխան բանջարեղենի արտադրությունը 1965 թվականին հասցվելու է 32.000 տոննայի, որը 1961 թ. համեմատությամբ 3 անգամ ավելի է։ Այս առաջադրանքը կատարելու համար գործնական քայլեր են կատարվում արտադրության մեջ արմատավորելու գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, առաջին հերթին պարարտացնելով ցանքատարածությունները և կոմպլեքսային մեքենայացման ենթարկելով բանջարա-բոստանային կուլտուրաների մշակությունը։

Ինչ չափով են պարարտացումն ու մեքենայացումը նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և բերքատվության ավելացմանը, այդ է ցույց տալիս հետևյալ օրինակը։ Մինչև վերջերս Մեծ Վեդու կոլտնտեսությունում բանջարեղենի մշակությունը կատարվում էր հին, ձեռքի ծանր աշխատանք պահանջող մարգային սիստեմով։ Վերջին երկու տարում կոլտնտեսությունում արմատավորվեց բանջարեղենի տնկման ու մշակման



ակոսային եղանակը, որը հնարավորություն տվեց ամբողջապես մեքենայացնելու մշակության աշխատատար պրոցեսները։ Դրա և հանքային պարարտանյութերի ճիշտ կիրառման շնորհիվ, 1961 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացած 72,3 ցենտների դիմաց, 1962 թվականին ստացվեց 350, իսկ 1963 թվականի ծայրահեղ անբարենպաստ բնական պայմաններում՝ 280 ցենտներ բանջարեղեն, որի մեկ ցենտների ինքնարժեքը 7 ռ. 60 կոպեկից իջավ 4 ռ. 40 կոպեկի։

Կամ վերցնենք Ն. Դվինի կոլտնտեսության օրինակը։ Այստեղ բանջարեղենի մշակության հետ մեքենայացվել է նաև բերքի փոխադրումը, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է մոտ 8 անգամ։

Մեր օրերում քիմիան լավագույն միջոց է ո՛չ միայն բերքատվությունը բարձրացնելու, այլև վնասատուների, հիվանդությունների և մոլախոտերի դեմ արդյունավետ պայքար մղելու։

Այս տարվա կլիմայական պայմանները նպաստավոր են գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների ու վնասատուների զարգացման համար։ Արտադրական վարչության և պարտիական կոմիտեի պահանջով, ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը կազմակերպել է պայքարի ջոկատ, որը կոլտնտեսությունների և սովխոզների մասնագետների հետ պետք է կազմակերպի պայքարի գործը։ Արդեն բերվել և կուտակվել են անհրաժեշտ քանակությամբ թունաքիմիկատներ (պղնձարջասպ, ծծումբ, ԴԴՏ, հեքսաքլոր և այլն)։ Այդ ամենը խելամիտ օգտագործելու դեպքում հնարավոր կլինի ընթացիկ տարում բերքը պաշտպանել վնասատուներից և հիվանդություններից։

Պարտիայի Կենտկոմի փետրվարյան պլենումը պահանջեց գյուղատնտեսական ֆրոնտի աշխատողներից՝ առաջիկա մեկ-երկու տարվա ընթացքում բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների մշակության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, հասնել այն բանին, որպեսզի հողերը պարարտացվեն մեքենաներով։ Այդ ուղղությամբ մեզ մոտ որոշակի գործ է կատարված։ Մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակվող դաշտային կուլտուրաների սնուցման և հիվանդությունների ու վնասատուների դեմ պայքարի աշխատանքները հիմնականում մեքենայացվել են։ Սակայն կատարվածը դեռևս անբավարար է։ Դրա համար էլ այժմ լուրջ աշխատանքներ են տարվում բոստանա-բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունների պարարտացման ու վնասատուների դեմ պայքարի գործը նույնպես մեքենայացնելու ուղղությամբ։

Այլ է վիճակը այգեգործության բնագավառում։ Այստեղ բացի հենասյուների վրա բարձրացված այգիներից, մնացած բոլոր տարածություններում ինչպես պարարտացումը, նույնպես և վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարը դեռևս տարվում է ձեռքով, որը պահանջում է ֆիզիկական ծանր ու լարված աշխատանք։ Խաղողագործության մեջ մեքենայացման աստիճանը բարձրացնելու նպատակով նախատեսվում է առաջիկա 10 տարում վերակառուցել այգեգործության մշակության ներկա սիստեմը։ 3500 հեկտար այգիներ բարձրացնել հենասյուների վրա, որով հնարավոր կլինի մեքենայացնել ինչպես մշակությունը, նույնպես և պարարտացման ու վնասատուների դեմ տարվող պայքարը։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումը նշեց, որ «Գյուղատնտեսության մեջ քիմիան արմատավորելու համար անհրաժեշտ է ամենից առաջ կազմակերպել այնպիսի կադրերի պատրաստումը, որոնք լավ իմանան ագրոքիմիան, ընդունակ լինեն կազմակերպելու հանքային պարարտանյութերի, հերբիցիդների, թունաքիմիկատների արդյունավետ օգտագործումը և դրանց կիրառման մեքենայացումը»։ Փորձը ցույց է տվել, որ քիմիական պարարտացումը և գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարն ավելի մեծ արդյունք են տալիս այն դեպքում, երբ պարարտանյութերը պահպանվում են խնամքով և օգտագործվում ձեռնահաս կադրերի կողմից։ Որպեսզի մարդիկ կարողանան արդյունավետ օգտա-

գործել քիմիական պարարտանյութերը, թունաքիմիկատները և հերբիցիդները, անհրաժեշտ է, որ նրանք զինվեն ագրոքիմիական անհրաժեշտ գիտելիքներով, հաղորդակից լինեն այդ բնագավառում կուտակված առաջավոր փորձին։ Այդ նպատակով Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի օգնությամբ մեզ մոտ արդեն ստեղծվել է ագրոքիմիայի հիմունքներն ուսումնասիրող երկամյա համալսարան, որտեղ ընդգրկվել են տնտեսությունների ղեկավարներ, մասնագետներ, պարտիական կոմիտեի ու արտադրական վարչության աշխատողներ։ Գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը արտադրությունում արմատավորելու նպատակով վարչության մասնագետների ղեկավարությամբ գործում է «առաջավորների փորձի արմատավորման» միամյա դպրոց։ Այդպիսի դպրոցներ ու ագրոխմբակներ են ստեղծվել գրեթե բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում, որոնք իրենց առջև նպատակ են դրել գյուղի աշխատավորության շրջանում լայնորեն պրոպագանդել նորը, առաջավորը, հարստացնել կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների գիտելիքները և դրանով իսկ նպաստել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։

Հանքային պարարտանյութերի ու թունաքիմիկատների պահպանումն ու օգտագործումը բավարար հիմքերի վրա դնելու նպատակով նախատեսված է այս տարի բոլոր տնտեսություններում և «Հայգյուղտնտտեխնիկայի» Արտաշատի և Վեդու բաժանմունքներում կառուցել համապատասխան տարողությամբ պահեստներ։ Արտաշատի բաժանմունքում սկսվել է երկաթուղու կառուցումը, որը հնարավորություն կտա առանց կորուստների և ավելորդ ծախսումների ստացված պարարտանյութերն ու թունաքիմիկատները արագ պահեստավորելու։

Քիմիան վճռական դեր կկատարի նաև աղուտ հողերը յուրացնելու գործում։ Իսկ այդպիսի հողատարածություններն ընդարձակ են մեր արտադրական վարչության տերիտորիայում։ Եթե մինչև վերջերս աղուտ հողերը բերրի դարձնելու համար հիմնականում կիրառվում էր լվացման մեթոդը, ապա այսուհետև այդ նպատակի համար կօգտագործվեն գլխավորապես զանազան քիմիական նյութեր, որոնց շնորհիվ հնարավոր կլինի օգտագործել նորանոր հողային տարածություններ. դրանք կհանդիսանան գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու հուսալի ռեզերվ։

Մեծ են մեր արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների հնարավորությունները, առկա են բոլոր օբյեկտիվ պայմանները՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը մեծ չափով բարձրացնելու և անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Արտադրական վարչության տնտեսությունների բոլոր աշխատողները կգործադրեն իրենց ջանքերը՝ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումներն իրագործելու, երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։

Յ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային
արտադրական վարչության պետ

## ԱՌԱՏ ԵՎ ԲԱՐՁՐՈՐԱԿ ՍՆՆԴԱՄԹԵՐՔՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի ու ՍՍՌՄ Մինիստրների սովետի իրականացրած միջոցառումների շնորհիվ վերջին տարիներս նշանակալից հաջողություններ ձեռք բերվեցին երկրի գյուղատնտեսության, այդ թվում և մսեղենի ու կաթնեղենի արտադրության զարգացման բնագավառում։

Բավական է նշել, որ միայն մեր ռեսպուբլիկայում վերջին տասը տարում մսի արտադրությունը ավելացել է 49 տոկոսով, կաթինը՝ 1,8 անգամ։



Անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը զուգընթաց ավելի շատ մթերքներ են հանձնվել ու վաճառվել պետությանը։

Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության հումքի առկայությունը հնարավորություն տվեց յոթնամյակի անցած հինգ տարում զարգացնել արդյունաբերական այդ ճյուղը։ Ռեսպուբլիկայի մսի ու կաթի մշակող ձեռնարկությունները 1963 թվականին արտադրանքի պլանը կատարեցին 106,7 տոկոսով, պլանից ավելի տալով 3169 հազար ռուբլու արտադրանք։

Վերջին տարիներին զգալիորեն բարելավվել է թողարկվող մթերքների որակը։ Այս հաջողություններն առաջին հերթին ձեռք են բերվել արտադրական միջոցների ավելացման, կարողությունների մեքենայացման և տեխնոլոգիական նոր, առաջավոր մեթոդների ներդրման շնորհիվ։ Մթերքների փաթեթավորման և վաճառահանման նոր, ավելի կուլտուրական ձևերը գրեթե ամենուր դուրս են մղել բիդոններով կաթ կամ կաթնամթերք վաճառահանելու, արտադրանքը պրիմիտիվ ձևով սպառողին մատուցելու ձևը։ Այժմ արտադրվող մթերքների մեծ մասը թողարկվում է շշերով և ապակյա ու թղթյա այլ հարմարավետ տարաներով։ Բարձրացել է մթերքները պահեստավորելու և փոխադրելու կուլտուրան։ Մեքենայացվել են արտադրության խոշոր պանրապահեստներն ու սառցարանները։ Ձեռքի աշխատանքը հետզհետե դուրս է մղվում արտադրության պրոցեսներից։ Անհամեմատ բարձրացել են արտադրության կադրերի կուլտուրան, ինժեներա-տեխնիկական անձնակազմի մասնագիտական ունակությունները։

Մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության այսպիսի առաջընթացը խոշոր կապիտալ ներդրումների, բազմաթիվ արդյունաբերական օբյեկտների կառուցման և ընդարձակման արդյունք է։

Անցած հինգ տարում կառուցվել և շահագործման են հանձնվել Երևանում մսի կոմբինատի մսաճարպային և երշիկի ցեխերը, կաթի կոմբինատում ավելի հզոր սարքավորումների տեղադրման միջոցով երկու անգամ ավելացել է կոմբինատի արտադրական հզորությունը։ Յուղսառցարանում կառուցվել և շահագործման է հանձնվել երկուհարկանի պահեստային շենքը՝ 1000 տոննա աղաջրային պանիր պահելու համար։ Լենինականի մսի պահածոների կոմբինատում սառնարաններն ընդարձակվել են 2000, Կիրովականի մսի կոմբինատում՝ 700 տոննա տարողությամբ։ Կառուցված և շահագործման են հանձնված պանրագործարաններ՝ Ղափանում, Գորիսում, Շամշադինում, Մեղրիում և այլ շրջաններում, կաթի գործարաններ՝ Ալավերդում, Էջմիածնում ու Վեդիում։ 1964 թվականի առաջին կիսամյակում շահագործման հանձնվեցին Ազիզբեկովի պանրագործարանը և Հրազդանի կաթի գործարանը։ Նոր սարքավորումներ տեղադրելու շնորհիվ կրկնապատկվել են մսի և պանրի գործարանների կարողությունները։ ՀՍՍՌ ժողտնտխորհի՝ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության վարչության սիստեմի ձեռնարկությունները այժմ մեկ հերթափոխում թողարկում են տարբեր տեսակի պանիրներ՝ 18, կաթ՝ 124, միս՝ 224, երշիկեղեն՝ 20 տոննա և այլն։

Ռեսպուբլիկայի կաթնամթերքների արդյունաբերության տեխնիկական կատարելագործման, որակի բարձրացման և արտադրանքի նոր տեսակներ ստեղծելու ուղղությամբ զգալի գործ է արել նաև վարչության կենտրոնական լաբորատորիան։

Երևանի մսի կոմբինատի համար մշակվել և տեղադրվելու է եփված երշիկի արտադրության անընդմեջ գործող մեքենայական գիծ, որի շնորհիվ մեքենայացվելու է երշիկի բոլոր տեսակների արտադրությունը։ Ավարտված են Ամասիայի և Ջայքենդի, Ստեփանավանի և Լենինականի պանրագործարանների սառնարանային սարքավորումների գծագրային և հաշվառքային աշխատանքները։ Պանրագործարանների գրեթե մեծ մասում պանիրների պահպանման համար ստեղծվում են ավելի նպաստավոր պայմաններ։

Աշխատանքի պայմանները և արտադրության որակը բարելավելու նպատակով կազմված են 21 պանրագործարանների օդափոխության, սանիտարական և տերիտորիալ բարեկարգումների նախագծեր։

1963 թվականին Լենինականի և Կիրովականի մսի կոմբինատներում արմատավորվեց կարբոնատների կիրառմամբ եփված երշիկներ արտադրելու առաջավոր մեթոդը, որը դեռևս 1961 թվականից հաջողությամբ կիրառվում է Երևանի մսի կոմբինատում։ Եփած երշիկներ արտադրելիս կարբոնատների օգտագործումը կրճատում է տեխնոլոգիական պրոցեսների ցիկլը, միսը աղդրած պահելու ժամանակը (սովորական ձևով 24—72 ժամ), որը հնարավորություն է ընձեռում ստեղծելու արտադրական անընդմեջ հոսք և բարձրացնելու արտադրանքի ելքը։

Ապրանքային կաթի բաղադրության և տեխնոլոգիական առանձնահատկությունների ուսումնասիրության հիման վրա ռեսպուբլիկայի կաթնարդյունաբերության մեջ առաջին անգամ մշակվեցին և հաստատվեցին հումքի ծախսման, պահպանման և տեղափոխման ժամանակ արտադրանքի պակասորդների նորմաները. Ճշտված են պանիրների ստանդարտային յուղայնության աղյուսակները։ Աղաջրային պանիրների նորմատիվները կարգավորված են ըստ սեզոնների և արտադրության վիճակի։ Հասունության և պահպանման ժամանակ չանախ պանրի քաշին վերահսկելու նպատակով մշակված են նոր նորմատիվներ։ Լաբորատորիայի մասնագետների օգնությամբ Սպիտակի պանրագործարանում ներդրված է «Սովետական» պանրի արտադրության ամփոփ տեխնոլոգիա, որն ապահովում է այդ տեսակի պանիրների լայն արտադրությունը և բարելավում որակը։

Կաթնեղենի ու մսեղենի արդյունաբերության տեխնոլոգիայի վերաբերյալ մի շարք մեթոդներ ճանաչում են գտել ռեսպուբլիկայի սահմաններից դուրս, ցուցադրվել են Սովետական Միության ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում և արժանացել խրախուսանքի։

Կենտրոնական լաբորատորիան արդյունաբերության սիստեմի կարևոր օղակներից մեկն է և իր գործունեությամբ նշանակալից ավանդ է մուծում ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության տեխնիկական զարգացման գործում. Հաշվի առնելով մեր արդյունաբերության խոշոր խնդիրները, պետք է աշխատենք ավելի նպատակասլաց ու ռացիոնալ կերպով օգտագործել տեխնիկական այդ կենտրոնը։

Անդրադառնալով ռեսպուբլիկայի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության որոշ հաջողություններին, չենք կարող չնշել այն թերությունները, որոնք խանգարում են բնակչությանը ժամանակին և բարձր որակով մսեղեն ու կաթնեղեն մատակարարելուն։ Դեռևս կան ձեռնարկություններ, ուր բացակայում է պահանջվող պատասխանատվությունը որակի բարձրացման նկատմամբ, մի շարք ղեկավարների և տեխնիկական անձնակազմի անպատասխանատվության հետևանքով երբեմն կողք-կողքի գտնվող ձեռնարկություններից մեկում թողարկվում է լավագույն արտադրանք, իսկ մյուսում՝ խոտան։ Դրա պատճառն այն է, որ բացակայում է աշխատանքային կուլտուրան, լրիվ և ռացիոնալ չեն օգտագործվում սարքավորումները։ Շատ դեպքերում անգործության են մատնվում ժամանակակից մեքենաները, գերակշռում է ձեռքի աշխատանքը։ Այսպես է վիճակը Անիի, Ղափանի, Իջևանի, Մեղրիի, Ամասիայի և Կալինինոյի պանրագործարաններում և Երևանի կաթի կոմբինատում։ Մինչդեռ Արթիկի, Եղեգնաձորի, Մարտունու, Կամոյի պանրի գործարանները և Լենինականի ու Կիրովականի կաթի գործարանները, որոնք ավելի պակաս են հագեցած տեխնիկական միջոցներով, քան վերը նշված գործարանները, տալիս են բարձրորակ արտադրանք։

Արտադրանքի որակի բարձրացման գծով որոշ առաջընթաց կա նաև մսի արդյունաբերության բնագավառում։ Մեքենայացման և արտադրական տեխնիկայի կատարելագործման շնորհիվ արտադրանքը ավելացնելու հետ մեկտեղ, զգալի չափով ավելացել են նաև թողարկվող մթերքների տեսակները։

Սակայն մսի արդյունաբերությունը դեռևս ետ է մնում բնակչության ժամանակակից պահանջներից։ Դրա գլխավոր պատճառներից մեկը մսի արդյունաբերության խիստ սեզոնայնությունն է։ Տարվա որոշ ամիսներին, երբ արտադրությունը ծանրաբեռնված չէ և գրեթե պարապուրդ է տալիս, ձեռնարկությունները կրճատում են զգալի քանակությամբ որակյալ բանվորների, սեզոնի ժամանակ նոր, արտադրությանն անտեղյակ մարդկանց ընդունում, որն, անշուշտ, բացասաբար է ազդում արտադրության որակի վրա։ Բացի այդ, մսի կոմբինատներում դեռևս անբավարար ուշադրություն է նվիրվում ինդոկրին գեղձի ու տեխնիկական հումքերի հավաքմանը, պահպանմանն ու օգտագործմանը։



Գործող կոմբինատներից և ոչ մեկում կտրուկ միջոցներ ձեռք չեն առել սննդային բարձր հատկություններով օժտված ենթամսամթերքները մշակելու և սպառողին հասցնելու ուղղությամբ։ Մինչդեռ ենթամսամթերքներից կարելի է պատրաստել բազմազան կիսաֆաբրիկատներ, պահածոներ ու խորտիկներ, որոնք զգալի չափով կավելացնեն սննդի ռեսուրսները։ Ակներև է, որ մենք դեռևս անբավարար ենք օգտագործում եղած միջոցներն ու հնարավորությունները ժողովրդին անհրաժեշտ մթերքներով ապահովելու ուղղությամբ։

Գալիք հնգամյակում՝ 1966—1970 թվականներին ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ միասին զարգացման լայն հեռանկարներ են բացվում նաև ռեսպուբլիկայի մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության առաջ։ Անասնապահությունից ստացվող հումքի աննախընթաց աճը, որը պայմանավորված է քիմիական արդյունաբերության, մասնավորապես պարարտանյութերի արտադրության զարգացման ու ոռոգման սիստեմի ընդարձակման համաժողովրդական գործով, նոր պահանջներ է ներկայացնում մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերությանը։ Անհրաժեշտ է ամենուր ժամանակին ընդունել, պահպանել և անկորուստ մշակել հումքը. լրիվ, անխափան և ռացիոնալ օգտագործել եղած բոլոր սարքավորումները, տեղադրել նորերը. մշակել ու ներդնել տեխնոլոգիական նոր, ավելի առաջավոր մեթոդներ, մշտապես ավելացնել մթերքների նոր տեսակները, բարեփոխել այդ մթերքների փաթեթավորումն ու փոխադրումը, բարելավել արտադրվող մթերքների որակը, բարձրացնել կադրերի մասնագիտական որակը, արտադրական-տեխնիկական պատասխանատու աշխատանքներում առաջ քաշել նոր, երիտասարդ կադրեր։

Առաջիկա հնգամյակի յուրաքանչյուր տարում մսի արտադրությունն ավելանալու է հազարական տոննայով։ Այսպիսով, 1970 թվականին արտադրվելու է միս (սպանդանոցային քաշով)՝ առաջին կարգի ենթամսամթերքների հետ միասին 24,1 հազար, երշիկեղեն՝ 8 հազար տոննա, մսի պահածոներ՝ 4 հազար պայմանական տուփ։ 1965 թվականի համեմատությամբ 1970 թվականին մսի արտադրությունը կավելանա 4600 տոննայով։ Հնգամյա պլանի համաձայն երշիկեղենի արտադրությունն ավելանալու է 2000 տոննայով։ Տնային տնտեսուհիների գործը հեշտացնելու համար նախատեսված է հնգամյակում մեծ չափով ավելացնել փաթեթավորված մսի, կիսաֆաբրիկատների, բիֆշտեքսի, անտրիկոտի, քյուֆթայի, խորովածի, քյաբաբի, ջրալի ճաշատեսակների՝ բորշչի, բոզբաշի, մսի հավաքածու բաժինների արտադրությունը։ Ավելանալու է նաև մի շարք մսամթերքների ազգային տեսակների (բաստուրմա, սուջուխ, ղավուրմա) արտադրությունը։ Հիշված մթերքների գերակշռող մասը վաճառահանվելու է ճաշակով փաթեթավորված, ստվարաթղթե տուփերով, կամ այլ մանրաբաժին տարաներով։

Հնգամյակում զգալի չափով զարգանալու է նաև կաթնեղենի արդյունաբերությունը։ 1970 թվականին արտադրվելու է կենդանական յուղ 2570, պանիրներ՝ 11600, այդ թվում՝ խոշոր պանիրներ՝ 1400, բրինզա՝ 2200, կաթնամթերքներ (վերածված կաթի)՝ 70000 տոննա։

Ավելի քան երկու անգամ ավելանալու է խոշոր և եվրոպական պանիրների արտադրությունը, որոնք հիմնականում արտահանվում են։ Բրինզա պանրի թողարկումը հնգամյակում ավելանալու է մոտ 900 տոննայով։ Մեծ ուշադրություն է հատկացվում պանրի ազգային տեսակների արտադրությանը։ Նախատեսվում է մեծ չափերով թողարկել «դարալագյազի»՝ համեմունքներով հագեցած հայտնի պանիրը, որը պատրաստվելու է կավե կճուճներում և տկերի մեջ։ Արմատավորվելու է նաև վրացական «սուլուգունի» պանրատե-

սակի արտադրությունը։

Ինչպես մսի, այնպես էլ կաթնարդյունաբերության բնագավառում լուրջ ուշադրություն է նվիրվելու կաթնամթերքների ասորտիմենտի լայնացմանը, նրանց որակի բարձրացմանն ու փաթեթավորմանը։ Տեխնիկա-տնտեսական բարձր հիմքերի վրա է դրվելու հատկապես թարմ կաթնամթերքների արտադրությունը։ Մեծ չափերի են հասնելու շշերով և թղթե պնակներով կաթի, մանրաբաժին տարաներում սերի, թթվասերի, լոռի, լոռապանրիկի, ինչպես նաև դիետ մթերքների՝ կեֆիրի, ացիդոֆիլինի թողարկումը։ Արտադրվելու են պաղպաղակի և պանրիկների բազմազան տեսակներ։ Վաճառվելու է նաև հայկական թան։

Պարտիայի Կենտկոմի փետրվարյան պլենումը գիտության և քիմիական արդյունաբերության աշխատողներից պահանջեց անասունների և թռչունների կերի որակական բաղադրությունը բարելավելու նպատակով ստեղծել և լայն կերպով արմատավորել կարբամիդի, սինթետիկ սպիտակուցների, ամինաթթուների և այլ նյութերի արտադրությունը։ Այս բնագավառում մեծ է կաթնեղենի և մսեղենի արդյունաբերության ձեռնարկությունների մնացուկների դերը։

Ռեսպուբլիկայում մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությունը կարող է կուտակել զգալի քանակությամբ արտադրական մնացորդներ. այսպես՝ մեկ տոննա պանրի արտադրության պրոցեսում ստացվում է մոտ 7 տոննա շիճուկ. մոտավոր հաշիվներով 1964 թվականին ռեսպուբլիկայի պանրագործարաններում կստացվի 56000 տոննա շիճուկ, որից 12000-ը կմշակվի կաթնաշաքարի պատրաստման համար, իսկ 44000-ը կօգտագործվի որպես անասնակեր։ Շիճուկը պարունակում է 0,9 տոկոս սպիտակուց և 4,5 տոկոս կաթնաշաքար։ 12000 տոննա շիճուկի մշակումից կստացվի 300 տոննա կաթնաշաքար, իսկ դրանից՝ 360 տոննա ալբումին շոռ, որը կարելի է օգտագործել որպես անասնակեր։ 1970 թվականին կստացվի 80000 տոննա շիճուկ և մոտ 3000 տոննա ալբումինի շոռ։

Նոր պանրագործարաններ կառուցելիս պայմաններ են ստեղծվելու մածուցիկ շիճուկ պատրաստելու համար, որը կօգտագործվի որպես կեր։ Ինչպես երևում է, նույն բանը պետք է անել նաև գործող խոշոր պանրագործարաններում։ Եթե սարքավորումներ լինեն, հնարավոր կլինի խոշոր պանրագործարաններում կազմակերպել նույնիսկ շիճուկի չորացումը։ Լաբորատորիան և մեր մասնագետներն արդեն գործում են այդ ուղղությամբ։

Մսի արդյունաբերության մնացորդներից նախատեսվում է 1964 թվականին ստանալ մսաոսկրային ալյուր՝ 427, ոսկրային ալյուր՝ 320, արյան ալյուր՝ 20, եփված կեր՝ 50 տոննա. այդ նյութերն անասունների և թռչունների համար արժեքավոր կեր են։ 1970 թվականին դրանց արտադրությունը կհասնի 4100 տոննայի։ Մսաոսկրային ալյուրը բարձր խտություն ունեցող արժեքավոր կեր է. այն պարունակում է 24 տոկոս մարսվող սպիտակուցներ, 3,2 տոկոս ֆոսֆոր։ Հատկապես արժեքավոր է արյան ալյուրը, որի մոտ 65 տոկոսը մարսվող սպիտակուց է։ Չոր կերի արտադրությունն արագացնելու և դրա համար կոմբինատներում եղած ոսկորների պաշարն օգտագործելու նպատակով արդեն գործնական աշխատանք է կատարվում։ Այս տարի որոշված է մեր ձեռնարկություններում արտադրել 165 տոննա կլեյ։

Մսի արտադրության մնացորդների խելացի օգտագործման համար խոշոր նշանակություն է ունենալու ինդոկրինային հումքի վերամշակումը օրգանական թերապևտիկ և ֆերմենտային դեղորայքի։

Մեր պատվերով «Գիպրոմյասոն» նախագծում է Երևանի մսի կոմբինատում ինքնուրույն ցեխ, որը հիմնվելու է 1965 թվականին։ Այդ ցեխը պետք է վերամշակի և թողարկի ադրենալին, ինսուլին, պիտուիտրին և այլ նյութեր։ Այդ դեղորայքների թողարկման համար հիմնականում օգտագործվելու են՝ խոզերի և խոշոր եղջերավոր անասունների երիկամների վերնամասերը, խոզերի և խոշոր եղջերավոր անասունների ենթաստամոքսային գեղձերը, աղիքներն ու թոքերը, խոզերի ստամոքսի լորձաթաղանթը։ Դեղորայքների արտա-



դրական ցեխում կազմակերպվելու է նաև հյուսվածքային դեղանյութի թողարկումը՝ ակադեմիկ Վ. Պ. Ֆիլատովի մեթոդով։ Այդ բիոստիմուլյատորը կկիրառվի մատղաշի քաշաճի բարձրացման և անասուններին կերակրելու համար, ինչպես նաև պրոֆիլակտիկ բուժման նպատակներով։

Բիոստիմուլյատորի համար հումք է ծառայում մսի կոմբինատներում նոր մորթված անասունների լորձաթաղանթը։ 1000 լիտր բիոստիմուլյատորի պատրաստման համար պետք է 400 կգ. լորձաթաղանթ և 700 լիտր (0,85 տոկոս նատրիքլոր) ֆիզիոլոգիական լուծույթ։

Ակադեմիկ Ֆիլատովի մեթոդով պատրաստված բիոստիմուլյատորը խոշոր եղջերավոր անասուններին՝ յուրաքանչյուր կիլոգրամ կենդանի քաշի դիմաց տալիս են 0,05 միլիոն, իսկ խոզերին՝ 0,1 միլիոն միավոր։

Պարտիան ու կառավարությունը մեծ ուշադրություն են հատկացնում մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության զարգացմանը։ Նախատեսված է առաջիկա հնգամյակում 17 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ կատարել և ռեսպուբլիկայում կառուցել մի շարք գործարաններ՝ ինչպես մսամթերքների, այնպես էլ կաթնամթերքների մշակման համար։ Երևանի մսի կոմբինատում կառուցվելու է սառցարանի մեծ, 5 հարկանի նոր կորպուս՝ 3000 տոննա միս և մսամթերքներ պահելու համար։ Այդ նույն շենքում տեղադրվելու է թռչնասպանդանոցը (որտեղ մորթվելու և մշակվելու են օրական մոտ 8000 թռչուն) և դեղորայքներ պատրաստելու ցեխը։ Նախատեսվում է այդ կոմբինատում կառուցել մսամթերքների կիսաֆաբրիկատների բազմապիսի նոր տեսակների պատրաստման նոր ցեխեր։ Ընդլայնվելու է երշիկի ցեխը՝ նոր տեսակի երշիկներ մշակելու նպատակով։

Լենինականի մսի-պահածոների կոմբինատում նույնպես կառուցվելու են նոր ցեխեր մսեղեն կիսաֆաբրիկատներ պատրաստելու և փաթեթավորելու համար։ Մեծանալու է նաև երշիկի ցեխը։

Կիրովականի մսի կոմբինատում կառուցվելու է թռչնասպանդանոց, որտեղ մորթվելու և մշակվելու են օրական մոտավորապես 6000 գլուխ թռչուն։ Կառուցվելու են նոր օժանդակ ցեխեր, ավելանալու են սառնարանային կարողությունները։

Ղափանի մսի կոմբինատում նախատեսված է կառուցել թռչնասպանդանոց օրական 6000 թռչուն մորթելու և մշակելու համար։ Լայնացվում է սառցարանը՝ 500 տոննա լրացուցիչ միս և մսամթերքներ պահելու համար։ Այս կոմբինատում նույնպես կառուցվելու են մսամթերքների կիսաֆաբրիկատների պատրաստման ու փաթեթավորման ցեխեր։

Կրկնապատկվելու է Երևանի կաթի կոմբինատի կարողությունը՝ որոշ արտադրական ցեխերի լայնացման և նոր սարքավորումների տեղադրման միջոցով։ Եթե այժմ կաթի կոմբինատը հնարավորություն ունի օրական մշակելու 70—80 տոննա կաթ, ապա մոտ ապագայում, վերասարքավորումից հետո, այն օրական կմշակի 150—160 տոննա կաթ։ Կոմբինատի տեղամասում կառուցվելու է նոր ցեխ, որտեղ օրական մշակվելու են 20 տոննա մանկական բազմատեսակ կաթնամթերքներ, որի զգալի մասը պետք է լինի կրծքի երեխաների համար։

Կիրովականում կառուցվելու է կաթի նոր գործարան, որն իր կարողությամբ 3 անգամ մեծ է լինելու ներկայումս գործող գործարանից։ Այստեղ կառուցվելու է 500 տոննա տարողությամբ նոր պահեստային շենք՝ աղաջրային պանիրների համար։

Հոկտեմբերյանի կաթի գործարանում կառուցվելու է չոր կաթի մշակման նոր ցեխ, որը մեկ հերթափոխում արտադրելու է 3 տոննա չոր կաթ։

Քաջարանում բանվորական ավանի աշխատավորությանը թարմ կաթնամթերքներով ապահովելու համար կառուցվելու է կաթի գործարան, որտեղ օրական մշակվելու են 5 տոննա բազմատեսակ կաթնամթերքներ։

Բասարգեչարում, Բայազետում (Սիսիանի շրջան), Ղուկասյանում, Ալիչալուում (Մարտունու շրջան), Ստեփանավանում, Թումանյանում և Կարմիրում կառուցվելու են նոր պանրագործարաններ՝ հագեցած նորագույն տեխնիկայով։

*Նախատեսված է նոր, ավելի հզոր սարքավորումների տեղադրման ու ըն-
դարձակման միջոցով քառապատկել Կալինինոյի, Սիսիանի շրջկենտրոնների,
Կամո քաղաքի պանրագործարանների կարողությունները: Ռեսպուբլիկայի՝
ներկայումս գործող պանրագործարաններում նոր սարքավորումներ տեղա-
դրելու և մեծացնելու միջոցով նախատեսված է ավելացնել 20 գործարանների
արտադրական կարողությունները:*

*Արտադրության այս ձեռնարկությունները կառուցելու նպատակին առա-
ջիկա հնգամյակում հատկացվելու է 17 միլիոն ռուբլի: Սակայն ռեսպուբլիկա-
յի շինարարական կազմակերպությունները չեն իրացնում կապիտալ շինարա-
րության համար ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված գումարները:
Սկսած 1960 թվականից ամեն տարի շինմոնտաժային աշխատանքների պլա-
նը կատարվում է 60—70, առանձին օբյեկտներում՝ 20—30 տոկոսով: Երկար
տարիներ ձգձգվում են նոր գործարանների կառուցումը, դրանց շահագործման
հանձնելը: Բավական է նշել, որ Յանիխի պանրագործարանի (Մարտունու
շրջան) կառուցումն սկսվել է 1954 թվականից և դեռևս չի ավարտվել:*

*Լայն են արդյունաբերական զարգացման հեռանկարները և ավելի մեծ
է պատասխանատվությունը՝ այդ վիթխարի խնդիրների կատարման հանդեպ:*

*Սովետական Հայաստանի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության
բնագավառի աշխատողներն իրենց բոլոր ջանքերը կգործադրեն աշխատավո-
րությանն ավելի շատ բարձրորակ մթերքներ տալու նպատակով:*

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի մսեղենի և կաթ-
նեղենի արդյունաբերության վարչության պետ

## ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊԼԱՆԸ

*Մեր պարտիայի առաջադրած մեծ ու պատմական խնդիրների լուծումը
պահանջում է ավելի կատարելագործել պարտիական աշխատանքի ձևերն ու
մեթոդները, վերակառուցել այն, դարձնել կոնկրետ ու նպատակասլաց, հրա-
ժարվել ամեն տեսակ ձևական կրկնություններից: Այդ տեսակետից կարևոր
նշանակություն ունի սկզբնական պարտիական կազմակերպության աշխա-
տանքի ճիշտ պլանավորումը:*

*Սկզբնական պարտիական կազմակերպությունն անց է կացնում բազմա-
թիվ միջոցառումներ և առանց նախամտածված, խելացի պլանավորման հը-
նարավոր չէ հասնել ցանկացած արդյունքի: Նույնիսկ լավ միջոցառումն ա-
ռանց նախօրոք նախապատրաստելու, կարող է չհասնել իր նպատակին. ուս-
տի, անհրաժեշտ է, որ բոլոր պարտրական կազմակերպությունները, որոշ
ժամանակի համար, նախօրոք կազմեն աշխատանքի պլան: Դա, իհարկե, մի-
այն գործի սկիզբն է:*

*Անհրաժեշտ է, որ պլանում արտացոլվեն տվյալ ժամանակի համար ա-
մենակարևոր, գլխավոր հարցերը, որոնց լուծմամբ կիրագործվի և տվյալ
կազմակերպության աշխատանքի պլանը: Ամեն մի կազմակերպության գոր-
ծունեությունը պլանավորելիս, պետք է հաշվի առնել տվյալ հիմնարկ-ձեռ-
նարկության, կոլտնտեսության, սովխոզի առանձնահատկությունները, նրանց
առջև դրված ընդհանուր խնդիրների կողքին պատշաճ տեղ հատկացնելով և
յուրահատուկ հարցերին, որոնց լուծումը խիստ կարևոր է տվյալ կոլեկտիվի
համար:*

*Աշխատանքային պլանների կազմման գործում խիստ անթույլատրելի է
շաբլոնը: Տարբեր սկզբնական պարտիական կազմակերպությունների համար
չի կարելի կազմել աշխատանքի միատեսակ պլան, քանի որ ամեն մի կազմա-
կերպություն, կոլեկտիվ ունի իր ուրույն խնդիրները: Այսպես, օրինակ, կոլ-
տնտեսության, սովխոզի սկզբնական պարտիական կազմակերպության աշ-
խատանքի պլանը չի կարող նմանվել հիմնարկային պարտկազմակերպության*



*պլանին: Կամ նույնիսկ այն կոլտնտեսության պարտիական կազմակերպու-
թյան պլանը, որը ունի սոսկ անասնաբուծական թեքում, չի կարող նման լի-
նել դաշտավարական կամ բազմաճյուղ թեքում ունեցող տնտեսության պարտ-
կազմակերպության աշխատանքային պլանին:*

*Պլանավորման ժամանակ, նախ և առաջ, պետք է հաշվի առնել կազմա-
կերպության հիմնական անելիքները, քանի որ ընթացիկ աշխատանքներն
այնքան շատ են ու բազմազան, որ հնարավոր չէ ամեն ինչ նախատեսել աշ-
խատանքի պլաններում: Աշխատանքի պլանը պետք է լինի կոնկրետ, ռեալ:
Սովխոզի, կոլտնտեսության, արտադրական ձեռնարկության սկզբնական
պարտիական կազմակերպությունը պետք է իր ուշադրությունը կենտրոնացնի
այն հարցերի վրա, որոնք տվյալ ժամանակի համար հանդիսանում են գլխա-
վորը, որոնց կատարմանը պետք է ծառայեցնել պարտկազմակերպության,
ամբողջ կոլեկտիվի ստեղծագործական ուժերը:*

*Պարտիական կազմակերպության աշխատանքը պլանավորելիս անհրա-
ժեշտ է հոգալ և այն մասին, որ նորմալ ընթանա բոլոր կոմունիստների մարք-
սիստական-լենինյան ուսուցումը: Պետք է այնպես կազմակերպել գործը, որ
կոմունիստները կոլեկտիվում հանդես գան դաստիարակի ու կազմակերպչի
դերում, գլխավորեն սոցիալիստական մրցությունը և անձնական օրինա-
կով ցույց տան աշխատավորներին, թե ինչպես պետք է կատարել ստանձնած
պարտավորությունները:*

*Այժմ սովխոզի, կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակեր-
պության ուշադրության կենտրոնում պետք է լինի ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմ-
բերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումների որոշումների կա-
տարումը: Այդ առումով, սկզբնական պարտիական կազմակերպություն-
ներն իրենց աշխատանքային պլանում պետք է արտացոլեն ջրովի հողերի
օգտագործման, հացահատիկի ցանքատարածությունների ավելացման, քի-
միական պարարտանյութերի հայթայթման, նրանց ճիշտ բաշխման (ըստ հո-
ղակտորների) և օգտագործման, ագրոքիմիական ուսուցման, աշխատանքի
արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման,
աշխատանքի ճիշտ կազմակերպման, կոլտնտեսականների ու բանվորների
անձնական շահագրգռվածության բարձրացման, գիտության նվաճումների և
առաջավոր փորձի ներդրման և այլ հարցեր:*

*Այս ուղղությամբ մի շարք պարտիական կազմակերպություններ ունեն
աշխատանքի լավագույն փորձ: Շամշադինի արտադրական վարչության Նո-
րաշենի, Այգեձորի, Ջինարի, Արտաշատի արտադրական վարչության Այգե-
զարդի, Ավշարի և շատ այլ պարտիական կազմակերպություններ, հաշվի առ-
նելով վերը նշված խնդիրները, ամբողջ կազմակերպության և ողջ աշխատա-
վորության ուժերն ուղղում են հենց այդ խնդիրների լուծմանը: Պատահական
չէ, որ այդ տնտեսություններում գնալով ավելանում են գյուղատնտեսական
կուլտուրաների բերքատվությունը, անասնաբուծական մթերքների արտադրու-
թյունը, հետևաբար և՝ տնտեսությունների եկամուտները: Անցյալ տարվա դըժ-
վարին կլիմայական պայմաններում անգամ նշված և մի շարք այլ տնտեսու-
թյուններում ավելացան եկամուտները. այժմ էլ նրանք գործնական քայլեր
են կատարում 1964 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար: Ընտըր-
ված և նախապատրաստված են բոլոր տեսակի սերմացուները, նորոգված են
բոլոր գործիքներն ու մեքենաները, կոմպլեկտավորված բրիգադները, վե-
րանայված ու հաստատված արտադրական պլանները:*

*Սակայն դեռևս կան առանձին պարտիական կազմակերպություններ, ո-
րոնք աշխատանքի պլանավորումը համարում են ձևական գործ: Այսպես,
Շամշադինի շրջկոոպ միության սկզբնական պարտիական կազմակերպու-
թյունը ամբողջ 1962 թվականի ընթացքում աշխատել է առանց պլանի: Նույնն
էր վիճակը և 1963 թվականին: Շրջկոոպի պարտժողովներից առանձին կոմու-
նիստներ հաճախակի բացակայում են, ժամանակին անդամավճար չեն մու-
ծում, իսկ պարտիական կազմակերպության բյուրոն 1962 թվականին ունե-
ցել է ընդամենը մեկ, իսկ 1963 թվականին՝ չորս բյուրոյի նիստ:*

Այս փաստը խոսում է այն մասին, որ պարտկազմակերպության բյուրոն (քարտուղար ընկ. Ս. Մելյան) անգործության է մատնվել և պլանային աշխատանք չի ծավալել կազմակերպության առջև դրված խնդիրների կատարման ուղղությամբ։ Գործերի նման բարձիթողի վիճակը շարունակվել է նաև 1964 թվականի անցած ամիսներին։ Փետրվարի 10-ին գումարվել է բյուրոյի նիստ, սակայն ոչ մի նյութ չի արձանագրված, որոշում չի կայացված։ Կամ կազմակերպության ընդհանուր ժողովում (1964 թ. հունվարի 3-ին) քննարկվել է «Հանցագործություն կատարած կոմունիստներին պատասխանատվության ենթարկելու գործում թույլ տված սխալների վերանայման» հարցը։ Բայց կրկին որոշում չի ընդունվել. մինչդեռ շրջկոոպում տեղի են ունեցել պետական միջոցների հափշտակման ու յուրացման դեպքեր, որոնց համար առանձին մարդիկ ենթարկվել են պարտիական ու դատական պատասխանատվության։

Գրեթե նույն վիճակում է Թռուզի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը։ 1963 թվականին այստեղ աշխատանքի պլան ունեցել են միայն 4 ամիսների համար։ Այդ է պատճառը, որ այս կազմակերպությունում խախտվում է բյուրոյի նիստեր հրավիրելու կարգը, ժամանակին միջոցներ չեն ձեռնարկվում տնտեսությունում եղած թերությունները վերացնելու ուղղությամբ։ Այստեղ պարտիական ժողովները ևս անց են կացվում առանց նախօրոք նախապատրաստելու, պարտիական տնտեսությունը անխնամ վիճակում է, կոմունիստների ուժերը ճիշտ չեն տեղաբաշխված։

Կան և այնպիսի կազմակերպություններ, որոնք, չնայած ունեն ամենամսյա աշխատանքի պլաններ, այնուամենայնիվ նրանցում չեն արտացոլվում տնտեսության զարգացման կամ արտադրական պլանների կատարման հետ առնչվող արմատական հարցեր։ Ավելին, պլաններում չի նշվում, թե ինչ միջոցներ պետք է ձեռք առնել տնտեսության առջև դրված խնդիրների կատարումն ապահովելու համար։

Շամշադինի կենցաղսպասարկման կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպությունը կազմում է աշխատանքի պլան, հրավիրում ժողովներ, սակայն, ինչպես հարկն է, չի խորանում արտադրության հարցերում։ Երբ խորամուխ ես լինում այս կազմակերպության աշխատանքի պլանի մեջ, պարզվում է, որ դա կազմվել է ձևականորեն, այնտեղ չեն բարձրացվել կոլեկտիվին հուզող, արտադրության հետ կապված կարևոր հարցեր։ Իսկ գյուղական արտադրական կոմիտեն և, առաջին հերթին, այդ կազմակերպությանն սպասարկող տեսուչ-կազմակերպիչը անտեսել են պարտկազմակերպության աշխատանքի պլանավորման հարցը և ժամանակին չեն փորձել վերացնել այդ թերությունը։

Սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքի պլանը՝ դա պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի պլանն է, ողջ կազմակերպության գործունեության ուղենիշը։ Աշխատանքը պլանավորելիս պետք է նախատեսել պարտիական ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվող հարցերը, իսկ առանց դրանք նախօրոք և գործիմացությամբ ընտրելու և նախապատրաստելու, քննարկումները ցանկալի արդյունք չեն տա։ Պարտիական ժողովներում և բյուրոյում քննարկված հարցերը պետք է լուծվեն արագ ու ճիշտ, կազմակերպությունը պետք է ընդունի կոնկրետ, նպատակասլաց որոշում և, որ կարևորն է, հսկի այդ որոշումների կատարմանը։

Շատ պարտիական կազմակերպություններում կան ցեխային կազմակերպություններ, պարտիական խմբեր։ Հասկանալի է, որ նման կազմակերպությունների աշխատանքի պլանում պետք է հարցերն ընտրվեն, նախապատրաստվեն նրանց ակտիվ մասնակցությամբ։ Այդպիսի պարտկազմակերպությունների պլաններում պետք է լինեն պարտիական ստորին օղակների աշխատանքներին օգնող հարցեր, հաճախ նույնիսկ պետք է կազմակերպվի նրանց հաշվետվությունների քննարկում։ Միայն այսպիսի ամենօրյա, անդուլ աշխատանքը, պատասխանատվությունը գործի նկատմամբ, կարող են կոլեկտիվին պահել մոբիլիզացիոն վիճակում, վերացնել արտադրական կամ այլ



կարգի թերությունները, նպաստել մարդկանց կոմունիստական դաստիարակությանը։

Պարտիական կազմակերպության աշխատանքի պլաններում նախատեսվում է նաև, թե տվյալ ամսում ինչ օգնություն պետք է կազմակերպվի այս կամ այն տեղամասին, ցեխին, բրիգադային։ Այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել նաև, թե որ օղակն օգնության կարիք ունի և գործն այնպես կազմակերպել, որ հարցը ո՛չ միայն պլանավորվի ու քննարկվի, այլ անպայման բացահայտվեն ու վերացվեն ետ մնալու պատճառները։ Բացի այդ, պլանավորման ժամանակ պետք է հաշվի առնել նաև առաջավոր տեղամասի, ցեխի, բրիգադայի, ֆերմայի կամ առանձին լավագույն աշխատողների փորձի ուսումնասիրումը, մշակվեն կոնկրետ միջոցառումներ՝ դրական փորձի մասսայականացման, այն բոլորի սեփականությունը դարձնելու ուղղությամբ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պլանային հարցերի նախապատրաստման համար պետք է ընտրեն գործիմաց ընկերների, ովքեր լավ են հասկանում իրերի վիճակը և իրենց խելացի առաջարկներով ու խորհուրդներով կարող են օգնել այս կամ այն տեղամասին՝ շտկելու սխալները։ Լավ կլինի նաև հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը մասնակից դարձնել շատ ընկերների։ Այդ կապահովի կոմունիստների ակտիվ ու գործարար մասնակցությունը հարցի բազմակողմանի ուսումնասիրությանը, եղած թերությունների վերհանմանը, դրանց վերացման ճիշտ ուղիներ ընտրելուն։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների պլաններում անհրաժեշտ է նախատեսել քաղաքական-մասսայական աշխատանքի հիմնական միջոցառումները։ Օրինակ, կարելի է նախօրոք որոշել, թե ի՞նչ թեմաներով զեկուցումներ են լսվելու տվյալ շրջանում, ինչպիսի՞ զրույց է նախատեսվում անցկացնել, որտե՞ղ և ե՞րբ, բացի այդ, պետք է նախատեսել նաև անցկացնող ընկերոջը, որպեսզի վերջինս վաղօրոք հնարավորություն ունենա նախապատրաստվելու, իր զրույցը տեղական խնդիրների հետ կապելու։

Սկզբնական պարտիական կազմակերպությունը ղեկավարում է տվյալ ձեռնարկության կամ հիմնարկության հասարակական կազմակերպություններին, բայց չպետք է դիմազրկի նրանց, իր վրա վերցնելով այդ կազմակերպությունների ֆունկցիաները։ Պարտիական կազմակերպության աշխատանքի պլանում, իհարկե, կարող են նախատեսվել հարցեր այս կամ այն հասարակական կազմակերպության աշխատանքի վերաբերյալ. այդ ժամանակ պետք է տրվեն կոնկրետ հանձնարարություններ։ Ցանկալի է, որ պարտիական կազմակերպությունը հաճախ անդրադառնա հասարակական կազմակերպությունների աշխատանքին և նրանց ցույց տա կոնկրետ օգնություն։

Որպեսզի լիարժեք լինի պարտիական կազմակերպության աշխատանքի պլանը, անհրաժեշտ է հաշվի առնել բոլոր կոմունիստների կարծիքը, նրանց քննադատական դիտողություններն ու առաջարկները, այնուհետև այն հաստատել կազմակերպության բյուրոյի նիստերում կամ պարտիական ժողովներում։ Պլանավորման ժամանակ պետք է ընտրել հարցերի նախապատրաստման այնպիսի ժամանակաշրջան, որ հնարավոր լինի ապահովել նրանց ճիշտ, մանրակրկիտ ուսումնասիրությունը և քննարկվող հարցի բազմակողմանի վերլուծությունը։ Պարտիական կազմակերպությունների մեծ մասում կազմում են մեկ ամսվա աշխատանքի պլան։ Սխալ չէ նաև ավելի երկար ժամանակի համար պլան կազմելը։ Մեկ ամսվա աշխատանքի պլան կազմող կազմակերպությունները պետք է հաշվի առնեն, որ մեկ ամսվա ընթացքում հնարավոր չէ լուծել շատ հարցեր, ուստի առանձին հարցերի նախապատրաստման համար հարկ է երկար ժամանակ տրամադրել։ Պետք է նաև նկատի ունենալ, որ աշխատանքի պրակտիկան նույնպես անհրաժեշտ փոփոխություններ է մտցնում այդ պլաններում, որոնք պահանջում են կազմակերպական-քաղաքական լրացուցիչ միջոցառումներ։

ՍՄԿԿ կանոնադրությամբ յուրաքանչյուր երկու տարին մեկ անգամ նոր մարդիկ են ընդգրկվում պարտիական աշխատանքի ոլորտը, որոնք այնքան էլ ծանոթ չեն լինում պարտիական աշխատանքին, հատկապես նրա ճիշտ

պլանավորմանը: Ուստի պարտիայի քաղկոմ-շրջկոմներն ու արտադրական պարտիական կոմիտեները պետք է ավելի սիստեմատիկ դարձնեն սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ տարվող աշխատանքը, տեղերում կոնկրետ օգնություն ցույց տան նրանց և սովորեցնեն, թե ինչպես պետք է պլանավորել սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքը:

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ
ՀԿՊ Կենտրոնական կոմիտեի տեսուչ

## ՎԵՐԱՓՈԽՎՈՒՄ Է ԱՐՄԱՏԱՊԵՍ

Մինչև սովետական կարգերի հաստատումը Գորիսը լեռների արանքում բազմած մի գյուղաքաղաք էր. ուներ ընդամենը 200 տուն՝ 3209 ազգաբնակչությամբ: Չկար արդյունաբերական ոչ մի ձեռնարկություն, բնակչության ճնշող մեծամասնությունը գրագետ չէր:

Խոր ձորերի և բլրակների մեջ ընկած հին Կյորեսը՝ շրջապատված ցիցցից, մերկ ու սրածայր ժայռերով, մռայլ էր ու անհրապույր: Բրգաձև էին նրա տները, տանիքները՝ իրար վրա խառնիխուռն դարսված մի քանի հողածածկ փայտե սյուներ: Հողե հատակից մինչև երդիկը ձգվում էր մի փայտե, անտաշ սյուն, որին ամրացված էր ձեթի կամ նավթի ճրագը: «Ղարադամ» էին կոչում այդ տները, որտեղ մարդիկ և անասունները միասին էին ապրում:

Ավելի քան անհրապույր էին նրա գյուղերը: Գյուղացիների համար բնակարան էին ծառայում ժայռերի մեջ փորված խորունկ քարանձավները՝ զուրկ տարրական հարմարություններից, անգամ բնական լույսից:

Գորիսի շրջանի մեծ ու փոքր գյուղերը չունեին կինո, թատրոն, գրադարան ու ակումբ, ռադիո, հեռախոս, էլեկտրական լուսավորություն, աշխատավորության սպասարկման որևէ օջախ: Շրջանը չուներ բժիշկ, զոոտեխնիկ, ագրոնոմ, ուսուցիչ, ինժեներ, տեխնիկ և գիտության աշխարհի այլ ներկայացուցիչներ:

Դրությունն այժմ բոլորովին փոխվել է: Սովետական իշխանության տարիներին վիթխարի հեղաշրջում կատարվեց ժողովրդական կրթության գործում, իսպառ վերացավ անգրագիտությունը՝ հասարակության մեծագույն չարիքը: Բացվեցին դպրոցներ, ակումբներ, գրադարաններ և կուլտուրայի այլ հիմնարկություններ: Լայն ուղիներ բացվեցին մարդկանց համար, ստեղծվեցին գիտության հիմունքներին տիրապետելու բոլոր հնարավորությունները: Այժմ քաղաքում և շրջանի գյուղերում գործում են 34 յոթնամյա, ութամյա, միջնակարգ, տարրական և 4 գյուղերիտ դպրոցներ՝ 7195 սովորողներով. դպրոցներում դասավանդում են 514 ուսուցիչներ, որոնց կեսից ավելին բարձրագույն կրթություն ունեն: Բացի այդ, Գորիս քաղաքում գործում են գյուղատնտեսական միջին կադրեր պատրաստող մեկ տեխնիկում (400 սովորողներով) և գիշերօթիկ դպրոց:

Շրջանում կան 27 գրադարան, 29 ակումբ, կուլտուրայի տուն, գավառագիտական թանգարան, ժողովրդական թատրոն, քաղաքային կինո-թատրոն, 7 ստացիոնար և 3 շրջիկ կինո, երաժշտական դպրոց, բազմաթիվ մանկապարտեզներ և մանկամսուրներ:

Շրջանի յուրաքանչյուր երեք մարդուց մեկը սովորում է, 6-ից մեկն ունի միջնակարգ, կամ բարձրագույն կրթություն: Հրատարակվում է «Զանգեզուր» թերթը, որն արտացոլում է շրջանի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատանքը: Գործում է հեռախոսային ցանցը: Գյուղի համարյա բոլոր տներից կարելի է լսել ռադիոբարձրախոսների ձայնը:

Աշխատավորության բուժսպասարկման գործը վարում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող 200 մասնագետներ:

Արմատապես փոխվել է Գորիս քաղաքի և նրա գյուղերի տեսքը: Սովե-



տական իշխանության տարիներին Գորիսը դարձել է ռեսպուբլիկայի գեղեցիկ ու բարեկարգ քաղաքներից մեկը: Կառուցվել են բազմաթիվ բնակելի շենքեր: Գորիս գյուղի բնակիչները դուրս են եկել քարանձավներից և երկհարկանի գեղեցիկ բնակարաններ կառուցել: Լայն ու ծառազարդ են քաղաքի ուղիղ փողոցները: Զանգեզուրի գեղեցկուհին զարդարված է բազմաթիվ նորակառույց երկհարկանի գեղեցիկ տներով, խանութներով, վաճառատներով, կինոյի, թատրոնի, կուլտուրայի, հանգստի ու հասարակական այլ շենքերով, ծաղկանոցներով ու զբոսայգիներով:

Բայց միայն Գորիսը չի վերափոխվում: Ահա նոր Խնձորեսկը, որի բնակիչները դարերով ծվարած էին անդնդախոր քարանձավներում, իսկ այսօր այնտեղ վեր են խոյացել 350-ից ավելի երկհարկանի բարձրաբերձ տներ, ձգվել են ուղիղ փողոցներ, հասարակական կառույցներ: Նոր տեղում են հիմնավորվել և Կոռնիձորը, Վերիշենը, Բուռունը: Խնածախի, Տեղի, Բայանդուրի, Տաթևի, Քարահունջի բնակիչների 80 տոկոսից ավելին արդեն բնակվում են իրենց երկհարկանի նորակառույցներում: Այսպես վերափոխվում ու ավելի է գեղեցկանում Գորիսն իր շրջակայքով, գյուղերով: Այդ դեռ բոլորը չէ: Ավելի պայծառ են Գորիսի հեռանկարները, նրա վաղվա օրը:

Հինավուրց Տաթև գյուղի ստորոտով անօգուտ գահավիժող Որոտան գետի վրա սկսվել է Տաթևգէս հսկայի շինարարությունը, որն ավարտվելու է յոթնամյակի տարիներին: Այս նորակառույցին կհաջորդեն մեխանիկական գործարանը և արտադրական տասնյակ այլ նոր ձեռնարկություններ, բանվորական ավաններ ու հասարակական շենքեր, կլուծվի շրջանի ոռոգման սիստեմի հարցը, ջրովի տարածությունները կավելանան 6000 հեկտարով, որն ամբողջովին կփոխի Զանգեզուրի լեռնաշխարհի բնությունն ու նրա էկոնոմիկան: Արդեն շարք են մտել միկրոէլեկտրաշարժիչների խոշորագույն գործարանը, տրիկոտաժի ֆաբրիկան, կրի գործարանը, ավտոնորոգման գործարանը, գորգագործական ֆաբրիկան: Արագ է ընթանում կահույքի ֆաբրիկայի, կաթնամթերքների վերամշակման և շինանյութերի արտադրության նոր օբյեկտների կառուցումը:

Անկապտելի են նորի ուժն ու դերը մարդկանց գիտակցության վերափոխման գործում: Նորը ծնել է մի ամբողջ սերունդ, ազդել ու կերպարանափոխել մարդկանց, նույնիսկ հասակավորներին: Զանգեզուրի բարձրաբերձ լեռնաշխարհի գրկում ծնվել են բազմաթիվ գիտնականներ, կուլտուրայի գործիչներ, բարձրաստիճան զինվորականներ, արվեստի ու գրականության գործիչներ, անվանի մեխանիզատորներ, հովիվներ, գյուղատնտեսներ, այգեգործներ, մանկավարժներ, բժիշկներ և այլ պրոֆեսիայի մարդիկ:

Զանգեզուրը ոգևորել է մեծ գրող Ակսել Բակունցին, որի ստեղծագործություններում զգում ենք գյուղի արագ զարգացման կենսալի տրոփը, անմար հավատը նրա պայծառ ապագայի նկատմամբ: Զանգեզուրում են ծնվել բժշկական գիտությունների դոկտոր պրոֆեսոր Ռուբեն Յոլյանը, ինժեներական ծառայության գեներալ մայոր Համո Յոլյանը, բժշկական գիտությունների դոկտոր պրոֆեսոր Պարոնյանը, գրող Ս. Խանզադյանը և շատ ուրիշներ:

Սովետական իշխանության տարիներին միայն Խնձորեսկ գյուղը երկրին տվել է 1000-ից ավելի միջնակարգ և 350-ից ավելի բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ: Խնձորեսկցի են՝ բիոլոգիական գիտությունների դոկտոր Վահան Ղազարյանը, փիլիսոփայական, պատմական, բժշկական, ճարտարապետական և այլ գիտությունների 15-ից ավելի թեկնածուներ, գրողներ Գարեգին Սևունցը, Սուրեն Այվազյանը, կոմպոզիտոր Աշոտ Սաթյանը, Արամ Սաթունցը, ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Տաթևիկ Սազանդարյանը: Հայրենական պատերազմի տարիներին 240-ից ավելի խնձորեսկցի սպաներ (դրանցից 29-ը բարձրաստիճան) անձնազոհ պայքարով պաշտպանում էին մեր հայրենիքը: Այժմ գյուղի միջնակարգ դպրոցում աշխատում են 35-ից ավելի ուսուցիչներ. բոլորն էլ նույն գյուղից են և ջանք չեն խնայում երեխաների կոմունիստական դաստիարակության համար: Միայն մանկավարժներ չեն նրանք, այլև ագիտատորներ ու պրոպագանդիստներ: Գյուղն ունի մոտ

100 մեխանիկներ, կոմբայնավարներ, տրակտորիստներ, վարորդներ, էլեկտրամոնտյորներ, ռադիոտեխնիկներ, որոնք բոլորն էլ տեղացիներ են։

Ահա Վոլոդյա Բաղդագյուլյանը, որ 12 տարի աշխատում է ակումբում և գրադարանում՝ նա շարունակ հարստացնում է գրքային ֆոնդը, մեծացնում ընթերցողների թիվը։ Այժմ 500 ընթերցող ունեցող նրա գրադարանում կա մոտ 15 հազար գիրք։

Ստեղծվել են բոլոր պայմանները կրթված ու բազմակողմանի զարգացած մարդ դառնալու համար։ Այսպես, օրինակ, Խնձորեսկի «Լենինյան ուղիով» կոլտնտեսության շարքային անդամ Ասատուր Գյուլխասյանի բոլոր երեխաները բարձրագույն կրթություն են ստացել. նրանցից Աշոտը բժշկական գիտությունների թեկնածու է, աշխատում է Երևանի երրորդ հիվանդանոցի քիթ-կոկորդի բաժանմունքում։ Շմավոնը ճարտարապետական գիտությունների թեկնածու է, դասավանդում է Երևանի Կարլ Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտում։ Միքայելը գյուղատնտեսական գիտությունների թեկնածու է, աշխատում է Երևանի գյուղատնտեսական ինստիտուտում որպես դասախոս։ Գառնիկը, որ ասպիրանտ է, աշխատում է գազիֆիկացիայի վարչությունում, որպես գլխավոր ինժեներ։ Իսկ Համբիկ Գյուլխասյանը ատամնաբույժ է Գորիս քաղաքի հիվանդանոցում։

Գորիսի «Ավանգարդ» կոլտնտեսության անդամ Եղիշե Սարգսյանի ընտանիքից Սեդա Պարոնյանն ավարտել է բժշկական ինստիտուտը, այժմ Գորիս քաղաքի ծննդատան վարիչն է։ Աիդա և Լիդա Սարգսյանները, որոնք ունեն բարձրագույն կրթություն, աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում։ Ֆրիդա Սարգսյանը գեղագործ է, իսկ Ջուլիետան սովորում է Երևանի Խաչատուր Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտում։

Այս օրինակները եզակի չեն։ Հետաքրքիր փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղի ինտելիգենցիայի հոգեբանության մեջ։ Առաջներում, երբ երիտասարդները միջնակարգ կամ բարձրագույն կրթություն էին ստանում, հեռանում էին գյուղից։ Այժմ այդպես չէ։ Խնձորեսկի կոլտնտեսության անասնաբուծության, դաշտավարության և այլ բնագավառներում աշխատում են 90-ից ավելի միջնակարգ կրթությամբ երիտասարդներ, նույնքան երիտասարդներ էլ աշխատում են տեղի կոլտնտեսությունում։

Գյուղական ինտելիգենցիան ձգտում է տիրապետել ժամանակակից գյուղատնտեսական տեխնիկային. մարդիկ ցանկանում են ոչ միայն վարել տրակտոր, կոմբայն, կալսիչ և գյուղատնտեսական բազմաթիվ այլ մեքենաներ, այլև հանգամանորեն իմանալ նրանց ամենափոքր դետալների մասին։

Այսպես վերափոխվում են Զանգեզուրի լեռնաշխարհը և նրա մարդիկ։

Հաջողությամբ կենսագործելով կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության ցուցումները՝ Գորիսի շրջանի աշխատավորներն առաջիկայում էլ կանեն ամեն ինչ՝ ավելի բարձրացնելու իրենց գաղափարական ու կուլտուրական մակարդակը։

**Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ**



# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ (ԲԱՔՈՒ) ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԻՑ

(հունիս—նոյեմբեր 1920 թ.)

Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության մեջ ուշագրավ և հետաքրքիր շատ էջեր են կապված 1920 թվականին Բաքվում ստեղծված Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրոյի (Заграничное бюро коммунистической организации Армении) հետ։ Վերջին տարիներին, մասնավորապես ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարներից հետո, Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմությանը նվիրված աշխատություններում զգալի ջանքեր են գործադրված լուսաբանելու Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրոյի գործունեությունը։ Սակայն Հայաստանում սովետական կարգերի հաստատման նախօրյակին Արտասահմանյան բյուրոյի ծավալած պարտիական-քաղաքական աշխատանքի շատ կողմեր տակավին կարոտ են լուսաբանման։

Ստորև հրապարակվող վավերագրերը կօգնեն ինչ-որ չափով լրացնելու այդ բացը, ավելի խոր և բազմակողմանի պատկերացնելու այն բեղմնավոր աշխատանքը, որ կատարել է Արտասահմանյան բյուրոն։

***

Հայաստանի կոմունիստական կազմակերպություններն իրենց ծագման առաջին օրերից Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետ միասին հանդիսացել են լենինյան պարտիայի անբաժանելի մասը, ունեցել են մի միասնական ղեկավար կենտրոն՝ ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտե, ՌՍԴԲՊ Կովկասյան բյուրո, ՌԿ(բ)Պ կովկասյան երկրային կոմիտե, ՌԿ(բ)Պ Կենտկոմի կովկասյան բյուրո և ապա ՀամԿ(բ)Պ Անդրկովկասյան երկրային կոմիտե։ Վ. Ի. Լենինը միշտ հիացմունքով է խոսել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալ սկզբունքների մասին։

Ղեկավարվելով ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ, 1920 թվականի մայիսի 20-ին ՌԿ(բ)Պ Կովկասյան երկրկոմը դադարեցնում է իր գործունեությունը։ Ստեղծվում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի կովկասյան բյուրո, որի միջնորդությամբ 1920 թ. հունիսի 30-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի կազմբյուրոն որոշում է. «Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծել կոմունիստական պարտիաներ՝ նրանց տալով պարտիայի մարզային կազմակերպությունների իրավունքներ և ենթարկելով Կենտկոմի Կովկասյան բյուրոյին։ Տվյալ պարտիական կազմակերպություններից յուրաքանչյուրը սպասարկում է իր տերիտորիայում ապրող ամբողջ բնակչությանը, անկախ ազգային կազմից»[1]։

---

1 ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Ադրբեջանական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ցուց. 125, գ. 23, թ. 2։

ՌԿ(բ)Պ Կենտկոմը և նրա Կովկասյան բյուրոն Հայաստանում ծավալվող պարտիական-քաղաքական աշխատանքը գլխավորում էին 1920 թվականի հունվարյան կոնֆերանսում ընտրված ՌԿ(բ)Պ Հայաստանի կոմիտեի (Արմենկոմ) միջոցով: Մի փոքր ուշ Թիֆլիսում ստեղծվում է նաև Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրո: Արմենկոմի հետ միասին այն ղեկավարում էր պարտիական կազմակերպությունների աշխատանքը, որը, սակայն հնարավորություն չունեցավ իր գործունեությունը երկար շարունակել մենշևիկյան Վրաստանում [1]:

1920 թ. Հայաստանում բռնկված Մայիսյան ապստամբությունից հետո ստեղծված քաղաքական իրադրությունը պահանջում էր ավելի ուժեղացնել պարտիական ղեկավարությունը: Հունիսին Բաքվում ՀԿՊ Կենտկոմի անդամներից ձևավորվում է Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան նոր բյուրո, որն իր գործունեությունը շարունակում է մինչև նույն թվականի նոյեմբերը: ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոյի ղեկավարությամբ, Ադրբեջանի կոմպարտիայի Կենտկոմի և Բաքվի կոմիտեի սերտ համագործակցությամբ, Հայաստանի պարտիական կազմակերպության Արտասահմանյան բյուրոն եռանդուն աշխատանք է կատարում Հայաստանի պարտիական կազմակերպությունների գործունեությունը ղեկավարելու, աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը գլխավորելու, պարտիական կադրեր ստեղծելու և աճեցնելու, Հայաստանի շրջաններն ընդհատակյա, պրոֆեսիոնալ գործիչներ ուղարկելու ուղղությամբ: Արտասահմանյան բյուրոն Հայաստանի աշխատավորներին նախապատրաստում էր ռևոլյուցիոն պայքարի, հանուն սովետական կարգերի հաստատման:

Հրապարակվող վավերագրերի մի մասը (տես փաստաթղթեր № № 1, 8, 9, 10, 12, 13) պատմում է Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրոյի ստեղծման, նրա պրակտիկ գործունեության, բյուրոյի առանձին անդամների քաղաքական աշխատանքի մասին: Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրոն, բացի Թիֆլիսից ու Երևանից, մերձավոր կապերի մեջ էր Հայաստանի գավառների, գյուղերի կազմակերպությունների հետ, իր ներկայացուցիչներն ուներ Հայաստանի գավառներում ու գյուղերում, մասնավորապես Ղազախ—Շամշադինում, մեծ թվով ռևոլյուցիոն գործիչներ էր ուղարկում Քարվանսարայի գավկոմի տրամադրության տակ, տեղում պարտիական-քաղաքական աշխատանք կատարելու համար (տես վավերագրեր № № 2, 3, 6 և այլն): Հայաստանում սովետական կարգերի հաստատման նախօրյակին, Արտասահմանյան բյուրոն Բաքվում ստեղծում է պարտիական դպրոց, որտեղ էլ հենց պատրաստվում էին այդ կադրերը (տես վավերագրեր № № 16, 17 և այլն): ՌԿ(բ)Պ Կենտկոմը ամեն տեսակ աջակցություն էր ցույց տալիս Արտասահմանյան բյուրոյին, հայ մարքսիստներից պարտիական պրոֆեսիոնալ կադրեր կոփելու համար, այդ նպատակին հատկացնելով կենտրոնից ուղարկված զգալի գումարները [2]: Առանձին ընկերների նույնիսկ գործուղում էին Մոսկվա՝ պարտիական համալսարանում սովորելու: Վավերագրերը պատմում են Արտասահմանյան բյուրոյի հրատարակչական գործունեության, Հայաստան մարքսիստական գրականություն առաքելու մասին (տես վավերագիր № 11): Հրատարակվող նյութերը հարստացնում են մեր պատկերացումներն Արևելքի ժողովուրդների համագումարի և Հայաստանի պարտկազմակերպությունների ու Բաքվի 1920 թ. սեպտեմբերյան կոնֆերանսի նախապատրաստման ու անցկացման ուղղությամբ Արտասահմանյան բյուրոյի կատարած աշխատանքների, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարում տեղացի, ռուս, ադրբեջանցի և այլ ազգի աշխատավորների ու ռևոլյուցիոն մարտիկների ունեցած ակտիվ մասնակցության մասին (տես վավերագիր № 15):

---

[1] Տես Ա. Մռավյան, Հոդվածներ և ճառեր, Երևան, 1961, էջ 331:

[2] Տես ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի պարտարխիվ, ֆ. 4033, գ. 944, կապ. 10, ցուց. 1, թ. 138:



Ստորև հրապարակվող վավերագրերը պահվում են ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվում և տրվում են ժամանակագրական կարգով: Նյութերը տպագրության է պատրաստել և ծանոթագրել պատմական գիտությունների թեկնածու Խ. Հ. Բարսեղյանը:

Հայաստանի ԿՊ Կենտկոմին առընթեր պարտիայի պատմության ինստիտուտ— ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալ:

№ 1

1920 Թ. ՀՈՒՆԻՍ—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ԿԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրո
« » . . . . 19 [1]

ՌԿՊ Կենտկոմի բյուրոյի և Ադր. կոմ. պարտիայի Կենտկոմին

Հայաստանի կոմուն. կազմակերպության Արտասահմանյան բյուրոյի կազմակերպման հանձնաժողովը առաջարկում է հետևյալ կազմը. ընկ. ընկ. 1. Ավիսին [2], 2. Հայկազին [3], 3. Սահակյանին [4], 4. Շավարշին [5]*, 5. Լևոն Ուլիբեկովին [6]:

Նկատի ունենալով, որ ՌԿՊ Կենտկոմի ընկ. ընկ. անդամները և Կենտկոմի բյուրոյի ընկ. ընկ. անդամները մեր թվարկած ոչ բոլոր ընկերներին են լավ ճանաչում, հանձնարարում ենք մեր ներկայացուցչին ՌԿՊ Կենտկոմի բյուրոյի նիստում ընկերներին ծանոթացնել վերոհիշյալ ընկերների անցյալ գործունեության հետ:

Հանձնաժողովի անդամ

ՀԿՊ Կենտկոմի պարտարխիվ,
ֆ. 4033, գ. 890, կապ. 9,
ցուց. 1, թ. 42:

№ 2

1920 Թ. (ՀՈՒՆԻՍ-ՆՈՅԵՄԲԵՐ) [7]—ՂԱԶԱԽ-ՇԱՄՇԱԴԻՆԻ ՇՐՋԱՆՈՒՄ ԱՇԽԱՏՈՂ ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ

1. Ղալբախչյան Տ.
2. Միրզոյան Սահակ
3. Աթաբեկյան Ար.
4. Օրմինյան Մ.

Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի
Հայկական ֆ լի արխիվ,
ֆ. 4033, գ. 944, կապ. 10,
ցուց. 1, թ. 28:

№ 3

1920 Թ. ՀՈՒՆԻՍԻ 21—Բ. Խ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆՑԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ՏՐԱՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԱԿ ՈՒՂԱՐԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

21 հունիսի 1920 թ.
եռ. 1206
ք. Բաքու

ԸՆԿ. ԿՈՍՏԱՆՅԱՆԻՆ [8]

Սույնը ներկայացնող ընկ. Բաբաջուր Խաչատուրի Արզումանյանցին

---

* Ամիրխանյանին

Ադրբեջանական կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեն գործում է Ձեր տրամադրության տակ:

Կենտկոմի անդամ՝ Ա. ՄԻԿՈՅԱՆ

Քարտուղար՝ (ստորագրություն)

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թերթ. 36։*

## № 4

### *1920 Թ. ՀՈՒՆԻՍ.—ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ II ԿՈՆԳՐԵՍԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐ Ա. ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆԻՆ ՏՎԱԾ ՄԱՆԴԱՏԻ ՄԱՍԻՆ*

Հայաստանի կոմուն. կազմակերպության Արտասահմանյան բյուրոն, Ադրբ. կոմ. պարտիայի Կենտկոմը, ՌԿՊ Հայաստանի կոմիտեի անդամները հաստատում են, որ իրոք ընկ. Ավիսը ՀԿՊ Կենտկոմի կողմից ուղարկված է Մոսկվա՝ III Ինտերնացիոնալի 2-րդ համագումար՝ որպես Հայաստանի կոմուն. կազմակերպության լիազոր ներկայացուցիչ, ընդ որում ՀԿՊ Կենտկոմից նրան տրված մանդատը, որ ուղարկվել է Թիֆլիսից, մնացել է Վլադիկավկազ քաղաքում ⁹:

Նախագահ՝ ստորագրություն

Ադր. Կենտկոմի անդամ

ՌԿՊ Հայաստանի կոմիտեի անդամ

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 20։*

## № 5

### *1920 Թ. ՀՈՒԼԻՍ.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ԿՈՂՄԻՑ ՄՈՍԿՎԱ՝ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ ԳՈՐԾՈՒՂՎԱԾ ԸՆԿԵՐՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ*

1. Ենգիբարյան Միխայիլ
2. Մելիքսեթյան
3. Օսիպով
4. Ախինով
5. Առուստամյան
6. Սարգսյան
7. Մարգարյան
8. Ծատուրով
9. Գամարյան
10. Համբարձումյան
11. Աբրահամյան [10]
12. Եղիկյան
13. Մատինյան

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 63։*

## № 6

### *1920 Թ. ՀՈՒԼԻՍ.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆ. ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄ. ԲՅՈՒՐՈՅԻ ԿՈՂՄԻՑ ՔԱՐՎԱՆՍԱՐԱՅԻ ԳԱՎԿՈՄԻ ՏՐԱՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԱԿ ԳՈՐԾՈՒՂՎԱԾ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ [11]*

1. Գյանջունցև Մուշեղ
2. Արզումանյան Բաբաջուր
3. Համբարձումյան Համբարձում
4. Գալուստով Լազար
5. Բայաթյան Բարսեղ
6. Տեր-ՊԵՏՐՈՍՅԱՆ Յոլակ [12]
7. Վիրաբյան Մարուսյա
8. Հակոբջանյան Խաչիկ
9. Տեր-ՊԵՏՐՈՍՅԱՆ Յոլակ
10. Թարխանյան Շահեն



11. Գարդաշյան Գարեգին
12. Մեհրաբյան
13. Ավիս
14. Հովհաննիսյան Շիգա (?)
15. Այվազյան

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 944, կապ. 10 ցուց. 1, թ. 144։*

## № 7

### 1920 թ. օգոստոսի 4.—Միրզոյանին տրված մանդատը

Հայաստանի
կոմուն. կազմ.
Արտասահմանյան
բյուրո
4 օգոստոսի 1920 թ.
№ 194

### ՄԱՆԴԱՏ

Տրվում է սույնը ընկ. ՄԻՐԶՈՅԱՆԻՆ առ այն, որ նա Հայաստանի կոմուն. կազմակերպության Արտասահմ. բյուրոյի կողմից գործուղվում է Ղազախ պարտիական աշխատանքի, ուստի և խնդրվում է [սովետական կազմակերպություններին օգնել նրան] [13]:

Բյուրոյի անդամ՝ Կոստանյան

Քարտուղար՝ ստորագրություն

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 1։*

## № 8

### *1920 Թ. ՕԳՈՍՏՈՍԻ 29.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ՆԱՄԱԿԸ ԸՆԿ. Ա. ՇԱՀՍՈՒՎԱՐՅԱՆԻՆ՝ ՆՐԱՆ ԹԻՖԼԻՍՈՒՄ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ [14]*

*«Հայաստանի կոմ(ունիստական) պարտիայի Արտա(սահմանյան) բյուրոն տեղեկացնում է Ձեզ, որ այստեղ կազմակերպված է Հայաստանի ԿՊ Կենտկոմ և հաստատված է ՌԿՊ Կենտկոմի կողմից։ Մինչև այժմ գոյություն ունեցող մյուս բոլոր «Կենտրոնները», ղեկ(ավար) օրգանները համարվում են վերացված։*

*Հայտնում ենք, որ Դուք նշանակված եք ՀԿՊ Կենտկոմի ներկայացուցիչ Թիֆլիսում Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների հետ կապ պահպանելու համար։ Այն բոլոր ընկերները, որոնք ընդհատակյա աշխատանքի համար մեր կողմից կգործուղվեն Հայաստան և կանցնեն Թիֆլիսով, կկապվեն միայն Ձեզ հետ։ Դուք ձեր կողմից սերտ կապ պահպանեցեք Հայաստանի հետ։ Ձեզ իրավունք է վերապահվում Ձեր հայեցողությամբ աշխատողներ ուղարկել Հայաստան, իհարկե, այդ մասին մեզ իրազեկ պահելով հանգերձ, որ մենք իմանանք, թե քանի ընկ(եր է) ուղարկված, ովքեր, ուր, որ շրջանը և ինչ աշխատանքի։*

*Այդ առաջադրանքի կատարման համար անհրաժեշտ դրամական միջոցներ մենք ձեզ կուղարկենք։ Հայտնեցեք, թե սկզբնական ժամանակի համար ինչքան փող է անհրաժեշտ (մոտավորապես)։ Ձեզ հանձնարարվում է հաշվետվություններ պահանջել այն ընկերներից, ովքեր մինչև այժմ զբաղվում են այդ աշխատանքով և այդպիսիք ուղարկել են մեզ։ Պարզել նաև (ըստ հնարավորին) Հայաստանում գնդակահարված ընկերների ստույգ ցուցակը, ձեռք բերել նրանց լուսանկարները և ընդհանրապես լրիվ ինֆորմացիա տալ Հայաստանի վերաբերյալ։*

*Կապվեցեք նաև ընկ. Լեգրանի [15] հետ, պարզեցեք, թե այդ նպատակի համար ունեցած փողից ինչքան է ուղարկված Հայաստան։*

*Ուղարկում ենք Ձեզ մանդատ, միայն թե Արտ(ասահմանյան) բյուրոյի կնիքով, որովհետև Կենտկոմի կնիքը դեռևս պատրաստ չէ։*

*Կոմբարևներով՝*

*Ա. Նուրիջանյան*

*Հ. Կոստանյան»։*

*29. VIII—20 թ., քաղ Բաքու*

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4049, գ. 15, ցուց. 1, թ. 1—4։*

## № 9

### 1920 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐ.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ԱՇԽԱՏԱԿԻՑՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ

| №№ ԱԶԳԱՆՈՒՆ ԵՎ ԱՆՈՒՆ | ՊԱՇՏՈՆԸ |
|---|---|
| 1. Կոստանյան Հայկազ | Բյուրոյի անդամ |
| 2. Ամիրխանյան Շավարշ | » |
| 3. Նուրիջանյան Ավիս | » |
| 4. Ուլիբեկյան Լևոն | » |
| 5. Շամախյան Եղիշե | քարտուղար |
| 6. Տեր-Պետրոսյան Հայկ | գործավար |
| 7. Սուրենյան Սուրեն | հաշվապահ |
| 8. Նովիկովա Պիլագեյա | մեքենագրուհի |
| 9. Կուտով Միխայիլ | ցրիչ-սուրհանդակ |
| 10. Կոստանդինյան Գերասիմ [17] | էքսպեդիտոր |
| 11. Բաղդասարյան Լևոն | կառապան |
| 12. Դավթյան Սարգիս | ձիապան |

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 944, կապ. 10, ցուց. 1, թ. 145։*

## № 10

### 1920 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 2.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ՆԱՄԱԿԸ Ս. ՏԵՐ-ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻՆ

Հայաստանի կոմունիստական
կազմակերպության
Արտասահմանյան բյուրո

Ընկեր Սահակ.

Հայաստանի կոմպարտիայի Արտասահմանյան բյուրոն ընկեր Ջավահիրի [18] (Արտգործմինիստր ընկ. Մ. Դ. Հուսեյնովի անձնական քարտուղարի) միջոցով փողով և նամակով Թիֆլիս մի ծրար է ուղարկել՝ Թիֆլիսի մեր ներկայացուցիչ ընկ. Շահսուվարյանին [19] հանձնելու համար: Ընկ. Մռավյանի հաղորդմամբ ընկ. Շահսուվարյանը բացակայում է.

Հայաստանի կոմպարտիայի Արտ. բյուրոն խնդրում է Ձեզ այդ ծրարն ստանալ ընկ. Ջավահիրից: Նիկոլաևյան փողերով հարյուր հազար ռուբլի կազմող այդ փողը անհրաժեշտ է անհապաղ ուղարկել Երևան (շատ հուսալի մարդու միջոցով), իսկ ծրարներից մեկը պետք է հանձնել ընկ. Շահսուվարյանին, մյուսը՝ ընկ. Վարդանին[20], որին կարելի է գտնել Չերնեզովյան փողոց № 80-ում:

Ցանկալի է նիկոլաևյան դրամները Թիֆլիսում փոխանակել չեկերով, որովհետև ըստ ընկերների ասածների, Հայաստանում դա այնքան էլ հեշտ չէ:

Արտ. բյուրոյի անդամներ՝ Հ. Կոստանյան
Ավ. Նուրիջանյան

*2/IX—1920 թ, քաղ. Բաքու.*
*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4049, գ. 15, կապ. 1, թ. 8—9*

## № 11

### 1920 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 21.—ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՑԵՆՏՐՈՊԵՉԱՏԻՆ

Հայաստանի կոմունիստական
կազմակերպության
Արտասահմանյան բյուրո
21 սեպտեմբերի 1920 թ.
№ 587
ք. Բաքու

ՑԵՆՏՐՈՊԵՉԱՏԻՆ

Հայաստանի կոմունիստական պարտիայի Արտասահմանյան բյուրոն



խնդրում է պահեստում եղած գրականությունից բաց թողնել Լենինի հոդվածների ժողովածուն, ինչպես նաև բերված գրականությունից [21]:

Արտասահմանյան բյուրոյի քարտուղար՝ Ե. Շամախյան

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 37։*

## № 12

### 1920 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 26.—ՇԱՎԱՐՇ ԱՄԻՐԽԱՆՅԱՆԻՆ ՏՐՎԱԾ ՄԱՆԴԱՏԸ

*20/IX—20 թ.*
*№ 4*

ՄԱՆԴԱՏ

Տրվում է սույնը ընկ. ՇԱՎԱՐՇԻՆ [22] առ այն, որ նա Հայաստանի կոմուն. պարտիայի Արտասահմ. բյուրոյի կողմից լիազորվում է ղեկավարելու պարտիական ամբողջ կոնսպիրատիվ աշխատանքը Ադրբեջանին սահմանակից շրջաններում: Հայաստանի կոմունիստական կազմակերպություններ իհետ առնչություն ունեցող տեղական ընկերները պետք է ղեկավարվեն նրա ցուցումով:

Արտասահմ. բյուրոյի անդամ

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 3։*

## № 13

### 1920 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 1.—ՌԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ԿԱԶՄԲՅՈՒՐՈՅԻ ՈՐՈՇՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԿԱԶՄԻ ՄԱՍԻՆ

*Համաձայն Կովկասյան բյուրոյի առաջարկության, հաստատել Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմը հետևյալ կազմով՝ ընկ. ընկ. Դովլաթով, Ավիս, Կոստանյան, Աղասի և վեցերորդ ընկ. Հայաստանում աշխատող ընկերների կազմից՝ Երևանի խմբի գիտությամբ: Թեկնածուներ՝ ընկ. ընկ. Ամիրխանյանին, Շահգելդյանին (Կառլ): Արտասահմանյան աշխատանքին վերաբերող բոլոր հարցերը Հայաստանում լուծվում են Կովկասյան բյուրոյի և ընկ. ընկ. Դովլաթյանի, Ավիսի և Կոստանյանի հետ համատեղ: Ընկ. Սահակ Տեր-Գաբրիելյանին Կենտկոմի մեջ չմտցնել, քանի որ նա Հայաստանում Ռուսաստանի ներկայացուցչության պատասխանատու աշխատող է։*

*Տես ՌԿ(բ)Պ Կենտկոմի կազմբյուրոյի 1920 թ. հոկտեմբերի 1-ի նիստի № 57 արձանագրությունը։*

## № 14

### 1920 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 19.—Ս. ԷՍԵԹՅԱՆԻՆ ՏՐՎԱԾ ՎԿԱՅԱԿԱՆԸ

ՎԿԱՅԱԿԱՆ

Հայաստանի կոմունիստական
կազմակերպության
Արտասահմանյան բյուրո
19/X 1920 թ.
№ 128

Տրվում է սույնը ընկ. Սարգիս էսեթյանին առ այն, որ նա իրոք Հայաստանի ԿՊ Սարիղամիշի կազմակերպության անդամ է, որը հաստատվում է ստորագրությամբ և կնիքի դրոշմամբ:

Հայաստանի ԿԿ անդամ,
Քարտուղար

*Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 890, կապ. 9, ցուց. 1, թ. 4։*

Պարտիական, պետական ու ռազմական կարևորագույն հարցերը լուծելիս նա հանդես էր բերում լենինյան սկզբունքայնություն և գործի խորիմացություն: Եվ ահա, Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կենտրոնական կոմիտեի պլենումը 1927 թվականի հուլիսին Հ. Հովսեփյանին ընտրում է կենտկոմի առաջին քարտուղար:

«Որքա՜ն մեծ ու պատասխանատու գործեր կան առջևում», խորհում էր Հովսեփյանը. ՀՍՍՌ ժողկոմսովետի նախագահ՝ Ս. Համբարձումյանի, պետպլանի նախագահ՝ Հ. Պողոսյանի, ժողտնտխորհի նախագահ Հ. Բալյանի և ռեսպուբլիկայի պարտիական ու պետական մյուս ղեկավարների հետ նա զբաղվում է առաջին հնգամյա պլանի մշակման հարցով: Այդ պլանը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման բուռն վերելքի, կուլտուրայի ու գիտության ծաղկման նոր վառ հեռանկարներ էր բացում Սովետական Հայաստանի աշխատավորության առջև: Վիթխարի ծրագրի իրագործումը պահանջում էր մեծ եռանդ, ջանքերի լարում և հաստատակամություն: 1927 թվականի օգոստոսին Խորհրդային Հայաստան թերթում տպագրված իր հոդվածում նա գրում է. «Միաձույլ պողպատյա շարքերով, լենինիզմի դրոշի տակ դեն շպրտելով այն ամենը, ինչ անկայուն և հիվանդագին է, վերացնելով սխալներն ու թերությունները, մեր կուսակցությունը (Հայաստանի կոմունիստական պարտիան—Ս. Ն.) առաջ կանցնի դեպի նոր հաջողություններ, դեպի նոր նվաճումներ»:

Սովետական Հայաստանն ընթանում է տնտեսական վերելքի ուղիով: Կենսագործելով Վ. Ի. Լենինի պատգամները, ծավալվում են երկրի էլեկտրիֆիկացման և ջրաշինարարության աշխատանքները: Երևանի հիդրոէլեկտրակայանը շահագործման հանձնելուց հետո սկսվում է Ձորագեսի ու Լենինականի էլեկտրակայանի կառուցումը: Հայ ժողովրդի ստեղծագործական վառ առօրյան խնդությամբ են երգում պոետն ու արձակագիրը, գուսանն ու կոմպոզիտորը:

Ամեն, ամեն տեղ, ուր վառ հնգաթև
Աստղն է շողշողում և կարմիր դրոշ,
Բռնկված են այս նոր ու մշտատև
Վերակառուցման սաստկացած հրով

*(Վ. Նորենց)*

Ներպարտիական սուր պայքարում Հ. Հովսեփյանը, հաստատ մնալով բոլշևիկյան դիրքերում, ձգտում է պահպանել պարտիայի միասնությունը, միաժամանակ անհաշտ պայքար մղելով բոլոր նրանց դեմ, ովքեր ցանկանում են պարտիան շեղել լենինյան ուղուց: «Լենինյան կուսակցությունը ուժեղ է ոչ միայն իր կազմակերպչական միասնականությամբ,—գրում է նա,— այլև անհաղթելի է իր շարքերի գաղափարական համախմբվածությամբ... Բանվոր դասակարգը միայն իր ավանգարդ, իր առաջնորդ կոմունիստական կուսակցության կազմակերպվածությամբ ու համախմբվածությամբ կարողացավ հաղթել գերազանց ուժ ունեցող իր թշնամուն, հակառակորդի կատաղի կրակի տակ իր ձեռքին պահել իշխանությունը, մաքրել խորհրդային երկիրը հակահեղափոխական ուժերի մնացորդներից և ապահովել խաղաղ սոցիալիստական շինարարության համար անհրաժեշտ պայմաններ»:

ՀԿ(բ)Պ V համագումարին տված կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընդգծելով ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողությունները, Հ. Հովսեփյանը կոչ է անում պարտիական կազմակերպություններին՝ գործի դնել բոլոր միջոցները, նոր բարձունքներ գրավելու համար: Այդ համագումարում էլ նա ընտրվում է ՀամԿ(բ)Պ XV համագումարի պատգամավոր:

ՀամԿ(բ)Պ կենտկոմի որոշմամբ 1928 թվականի կեսերին պարտիայի անձնվեր զինվոր Հ. Հովսեփյանը նորից պարտիական-քաղաքական ղեկավար աշխատանքի է անցնում Կարմիր բանակում: Սկզբում նա նշանակվում է Մերձվոլգյան ռազմական օկրուգի քաղաքական վարչության պետի տեղակալ, այնուհետև ղեկավար աշխատանք է վարում բանվորա-գյուղացիական կարմիր բանակի քաղաքական վարչությունում: 1935 թվականին Հայկ Ալեքսանդրի Հովսեփյանը նշանակվում է կարմիր բանակի քաղաքական վարչության պետի տեղակալ, նրան շնորհվում է բանակային երկրորդ կարգի կոմիսարի կոչում:

Այս պատասխանատու պոստում դրսևորելով իր ընդունակությունները և կազմակերպչական ձիրքը՝ Հ. Հովսեփյանը քաղաքական վարչության պետ Յա. Գամարնիկի և մյուս ղեկավար ընկերների հետ մեծ ջանքեր են գործադրում՝ կատարելագործելու պարտիական-քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները և այն ի սպաս դնելու զորքերի ուսուցման ու մարտունակության բարձրացման գործին:

Խիստ ծանրաբեռնված լինելով պարտիական ու պետական գործերով, իր հանգստի հաշվին Հ. Հովսեփյանը ժամանակ է գտնում դասախոսություններ ու զեկուցումներ կարդալու զինվորների, հրամանատարների համար, զինվորական ուսումնական հաստատություններում, հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների համար: Իր կրակոտ խոսքով նա հայրենասիրություն էր բորբոքում սովետական մարդկանց սրտերում, զինվորներին կոչ անում՝ հավատարիմ մնալ Լենինի դրոշին, միշտ լինել մարտական պատրաստ վիճակում:



Ինչպես ամենուրեք, այնպես էլ ՍՍՌՄ պաշտպանության ժողովրդական կոմիսարիատում Հ. Հովսեփյանը վայելում էր ողջ կոլեկտիվի սերն ու համակրանքը: Հարյուրավոր կոմունիստներ նրա նկատմամբ ցուցաբերելով վստահություն, որպես զգայուն ու սկզբունքային կոմունիստի՝ վեց տարի անընդմեջ ընտրում են պաշտպանության ժողկոմատի պարտիական կազմակերպության կենտրոնական բյուրոյի (պարտիական կոմիտեի) առաջին քարտուղար:

Հ. Հովսեփյանը մեծ կարևորություն էր տալիս կադրերի ընտրությանն ու դաստիարակությանը: Այս գործում ցուցաբերելով կոմունիստական սկզբունքայնություն և օբյեկտիվություն, նա մարդկանց առաջին հերթին գնահատում էր ըստ նրանց քաղաքական ու գործնական հատկանիշների, միաժամանակ կադրերի նկատմամբ ցուցաբերելով զգայուն և հոգատար վերաբերմունք:

Պարտիական, պետական, զինվորական այդ նշանավոր գործիչը օժտված էր հմայիչ բնավորությամբ, աչքի էր զարնում մարդկանց նկատմամբ ցուցաբերած զգայուն վերաբերմունքով և համեստությամբ: Լինելով օրինակելի ամուսին, նա միշտ մտահոգված էր որդու կրթությամբ ու դաստիարակությամբ: Նրա միակ տղան զոհվեց Հայրենական մեծ պատերազմում:

Անսահման սիրելով երաժշտությունը, արվեստն ու գրականությունը Հ. Հովսեփյանն ընկերների ու հարազատների շրջապատում խոր զգացմունքներով արտասանում էր Ջ. Բայրոնի, Ա. Պուշկինի, Հ. Հայնեի, Մ. Լերմոնտովի, Հ. Թումանյանի, Վ. Տերյանի, Հ. Հակոբյանի բանաստեղծությունները՝ հատուկ փայլով կատարում էր դասական կոմպոզիտորներ Պ. Չայկովսկու, Մ. Գլինկայի, Ջ. Վերդիի, Մ. Մուսորսկու, Լ. Բեթհովենի, Ա. Սպենդիարյանի օպերաների հայտնի մեներգները:

Հ. Հովսեփյանը լավ գիտեր գրաբար: Հաճախ հոգնած ժամանակ վերցնում էր Նարեկացու և միջնադարյան մյուս տաղերգուների ստեղծագործությունները ու կարդում: Երբ բարեկամները նրան ասում էին՝ ոչինչ չենք հասկանում, նա պատասխանում էր.

— Ափսոսում եմ, որ դուք չեք հասկանում. սրանք հայ ժողովրդի կուլտուրայի գանձերից են:

Հանդիսանալով պարտիական, պետական ու ռազմական խոշոր գործիչ, Հ. Հովսեփյանը միշտ էլ եղել է սկզբունքային, շիտակ և շնորհալի լրագրող: Երբ թերթում ես *Кавказский рабочий*, Բանվորի կռիվը, Կարմիր զինվոր, Խորհրդային Հայաստան լրագրերի, Կոմունիստ (հայերեն), Լենինյան ուղի (1928 թ.), Պահակ, Կարմիր մարտիկ, *Коммунист РККА* ամսագրերի կոմպլեկտները, հետաքրքրությամբ ես կարդում պարտիայի պատմության, ընթացիկ քաղաքականության, ներպարտիական պայքարի, սոցիալիստական շինարարության, զորքերի մարտական ու քաղաքական պատրաստության հարցերին նվիրված նրա բազմաթիվ հոդվածները: Այդ հոդվածները գրված են բոլշևիկյան գաղափարայնությամբ, գեղեցիկ ոճով, ժամանակի և օրվա շնչով, հույզերով ու զգացմունքներով: Դրանցից շատերն այժմ էլ որոշ արժեք են ներկայացնում: Դրանցում ցայտուն կերպով դրսևորված է Հ. Հովսեփյանի համոզմունքն այն մասին, որ մարքս-լենինյան գաղափարներն ամենահաղթ են, ապագան կոմունիզմին է պատկանում:

Հայկ Հովսեփյանը լենինյան սերնդի անբասիր և անձնուրաց առաջամարտիկներից էր: Այդ պայծառ, համեստ, շնորհալի և ազնիվ մարդու սիրտը դադարեց բաբախելուց իր կյանքի ծաղկման և բուռն ստեղծագործական շրջանում: Նա ևս դարձավ անհատի պաշտամունքի զոհը:

Բոցաշունչ բոլշևիկ, բյուրեղյա կոմունիստ Հ. Հովսեփյանի հիշատակը իրենց սրտերում միշտ վառ կպահեն ՍՍՌՄ աշխատավորներն ու նրա մարտական ընկերները:

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ

# ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԷՏԱՊԸ

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*Ոչ միայն մեկ հոդվածում, այլև մի քանի տասնյակ հատուկ ուսումնասիրություններում հազիվ թե հնարավոր լինի լիովին լուսաբանել գիտական կոմունիզմի տեսության զարգացման այն դարակազմիկ շրջանը, որ կապված է Վ. Ի. Լենինի անվան հետ: Այդ իսկ պատճառով, բնավ հետամուտ չլինելով շոշափելու կամ քննելու մատերիալիստական դիալեկտիկայի և պատմական մատերիալիզմի բնագավառներում Վ. Ի. Լենինի մուծած հարուստ ավանդը, այստեղ կանգ կառնենք գիտական կոմունիզմի տեսության միայն մի քանի հարցերի վրա, որոնք առավել կարևոր ու որոշիչ նշանակություն են ձեռք բերել արդի դարաշրջանում՝ համաշխարհային ռևոլյուցիոն շարժման աննախընթաց ծավալման, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում:*

***

Կ. Մարքսը Ֆոյերբախի մասին թեզիսներում գրում էր. «Փիլիսոփաները միայն տարբեր կերպով բացատրել են աշխարհը, բայց խնդիրն այն փոխելն է»: Վ. Ի. Լենինը բոլորից ավելի խոր յուրացրեց մարքսիզմի այս դրույթը և այն դարձրեց իր կյանքի գլխավոր նշանաբանը: Իլյիչի ամբողջ կյանքն ու գործունեությունը մարքսիստական ուսմունքի ստեղծագործական զարգացման և աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման մի փայլուն ու անկրկնելի օրինակ է: Վ. Ի. Լենինի անձնավորության մեջ հանճարեղ գիտնականի և բոցաշունչ ռևոլյուցիոների գծերի միահյուսումը նշանակալի չափով բացատրվում է նրա անձնական հատկություններով: Բայց անտարակուսելի է, որ այդպիսի հանճարեղ անձնավորության երևան գալը պայմանավորված էր համապատասխան պատմական դարաշրջանով: Վ. Ի. Լենինը իր տեսական և գործնական ռևոլյուցիոն գործունեությունն սկսեց այն ժամանակ, երբ կապիտալիզմը վերաճում էր իր բարձրագույն ու վերջին ստադիային՝ իմպերիալիզմին: Նա բազմակողմանի հետազոտեց և բացահայտեց մոնոպոլիստական կապիտալիզմի այն էական գծերը, որոնք գոյություն չունեին Մարքսի և Էնգելսի կենդանության ժամանակ, կամ նոր էին սկսել դրսևորվել: Եվ Վ. Ի. Լենինը միանգամայն ստեղծագործաբար մոտեցավ Մարքսի և Էնգելսի ստեղծած գիտական կոմունիզմի տեսությանը:

Արդեն իր առաջին աշխատություններից մեկում՝ «Մեր ծրագիրը» հոդվածում Վ. Ի. Լենինը գրում էր. «Մենք ամբողջովին կանգնած ենք Մարքսի թեորիայի հողի վրա. այդ թեորիան առաջին անգամ սոցիալիզմը ուտոպիայից վերածեց գիտության, սահմանեց այդ գիտության ամուր հիմքերը և նշեց այն



ուղին, որով պետք է ընթանալ՝ էլ ավելի զարգացնելով այդ գիտությունը և մշակելով այն իր բոլոր մանրամասնություններով... Մենք Մարքսի թեորիայի վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. մենք համոզված ենք, ընդհակառակը, որ այն դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որ սոցիալիստները պետք է առաջ շարժեն բոլոր ուղղություններով...» (Երկեր, հ. 4, էջ 260, 262): Վ. Ի. Լենինը պատվով ու մեծ վարպետությամբ լուծեց այդ պատմական խնդիրը: Նա զարգացրեց մարքսիզմը և նոր, փայլուն դրույթներով հարստացրեց այն, որովհետև նա խորապես տիրապետում էր մատերիալիստական աշխարհայացքին և դիալեկտիկական մեթոդին:

Գիտական ուսումնասիրության լենինյան մեթոդի բնորոշ գիծը փաստական նյութի համակողմանի ուսումնասիրությունն ու մշակումն է, ռեալ իրականության երևույթների կոնկրետ վերլուծությունը: Նա մշտապես հետևում էր դիալեկտիկական տրամաբանության այն կարևորագույն սկզբունքին, որ վերացական ճշմարտություն չկա, ճշմարտությունը միշտ կոնկրետ է: Հենց այդ գիտական մեթոդն էլ Վ. Ի. Լենինին հնարավորություն տվեց ընդհանրացնել իր ժամանակաշրջանի կապիտալիզմի նոր երևույթները, բացահայտել իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական էությունը, որոշել ճնշված մասսաների ռևոլյուցիոն շարժման ու դասակարգային պայքարի բնույթը, նշել սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և նոր հասարակարգի կառուցման հեռանկարները:

Բանվոր դասակարգի և նրա պարտիայի ռևոլյուցիոն պայքարի, սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման ուղիների, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հարցերը գիտական կոմունիզմի տեսության կենտրոնական պրոբլեմներն են: Մարքսը և Էնգելսը ժամանակին շարադրել էին այդ տեսության հիմնական դրույթները, որպիսիք Վ. Ի. Լենինը պաշտպանեց ռեֆորմիստների, ռևիզիոնիստների և դոգմատիկների ոտնձգություններից, ստեղծագործաբար զարգացրեց դրանք և հիմնավորեց բազմաթիվ նոր սկզբունքային դրույթներ:

Վ. Ի. Լենինն առանձնապես մեծ երախտիք ունի սոցիալիստական ռևոլյուցիայի տեսության ստեղծման ասպարեզում: Մարքսը և Էնգելսը հիմնավորել էին այն դրույթը, որ սոցիալական ռևոլյուցիան իր մեջ ընդգրկում է հասարակության բազիսի և վերնաշենքի հեղաշրջումը, նրա նյութական և գաղափարական հարաբերությունների առումով: Խեղաթյուրելով մարքսիզմի այդ դրույթը, ռեֆորմիստներն սկսել էին հավասարության նշան դնել սոցիալական ռևոլյուցիայի և տեխնիկական ռևոլյուցիայի միջև: Նրանք պնդում էին և պնդում են, թե տնտեսական և քաղաքական ռևոլյուցիան ավտոմատիկ կերպով հաջորդում է տեխնիկայի բնագավառում կատարված ռևոլյուցիային:

Հակառակ ռեֆորմիստների հայացքներին, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ սոցիալական ռևոլյուցիայի վճռական կողմը և պայմանը քաղաքական ռևոլյուցիան է: Ընդսմին նա ընդգծում էր, թե այդ ռևոլյուցիայի առանցքը պետական իշխանության հարցն է: «Պետական իշխանության անցումը մի դ ա ս ա կ ա ր գ ի ց մյուսի ձեռքը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ռևոլյուցիայի առաջին, գլխավոր և հիմնական հատկանիշն է այս հասկացողության ինչպես խիստ-գիտական, այնպես էլ գործնական-քաղաքական նշանակությամբ» (Երկեր, հ. 24, էջ 31):

Վ. Ի. Լենինը տվել է քաղաքական իշխանության նվաճման ձևերի բազմազանության հարցի իսկական դիալեկտիկական լուծումը: Դեռևս 1899 թվականին գրած «Հետընթաց շարժում ռուսական սոցիալ-դեմոկրատիայի մեջ» հոդվածում նա հայտնեց այն միտքը, որ պրոլետարիատը, նայած կոնկրետ պատմական իրադրությանը, կարող է քաղաքական իշխանությունը նվաճել ինչպես բռնի, այնպես էլ խաղաղ ճանապարհով: «Ահա թե ինչու,— գրում է նա,— «բանվորական սոցիալիզմի» ծրագիրն էլ խոսում է ընդհանրապես քաղաքական իշխանության նվաճման մասին, չորոշելով այդ նվաճման եղանա-

կը, որովհետև այդ եղանակի ընտրությունը կախված է ապագայից, որը մենք չենք կարող ճշգրտորեն որոշել (Երկեր, հ. 4, էջ 349)։ Հենց այդտեղ էլ Վ. Ի. Լենինն ընդգծում է, որ սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ բանվոր դասակարգը հետապնդում է ամենամարդասիրական իդեալներ, որ նա «...կգերադասեր խաղաղ կերպով իր ձեռքը վերցնել իշխանությունը» (նույն տեղը)։ Իսկ քաղաքական իշխանության նվաճման բռնի ճանապարհը, ինչպես մատնանշում էր նա, պայմանավորված է բուրժուազիայի ցույց տված զինված դիմադրությամբ։ Այդ պայմաններում պրոլետարիատը հարկադրված է բռնությամբ պատասխանել բռնությանը։

Քաղաքական իշխանության խաղաղ նվաճման հնարավորության մասին Վ. Ի. Լենինը մատնանշում էր նաև փետրվարյան ռևոլյուցիայից մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիա ընկած ժամանակաշրջանի համար։ Բայց Ռուսաստանի բուրժուազիան, ինչպես նաև մյուս հակառևոլյուցիոն ուժերը, հարկադրեցին պրոլետարիատին իշխանությունը նվաճել զենքի ուժով։ Հայտնի է նաև, որ ժողովրդական դեմոկրատիայի մի շարք երկրներ սոցիալիստական ռևոլյուցիայի էտապն անցել են խաղաղ, իսկ որոշ երկրներ էլ զինված պայքարի միջոցով։

Այսպիսով, քաղաքական իշխանությունը պրոլետարիատի կողմից նվաճելու պատմական փորձը լիովին հաստատել է սոցիալիստական ռևոլյուցիայի բազմազանության լենինյան տեսությունը, որն առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում արդի ժամանակաշրջանում։ Պատահական չէ, որ լենինյան այդ հանճարեղ դրույթն իր հաստատումն ու հետագա զարգացումն է գտել կոմունիստական և բանվորական պարտիաների ծրագրային փաստաթղթերում, ՍՄԿՊ նոր ծրագրում։

Զարգացնելով սոցիալիստական ռևոլյուցիայի տեսությունը Վ. Ի. Լենինը ելնում էր ոչ թե վերացական ու տրամաբանական եզրահանգումներից, այլ բանվոր դասակարգի և բոլոր ճնշված մասսաների ռևոլյուցիոն շարժման փորձի վերլուծությունից։ Հայտնի է, որ համաշխարհային ռևոլյուցիոն շարժման պատմական կարևորագույն էտապներից մեկը եղել է 1905 թվականի ռևոլյուցիան Ռուսաստանում։ Ելնելով առաջին ռուսական ռևոլյուցիայի փորձից, Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն զարգացրեց ռևոլյուցիայի բնույթի և շարժիչ ուժերի, պրոլետարիատի հեգեմոնիայի, բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության դաշինքի, լիբերալ բուրժուազիային մեկուսացնելու և բուրժուական ու սոցիալիստական ռևոլյուցիաների մյուս բոլոր մոմենտների վերաբերյալ կարևոր դրույթներ։

Անգնահատելի մեծ նշանակություն ունի Վ. Ի. Լենինի հիմնավորած այն գիտական դրույթը, որ «պրոլետարիատը մինչև վերջը պետք է կենսագործի դեմոկրատական հեղաշրջումը, իրեն միացնելով գյուղացիության մասսան, որպեսզի ուժով ճզմի ինքնակալության դիմադրությունը և չլատի բուրժուազիայի անկայունությունը։ Պրոլետարիատը պետք է սոցիալիստական հեղաշրջում կատարի, իրեն միացնելով բնակչության կիսապրոլետարական տարրերի մասսան, որպեսզի ուժով կոտրի բուրժուազիայի դիմադրությունը և չլատի գյուղացիության ու մանրբուրժուազիայի անկայունությունը» (Երկեր, հ. 9, էջ 114)։

Վ. Ի. Լենինի մեծագույն երախտիքներից մեկն այն է, որ նա հայտնագործեց պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան, որպես բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու քաղաքական ձև։

Գիտական կոմունիզմի տեսության ոսկե ֆոնդի մեջ է մտել մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի վերաբերյալ լենինյան դրույթը։ Հայտնի է, որ դրանից առաջ մարքսիզմի մեջ գերակշռում էր այն կարծիքը, թե սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը հնարավոր է միայն բոլոր կապիտալիստական երկրներում կամ դրանց մեծ մասում։ Վ. Ի. Լենինը, ղեկավարվելով մարքսիստական տեսությամբ, ստեղծագործաբար այն կիրառեց ռեալ իրականության, իր պատմական դարաշրջանի կյանքի



նկատմամբ։ Նա համակողմանիորեն հետազոտեց կապիտալիզմի արդի ստադիան՝ իմպերիալիզմը, և բացահայտեց նրա տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը։ Դրանից նա բխեցրեց այն օբյեկտիվ նախապայմանը, որ իմպերիալիստական շղթայի մեջ հնարավոր է թույլ օղակի առաջացում, ինչպես նաև հնարավոր է այդ շղթան ճեղքել մեկ, առանձին վերցրած երկրում։

Հետևելով Մարքսին, Վ. Ի. Լենինն ընդգծում էր այն միտքը, որ մեկ երկրում սոցիալիզմի տարած հաղթանակը կազմում է համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի ընդհանուր հաղթանակի մի մասը, որ համաշխարհային իմպերիալիզմի դեմ հաղթանակ տանելու համար հարկավոր է միացնել բոլոր երկրների կամ գոնե դրանց մեծ մասի պրոլետարիատի ջանքերը։ Բայց միաժամանակ զարգացնելով ռևոլյուցիայի մարքսիստական թեորիան, Վ. Ի. Լենինը հանգեց այն եզրակացության, որ իմպերիալիզմն իրենից ներկայացնում է սոցիալիստական ռևոլյուցիայի նախօրյակ, որ նրա զարգացման անհամաչափությունը խախտում է սոցիալիստական ռևոլյուցիայի միաժամանակ հասունացումը տարբեր երկրներում։ Խոսելով իմպերիալիզմի անհամաչափ զարգացման, նրա հակասությունների սրման և մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորության մասին, Վ. Ի. Լենինը ամենևին էլ դա չէր կապում պատերազմի հետ։ Ընդհակառակը, նա հատկապես ընդգծել է, որ ռևոլյուցիան չի կարելի բերել սվիններով։ Պատերազմն ինքնըստինքյան չի կարող ռևոլյուցիա ծնել, եթե տվյալ երկրում դեռևս չեն ստեղծվել նրա օբյեկտիվ և սուբյեկտիվ անհրաժեշտ նախադրյալները։

Ուստի Վ. Ի. Լենինը առաջ քաշեց և հիմնավորեց ռևոլյուցիոն սիտուացիայի վերաբերյալ դրույթը։ Նա մատնանշում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար դեռ բավական չէ կոնֆլիկտի առկայությունն արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև։ Այդ կոնֆլիկտը ռևոլյուցիայի լոկ օբյեկտիվ տնտեսական հիմքն է, իսկ ռևոլյուցիայի հաղթանակի համար անհրաժեշտ են նաև սուբյեկտիվ նախադրյալներ։ Վ. Ի. Լենինն ուսուցանում էր, որ սուբյեկտիվ գործոնը չի սպառվում միայն բանվոր դասակարգի պարտիայի առկայությամբ։ Այն ենթադրում է նաև բանվոր դասակարգի մեծամասնության քաղաքական գիտակցականության և կազմակերպվածության բարձր մակարդակ, բանվոր դասակարգը պետք է պատրաստակամություն ունենա ամեն տեսակ զոհողությունների գնով իրականացնելու հեղաշրջումը և իր ձեռքը վերցնելու պետական իշխանությունը։ Պարտադիր սուբյեկտիվ գործոն է նաև ոչ պրոլետարական աշխատավորական մասսաների լայն խավերի ակտիվ աջակցությունը պրոլետարիատին և նրա կոմունիստական ավանգարդին։ Միայն այդ բոլոր սուբյեկտիվ և տնտեսական նախադրյալների զուգակցումն է ստեղծում ռևոլյուցիայի անհրաժեշտ օբյեկտիվ քաղաքական հիմքը, այսինքն՝ ռևոլյուցիոն սիտուացիան։

Հետազոտելով այդ բոլոր օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները, Վ. Ի. Լենինը տվեց հետևյալ հանճարեղ եզրակացությունը։ «Ռևոլյուցիայի համար բավական չէ, որ շահագործվող և ճնշվող մասսաները գիտակցեն հին ձևով ապրելու անհնարինությունը և պահանջեն փոփոխություններ. ռևոլյուցիայի համար անհրաժեշտ է, որ շահագործողները չկարողանան ապրել և կառավարել հին ձևով։ Միայն այն ժամանակ, երբ «ներքնախավերը» չեն ուզում հինը և երբ «վերնախավերը» չեն կարող հին ձևով, միայն այն ժամանակ ռևոլյուցիան կարող է հաղթել (Երկեր, հ. 31, էջ 88)։ Վ. Ի. Լենինը հենց դրա մեջ էր տեսնում ռևոլյուցիայի հիմնական օրենքը։

Վ. Ի. Լենինի բացահայտած ռևոլյուցիայի հիմնական օրենքը առանձնահատուկ նշանակություն ունի արդի ժամանակաշրջանում բանվորական ռևոլյուցիոն շարժումը ճիշտ հասկանալու և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հեռանկարները որոշելու համար։ Կոմունիստական և բանվորական պարտիաների ծրագրային փաստաթղթերում և ՍՄԿՊ նոր ծրագրում նշված է այն կարևորագույն դրույթը, որ արդի ժամանակաշրջանում համաշխարհային

Տեսականորեն հիմնավորելով էկոնոմիկայի ըստ ամենայնի զարգացման անհրաժեշտությունը և աշխատանքի բարձր կազմակերպման նշանակությունը, Վ. Ի. Լենինը անձամբ գլխավորեց այդ խնդրի պրակտիկ կենսագործումը։ Իրեն հատուկ գործարարությամբ նա կարողացավ կազմակերպել տնտեսական շինարարության կարևորագույն խնդիրների իրականացումը իմպերիալիստական ինտերվենցիայի և ներքին հակառևոլյուցիայի բարդ պայմաններում։ Լենինյան իմաստությունը հնարավորություն տվեց դասակարգային կատաղի պայքարի, հետամնացության ու տնտեսական ավերվածության պայմաններում ազդարարել և իրականացնել նէպը, ուրվագծել խոշոր մեքենայական ինդուստրիայի ստեղծման, էլեկտրիֆիկացման, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, կուլտուրական ռևոլյուցիայի խորապես գիտական պլանը, կազմակերպել պարտիական և պետական օրգանների կուռ սիստեմ։

Այդ խնդիրների մշակումն ու կենսագործումը բարդանում էր նաև մեր երկրի բազմազգ կազմով։ Այս հարցում ևս Վ. Ի. Լենինը անգնահատելի ավանդ մուծեց գիտական կոմունիզմի թեորիայի մեջ։ Նա ցույց տվեց, որ ազգային հարաբերությունների զարգացման հիմնական տենդենցները պետք է լինեն ազգային ինքնագիտակցության զարթոնքը. մի կողմից ինքնուրույն պետականության, էկոնոմիկայի և կուլտուրայի ստեղծումը և մյուս կողմից՝ ազգերի մերձեցումը սոցիալիզմի ժամանակ դառնում է մի միասնական առաջադիմական պրոցես։ Մեր պարտիայի առաջին իսկ ծրագրում, որ մշակվել էր Վ. Ի. Լենինի անմիջական մասնակցությամբ, նշվել էին սոցիալիզմի հիմնական սկզբունքները ազգային հարցում, որոնց հիման վրա էլ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ստեղծվեց բազմազգ սովետական ֆեդերատիվ պետությունը։

Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ ազգերի լիկատար հավասարության համար դեռ բավական չէ քաղաքական իրավահավասարությունը։ Դեռ հարկավոր է բարձրացնել նրանց էկոնոմիկան և կուլտուրան։ Նա բացահայտեց սոցիալիզմի ժամանակ բոլոր ազգերի զարգացման մակարդակի հավասարման օբյեկտիվ օրինաչափությունը։ Մեր երկրում դա իր արտահայտությունը գտավ հատկապես այն անշահախնդիր օգնության մեջ, որ ռուս մեծ ժողովուրդը ցույց տվեց նախկինում հետամնաց մյուս ժողովուրդներին։ Վերջիններից շատերը, հատկապես արևելյան ռեսպուբլիկաներում, շրջանցելով զարգացման կապիտալիստական ստադիան, մի թռիչք կատարեցին նահապետական-ֆեոդալական հարաբերություններից դեպի սոցիալիզմ։ Այդ մասին են վկայում հենց նրանց տնտեսական զարգացման հաջողությունները։ Եթե Սովետական Միության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է մոտ 47 անգամ, ապա Միջին Ասիայի ռեսպուբլիկաներում՝ ավելի քան 60 անգամ։ Հանրահայտ են մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների նվաճումները կրթության և կուլտուրայի բնագավառներում։ Այդ ամենը հնարավոր դարձավ միայն սոցիալիզմի պայմաններում գիտական կոմունիզմի մարքս-լենինյան տեսության հիման վրա։

Հաջողությամբ իրականացնելով հասարակության սոցիալիստական վերափոխման լենինյան պլանը, ՍՄԿՊ-ն ապահովեց սոցիալիզմի լիակատար հաղթանակը մեր երկրում և ձեռնամուխ եղավ կոմունիզմի ծավալուն կառուցմանը։ Էկոնոմիկայի և հասարակական կյանքի մյուս կողմերի ղեկավարման լենինյան սկզբունքների զարգացման ասպարեզում առանձնահատուկ նշանակություն ունի ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանը։ Պարտիան խիստ դատապարտեց Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում տնտեսության դեմոկրատական ղեկավարման լենինյան սկզբունքների խախտումները։ Պարտիան իր XX համագումարից հետո հսկայական միջոցառումներ իրականացրեց անհատի պաշտամունքի հետևանքները վերացնելու, դեմոկրատիան զարգացնելու, սոցիալիստական օրինականությունն ամրապնդելու, տասնյակ միլիոն հեկտար խոպան հողեր յուրացնելու, արդյունաբերության և շինարարության ղեկավարումը վերակառուցելու, կոլտնտեսային կարգը զարգացնելու, ժողովրդական կրթության սիստեմը վերակառու-



ցելու և այլ բնագավառներում։ Ունենալով, հիրավի, պատմական նշանակություն, այդ միջոցառումները ոչ թե անջատ, իրար հետ չկապված ակտեր էին, այլ կազմում էին մի միասնական շղթայի օղակները։ Ապահովելով արտադրողական ուժերի հետագա զարգացումը, դրանք անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևակոխելու համար։

Այդ բոլոր սոցիալ-տնտեսական միջոցառումները կենսագործելիս, պարտիան խստորեն ղեկավարվում է գիտական կոմունիզմի տեսությամբ և ստեղծագործաբար զարգացնում է այն։ Այդ տեսության պսակը հանդիսացավ ՍՄԿՊ նոր ծրագիրը, որտեղ մշակված է կոմունիստական շինարարության հիմնական պլանը։ Գիտական կոմունիզմի տեսության մեջ կարևորագույն ավանդ հանդիսացան ՍՄԿՊ ծրագրի դրույթները սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և նյութական ու հոգևոր բարիքների բաշխման, սեփականության կոոպերատիվ-կոլտնտեսային և համաժողովրդական ձևերի զարգացման ու մերձեցման, կոմունիստական ինքնավարությանն անցնելու դիալեկտիկայի, սոցիալիստական հասարակական հարաբերությունների՝ կոմունիստականի վերածվելու օրինաչափությունների, նոր մարդու դաստիարակության դրույթները։

Համաշխարհային պատմական նշանակություն ունեն կոմունիզմին սոցիալիստական երկրների ավելի կամ պակաս միաժամանակյա անցման, տարբեր սոցիալ-քաղաքական սիստեմների խաղաղ գոյակցության, պատերազմների անխուսափելիության բացակայության և մեր ժամանակներում համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության գիտականորեն հիմնավորված դրույթները, արդի դարաշրջանի բնութագիրը և այլն։

Ստեղծագործաբար զարգացնելով մարքս-լենինյան տեսությունը, պարտիան ոչ միայն հայտնագործում է նոր օրինաչափություններ, այլև, ղեկավարվելով դրանցով, որոշում է հասարակության զարգացման ընդհանուր խնդիրներն ու կոնկրետ ուղիները։ Ընդսմին, պարտիան ելնում է գիտական կոմունիզմի այն դրույթից, որ չի կարելի կասեցնել առաջընթաց շարժումը, և հարկավոր է առաջ քաշել այնպիսի խնդիրներ, որոնց լուծման համար արդեն հասունացել և ստեղծվել են անհրաժեշտ նյութական և հոգևոր նախապայմաններ։ Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարների նկատմամբ այդպիսի փայլուն մոտեցում է դրսևորված ՍՄԿՊ XX և XXII համագումարների և Կենտկոմի վերջին պլենումների որոշումներում։ Պարտիայի հիմնական ուշադրությունը տնտեսական խնդիրների լուծման վրա սևեռելը կրկին անգամ վկայում է այն մասին, որ մեր երկրում հետևողականորեն իրագործվում է լենինյան այն դրույթը, որ տնտեսական գործը մեզ համար ամենահետաքրքրական քաղաքականությունն է։

Զարգացնելով լենինյան գաղափարները, Ն. Ս. Խրուշչովը բազմիցս ընդգծում է, որ կոմունիստական շինարարության մեջ գլխավորը էկոնոմիկան է, արտադրությունը, մարդու կյանքի համար նյութական և հոգևոր բարիքներ ստեղծելու պայքարը։

Ամենաարդար հասարակարգի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում և պարտիայի ու ժողովրդի բոլոր մեծագործություններում վառ փարոս է ծառայում գիտական կոմունիզմի հավերժ կենդանի ռևոլյուցիոն տեսությունը։



ժամանակաշրջանում պետության դերի, կառավարման լենինյան սկզբունքների և այլ հարցեր:

Ուսանելի է, որ ամսագիրն իր շատ էջերը նվիրում է Հայաստանի բոլշևիկների փառապանծ պատմության լուսաբանմանը: Հատկապես խրախուսելի է, և դաստիարակչական մեծ նշանակություն ունեն ռևոլյուցիոնականավոր գործիչների կյանքի, պարտիական և պետական գործունեության մասին հրապարակված հոդվածներն ու ակնարկները:

Սովետական մարդկանց հետաքրքրությունների շրջանակները մեր օրերում շատ և շատ ընդլայնվել են: Այսօր մեզանից յուրաքանչյուրը ձգտում է շատ բան իմանալ և շատ բաների մասին խորհել: Չէ՞ որ մենք ապրում ենք սոցիալական խոր հեղաշրջումների դարաշրջանում. Մենք ապրում ենք մի այնպիսի դարում, երբ գիտության ու տեխնիկայի արագընթաց վերելքը նոր, մեծ փոփոխություններ է մտցնում մեր առօրյա կյանքում, մեր արտադրական գործունեության մեջ, մեր նախկին ըմբռնումներում: Մեզանից յուրաքանչյուրն իրեն հուզող հարցերի պատասխաններն առաջին հերթին փնտրում է իր սիրած թերթում, ամսագրում և պարբերականում:

Ինձ, ինչպես և «Լենինյան ուղիով»-ի շատ ընթերցողների հետաքրքրում են կապիտալիստական երկրներում վերջին տասնամյակների տնտեսական, քաղաքական զարգացման յուրահատկությունները, անկախություն ստացած նախկին գաղութային երկրների առաջընթացի ուղիները, ազգային-ազատագրական շարժումների արդի էտապի բնորոշ կողմերը, բուրժուական գաղափարախոսության ճգնաժամի և նրա դրսևորման ձևերը: Մեզ համար տեսական և գործնական մեծ նշանակություն ունի հատկապես սոցիալիզմից կոմունիզմին անցման կոնկրետ պրոբլեմների գիտական լուսաբանումը: Այսօր մեզ համար կենսական են հասարակական և անձնական շահերի, արտադրության մեջ բարոյական և նյութական խթանների ճիշտ զուգակցման, հանրային և անձնական սեփականության, հասարակության անդամների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճի, գյուղում հասարակական հարաբերությունների կատարելագործման, կոմունիստական կենցաղավարության հարցերը: Մենք լուրջ սպասելիքներ ունենք. և հուսով ենք, որ ամսագիրը կդառնա էլ ավելի բովանդակալից ու գրավիչ:

Պ. ՍԱՖՅԱՆ

*Սիսիանի արտադրական վարչության*
*պարտիական կոմիտեի քարտուղար*



### ...ԵՎ ՄԵՆՔ ՍԻՐՈՎ ԿԿԱՐԴԱՆՔ

Մեզանից յուրաքանչյուրը, երբ ստանում է ամսագրի թարմ համարը, առաջին հերթին կարդում է այն, ինչ վերաբերում է իրեն: Այս տեսակետից մեզ՝ ուսուցիչներիս մեծ ուրախություն պատճառեց և մենք շատ օգտակար բան քաղեցինք «Չկաշկանդենք ուսուցչին» խորագիրը կրող հոդվածից և դրա շուրջ համարյա մեկ տարի շարունակվող բանավեճից: Ըստ էության ամսագիրը լայն հասարակայնության դատին էր ներկայացրել խիստ այժմեական և կենսահույզ մի հարց. ինչո՞ւմն է կայանում սովետական ուսուցչի դերը: Հեռնությունը մեկն էր՝ որքան առաջադիմում է կյանքը, այնքան ավելի լուրջ խնդիրներ են դրվում ուսուցչության առաջ: Այսօր մեզանից պահանջվում է կյանքի ավելի խոր իմացություն, գիտելիքների ավելի մեծ պաշար, քան մի երկու տասնամյակ առաջ էր: Մենք մեր դերը կարող ենք պատվով կատարել, եթե ստեղծագործաբար մոտենանք մեր գործին: Հուսով ենք, որ ամսագրի խմբագրությունն այսուհետև ևս կարծիքների լայն փոխանակություն կծավալի ժողովրդական կրթության, մատաղ սերնդի դաստիարակության պրոբլեմների շուրջ:

Իմ, ինչպես և մեր դպրոցի շատ ուսուցիչների ցանկությունն է ամսագրի առաջիկա համարներից մեկում կարդալ մի լուրջ, վերլուծական հոդված աշխատանքային դաստիարակության վերջին տարիներին կուտակված փորձի մասին: Անհրաժեշտ է խիստ դնել աշխատանքային դաստիարակության նյութատեխնիկական բազայի ստեղծման հարցը: Այդ բազայի, ինչպես նաև աշխատանքային ուսուցման մասին որոշ ընկերների մոտ եղած աղոտ պատկերացումները երբեմն հանգեցնում են լուրջ խեղաթյուրումների: Առանձին տեղերում առանց անհրաժեշտության, տեղին ու անտեղին աշակերտներին կտրում են ուսուցման պրոցեսից և պարտադրում մասնակցել գյուղատնտեսական արտադրության այս կամ այն գործին, որը բնավ էլ չի օգնում ո՛չ ուսուցմանը և ոչ էլ արտադրությանը:



Ինձ և իմ աշխատանքային ընկերներին հուզում է նաև ուսուցչի հեղինակության հարցը. Իհարկե, մենք գիտենք, որ ինչպես ամեն մի մարդու, այնպես էլ ուսուցչի հեղինակությունը առաջին հերթին կախված է հենց իրենից: Բայց և կան դեռ հնում ծնունդ առած և այսօր էլ պահպանվող մի շարք երևույթներ, որ չեն նպաստում ուսուցչի հեղինակության բարձրացմանը: Դեռևս մեր շարքերում կան այնպիսիները, որոնք իրենց սպրելակերպով ու վարքագծով արատավորում են ուսուցչի կոչումը, բայց նրանց ոչ ոք ձեռք չի տալիս: Սպասում ենք մի լավ հոդվածի՝ ուսուցչի հեղինակության և արժանապատվության մասին:

Մեզանից ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ վերջին տասնամյակներում գյուղն արմատապես փոխվել է, փոխվել են նաև մարդիկ: Գյուղական ինտելիգենցիան այսօր վճռական ուժ է դարձել: Սակայն մեր մամուլը, այդ թվում և «Լենինյան ուղիով» ամսագիրը դեպքից-դեպք են անդրադառնում այս հարցերին: Տպագրեցեք ավելի շատ հոդվածներ ու ակնարկներ գյուղում կատարված կուլտուրական նոր տեղաշարժերի, գյուղական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչների կյանքի ու աշխատանքի մասին, որպիսիք մենք սիրով կկարդանք:

Ծ. ԽԻՋԱՆՅԱՆ

*Աբովյանի շրջանի Գեղադիր գյուղի*
*8-ամյա դպրոցի ուսուցչուհի*

### ՕԳՆԵԼ ԽՈՐԱՆԱԼ ՀԱՐՑԵՐԻ ՄԵՋ

Երկար տարիներ, իբրև պրոպագանդիստ, վարել եմ տարբեր խմբակներ: Այժմ ղեկավարում եմ Լենինականի «ՍԿԲ պրոմպրիբոր» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոյի մարքսիստական փիլիսոփայության հիմունքներն ուսումնասիրող սեմինարը, ուր ընդգրկված են բարձրագույն տեխնիկական կրթությամբ երիտասարդ մասնագետներ, որոնք մշակում են վանապան էլեկտրոնային սարքեր:

Պրոպագանդիստական գործունեության պրակտիկան ինձ կապել է տեսական ամսագրերի, այդ թվում և ՀԿՊ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագրի հետ, որտեղ ես, ինչպես և սեմինարի ունկնդիրները գտնում ենք մեզ հետաքրքրող տեսական շատ հարցերի պարզաբանումն ու վերլուծությունը: Մարքսիստական փիլիսոփայության հիմունքների ուսումնասիրությունը մեր սեմինարի ունկնդիրների առջև դնում է մի շարք խնդիրներ, որոնց մասին կցանկանայինք կարդալ «Լենինյան ուղիով»-ի էջերում: Դրանք հիմնականում հետևյալներն են՝

Ժամանակակից բնագիտության փիլիսոփայական պրոբլեմները, նորանոր տեղեկություններ նյութի հայտաբերված տարրական մասնիկների փոխադարձ կապի և փոխակերպության մասին. հոդվածներ ժամանակի ու տարածության հետ կապված Էյնշտեյնի հարաբերականության տեսության հարցերի, արհեստական արբանյակների միջոցով տիեզերքի ուսումնասիրման ու սպեկտրալ անալիզի մեթոդներով մոլորակների ուսումնասիրման, աստրոֆիզիկայի և ռադիոաստղագիտության նվաճումների շուրջ: Մեզ շատ են հետաքրքրում նաև գլխուղեղի ռեֆլեքսների, մարդու և կենդանիների բարձրագույն ներվային գործունեության լուսաբանումը Ի. Մ. Սեչենովի, Ի. Պ. Պավլովի և նրանց աշակերտների կողմից:

Կուզեի, որ ամսագիրը ավելի հաճախ լուսաբաներ մարքսիստական փիլիսոփայության հիմունքներն ուսումնասիրող լավագույն պրոպագանդիստների փորձը: Այդպիսի պրոպագանդիստների բեղմնավոր աշխատանքի ուսանելի փորձի սիստեմատիկ լուսաբանումը կօգնի մեզ պարապմունքներն ավելի հետաքրքրական դարձնելու և ունկնդիրներին խոր ու բազմակողմանի գիտելիքներ տալու:

Չենք տարակուսում, որ մեր ցանկությունը կկատարվի:

Մ. ԲԱԴԱԼՅԱՆՑ

*Պրոպագանդիստ, Լենինականից*

### ԵՍ ԿՈՒԶԵՆԱՅԻ...

Մի շարք թերթերի ու հանդեսների հետ ես ստանում ու կանոնավոր ընթերցում եմ «Լենինյան ուղիով» ամսագիրը: Այն կարդում եմ մեծ հետաքրքրությամբ: Ամսագրում գտնում եմ մեր երկրի ներքին ու արտաքին կյանքին, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժմանը վերաբերող մի շարք հարցերի պատասխաններ: Ուշադիր կարդում եմ գյուղատնտեսության զարգացման հարցերին նվիրված հոդվածները, որովհետև գյուղատնտես եմ, աշխատում եմ անմիջականորեն արտադրության մեջ: Այդ հոդվածներում հաճախ շատ գործնական հարցեր են շոշափվում, որոնք օգնում են մեկ խելամիտ վարելու մեր տնտեսությունը:

Ես կցանկանայի, որ ամսագրում պարբերաբար հանդես գային մեր ռեսպուբլիկայի անվանի գիտնականներ՝ Վ. Գուլքանյանը, Գ. Դավթյանը, Ս. Կարապետյանը, Ս. Պողոսյանը, Ս. Մելիքսեթյանը, Զ. Դիլանյանը, Հ. Բոյախչյանը և ուրիշներ, որոնք գիտության արդի նվաճումների պրոպագանդումով պրակտիկ աշխատողներին կօգնեին նվազագույն ծախսումներով ստանալ գյուղատնտեսական շատ մթերքներ: Կցանկանայի «Լենինյան ուղիով» էջերում ավելի հաճախ հանդիպել ոչ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև Սովետական Միության գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի փորձի խոր, գիտական վերլուծությունների: Ես կուզենայի նաև, որ ամսագիրը ավելի շատ նյութեր հրապարակեր գյուղատնտեսության արտադրության պլանավորման, աշխատանքի կազմակերպման, վարձատրության, ինքնարժեքի իջեցման ուղիներին վերաբերող հարցերի մասին:

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Նոր Կյանք գյուղի կոլտնտեսության նախագահ*



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՑԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24*

Գինը 25 կոպ.

ՎՖ 05225 Պատվեր 1240 Տիրաժ 9150

Ստորագրված է տպագրության 30/IV 1964 թ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51ա*

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

*Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Վ. Ի. ԼԵՆԻՆ.*— Գիտական կոմունիզմի մասին: *Մ. Պետքաղհրատ. 1963, 384 էջ:*

*Ե. Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ.*—ՍՄԿՊ XXII համագումարը կոմունիզմ կառուցողների համագումարն է: *Ե. Պետհամալսարանի հրատ., 1964:*

*Ա. Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ.*—Ազգային հարցի լենինյան ծրագիրը: *Ե. Պետհամալսարանի հրատ., 1964:*

*Ի. Վ. ԱԼՅՈՇԻՆԱ.*—Սոցիալիզմի կեղծարարները: *Լենհրատ., 1963:*

*Ի. Ս. ՍԱԶՈՆՈՎ.*—Պետրոգրադի 1917 թ. բոլշևիկյան մամուլը (*Հիշարժան վայրերը*): *Լենհրատ, 1963:*

*Դ. ՎԱՏԵՅՇՎԻԼԻ.*—Անդրկովկասի բանվորական լեգալ մամուլի պատմությունից: *Թբիլիսի, 1963, 304 էջ:*

*Ս. Ա. ՄԱԳԻԼԵՎՍԿԻ.*—Երկրորդ ինտերնացիոնալի վերականգնումը 1919—1923 թվականներին (*Ռևոլյուցիոն վերելքի տարիների միջազգային ռեֆորմիստական կենտրոնի պատմությունից*): *Լենհրատ., 1963:*

*Ն. Ն. ԱԶՈՎՑԵՎ (Պատմական գիտությունների թեկնածու, գնդապետ).*— Ռազմական հարցերը Վ. Ի. Լենինի աշխատություններում: *Վ. Ի. Լենինի ստեղծագործությունների և ասույթների համառոտագրական ցանկ՝ պատերազմի, բանակի և ռազմական գիտության կարևորագույն հարցերի վերաբերյալ: Ռազմհրատ, 1964 թ., 340 էջ:*

*Պ. Վ. ԲԱՐՁՈՒԳՈՎ.*—Բոլշևիկների ռևոլյուցիոն աշխատանքը բանվորական լեգալ կազմակերպություններում (*1907—1911 թթ.*) *Ռոստով Դ/Վ: Ռոստովի համալսարանի հրատ., 1963:*

*ՅԱ. Բ. ՏՈՒՐՉԻՆՍ.*—Մինչմոնոպոլիստական կապիտալիզմ: *Օգնություն Կ. Մարքսի «Կապիտալը» ուսումնասիրողներին: Ռիգա: ԳԱ հրատ., 1963, 364 էջ:*

*Գ. Ա. ՀԱԿՈԲՅԱՆ.*—Ներսես Շնորհալի: *Ե. Գիտ. ակադ. հրատ., 1964:*

*Ա. Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.*—Հայաստանի կլիման: *Ե. Հայպետհրատ, 1964:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՊԱԿԵՊԼԱՍՏԻԿԱ ՊՈՂՊԱՏԻ ՓՈԽԱՐԵՆ

Գիտնական-շինարարների և քիմիկոսների ջանքերով լուծվել է պողպատը ապակեպլաստիկաների արմատուրայով փոխարինելու հարցը։ Բելոռուսական ՍՍՌ Պետշինի շինարարության և ճարտարապետության ինստիտուտի գիտաշխատողները մշակել են ապակեպլաստիկայի արմատուրա արտադրելու նոր տեխնոլոգիա։ Պոլոցկում ստեղծվել է ցեխ, որտեղ ապակեմանրաթելը և կապիչ պոլիմերները փոխակերպվում են կլոր արմատուրայի։ Ապակեպլաստիկայի կիրառումը զգալի չափով բարձրացնում է կոնստրուկցիաների դիմացկունությունը և ընդլայնում բետոնի կիրառումը արդյունաբերության և շինարարության մեջ։ Բելոռուսիայի գիտությունների ակադեմիայի և Բելոռուսական պոլիտեխնիկական ինստիտուտի գիտնականների համագործակցությամբ ստացվել է քիմիապես կայուն ապակու նոր բաղադրություն՝ բարձր դիմացկունության պլաստիկային արմատուրայի արտադրության համար։

## ՀԵՂՈՒԿ ՔԱՐ

Շինարարական ինստիտուտի աշխատակից դոկտոր Անտոնի Պյասկովսկին մշակել է տիկսոտրոպային հատկություններով հեղուկի ռեցեպտուրա։ Եթե այդ հեղուկով լցնեն անոթը և թափահարեն, այն համարյա չի տարբերվի սովորական պղտոր ջրից։ Բայց բավական է կարճ ժամանակով հեղուկը հանգիստ թողնել անոթում, այն կփոխակերպվի պինդ քարի։ Եթե կրկին թափահարեն անոթը, քարը նորից կփոխարկվի հեղուկի։ Նոր նյութը կկիրառվի ամենից առաջ հիդրոլոգիական կառույցներում (Լեհաստան)։

## ՔԻՄԻԱՆ ԲԺՇԿՈՒԹՅԱՆԸ

Լուբենսկի քիմիա-ֆարմացևտիկական գործարանը քիմիկո-ֆարմացևտիկական արդյունաբերության Ս. Օրջոնիկիձեի անվան համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի հետ միասին կազմակերպել է նոր պրեպարատի՝ լանոլի հոսքային արտադրությունը։ Լանոլը լրիվ փոխարինում է կակաո բնական յուղին։ Լանոլը ստացվել է օրգանական միացությունների սինթեզից, և լայն կիրառում կգտնի բժշկության և սննդի արդյունաբերության մեջ։ Լանոլի առաջին տոննաներն ուղարկվել են բժշկական պրեպարատների գործարանները։

## ՀԱՅԵԼԵ ՀԱՏԱԿ

Փայլուն հատակի վրա ցոլում է ցերեկային լամպերի լույսը։ Ծանր էլեկտրոկարները նրա հայելանման մակերևույթի վրա չնչին հետք անգամ չեն թողնում։ Պլաստբետոնից այդպիսի հատակ է պատրաստված շինարարական ինդուստրիայի Վիլնյուսի էքսպերիմենտալ գործարանի ցեխերից մեկում։

Նոր նյութը ստեղծել են քիմիկոսներ Էյդուկյավիչյուսը և Յարուշյավչյուսը։

Պլաստբետոնային մածուկով ծածկվում է հատակը։ Մի օր անց մածուկը պնդանում է, դառնում արտակարգ ամուր և չի ներծծում խոնավություն։ Իր կայունությամբ պլաստբետոնը 10 անգամ գերազանցում է մետլախային սալիկներին։ Հատակը առանց վերանորոգման կարող է ծառայել ավելի քան 20 տարի։

## «ՀԱԿԱՀՐԴԵՀԱՅԻՆ» ՆԵՐԿ

Փայտը և փայտաթելային սալիկները պատելու համար օգտագործվող հրակայուն ներկերը տաքացնելիս ուռչում, վեր են ածվում չվառվող փրփուրի, որը ծառայում է որպես ջերմամեկուսիչ։ Շնորհիվ իր այդ հատկության, ներկը բոցավառվում է։ Ներկված մակերեսը փայլուն է, չորանում է 45 րոպեի ընթացքում, իսկ 5—7 ժամ հետո վերջնականապես պնդանում է։ Ներկը թողարկվում է բազմաթիվ երանգներով (Անգլիա)։